# ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները՝ 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ:

Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով:

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված՝ նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը: Խմբագրությանը հանձնված հոդվածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը: Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները:

Մարքսիզմ-լենինիզմի կլասիկների, կուսակցության և սովետական պետության ղեկավարների, միջազգային բանվորական ու կոմունիստական շարժման ականավոր գործիչների աշխատություններից, պաշտոնական փաստաթղթերի ժողովածուներից վերցված քաղվածքները, վկայակոչումները պետք է լինեն երկերի հատորյակների կամ աշխատությունների հայերեն, իսկ եթե այդպիսիք չկան՝ ռուսերեն վերջին հրատարակությունից:

Տեսական և գիտական բնույթի հոդվածների վերջում պարտադիր է նշել օգտագործված աղբյուրների համառոտ ցանկը:

Սույն պահանջները խախտողների հոդվածները չեն տպագրվի: Ներկայացված հոդվածն անհետևանք կմնա, եթե այն ամբողջովին կամ հատվածներով հրապարակված լինի մամուլի և ինֆորմացիայի որևէ օրգանում:

Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում:


ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

3 ՄԱՐՏ

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1922 Թ.
ИЗДАЕТСЯ С 1922 Г.

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«Ленинян угнов» («По ленинскому пути»)—теоретический и политический журнал ЦК КП Армении


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

## СОДЕРЖАНИЕ



### СТАТЬИ



### ТРИБУНА МОЛОДОГО НАУЧНОГО РАБОТНИКА



### ОБЗОР ПЕЧАТИ







# ԵՐՐՈՐԴԸ՝ ՀԱՐՎԱԾԱՅԻՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՏԱՐԻ

ԼԱՎ, ՊԱՅԾԱՌ ՏՐԱՄԱԴՐՈՒԹՅԱՄԲ ԵՆ համակված Սովետական Հայաստանի աշխատավորները։ Հոբելյանական տարվա մեծ իրադարձություններով պայմանավորված համաժողովրդական ոգևորությանը նոր լիցք է հաղորդել 1977 թվականի ժողովրդատնտեսական պլանի կատարման համար ծավալված համամիութենական սոցիալիստական մրցության արդյունքների մասին ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի որոշումը, որով մրցության հաղթող է ճանաչվել նաև մեր հանրապետությունը։

Ընթացիկ հնգամյակում Սովետական Հայաստանն այդ բարձր պատվին արժանանում է երկրորդ անգամ։ Այլ կերպ ասած, հնգամյակի առաջին երկու տարվա բնագծերի նվաճման համար ծավալված համաժողովրդական մրցության մեջ մեր հանրապետության աշխատավորները քննություն են բռնել միութենական ամենաբարձր չափանիշներով։ Եվ դա չի կարող օրինական հպարտության զգացումով չհամակել նրանցից յուրաքանչյուրին։

Ծանրակշիռ էին հատկապես 1977 թվականին ձեռք բերված նվաճումները. չէ՞ որ հոբելյանական էր տարին, իսկ դա նշանակում է, որ այլ էին և ներկայացվող պահանջները։ Մեծ տարելիցը տնտեսական ու սոցիալական զարգացման ասպարեզում ձեռք բերած նոր հաջողություններով դիմավորելու նշանաբանով էին աշխատում ողջ երկրի արդյունաբերական ձեռնարկությունների, կառույցների, կոլտնտեսությունների, սովխոզների, գիտահետազոտական և ուսումնական հաստատությունների կոլեկտիվները, միութենական ու ինքնավար բոլոր հանրապետությունների աշխատավորները։ Այստեղից էլ՝ մրցության հիրավի աննախադեպ թափը, կենարար ուժերի այն ներհոսը, որ իր հետ բերեց հոբելյանական մակնիշով մրցությունը։

«1977 թվականը,— ինչպես ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան պլենումում նշեց Լ. Ի. Բրեժնևը,— քաղաքական և տնտեսական տեսակետից շատ հագեցած, շատ կարևոր տարի էր. ընդունվեց Սովետական Միության նոր Սահմանադրությունը, հանդիսավորությամբ նշվեց Հոկտեմբերի 60-ամյակը, նկատելիորեն առաջ շարժվեց մեր էկոնոմիկան։ Լավ, բարեխղճորեն աշխատեցին սովետական մարդիկ, օպերատիվ, հմտորեն էին գործում կուսակցական, սովետական, կոմերիտական և արհմիութենական կազմակերպությունները։ Դրա շնորհիվ կուսակցության XXV համագումարի որոշումները հաջողությամբ իրականացվում են»։

Հանրապետության աշխատավորները, կուսակցական ու հասարակական կազմակերպությունները բոլոր հիմքերն ունեն ասելու, որ այս ընդհանրացնող ու ծանրակշիռ գնահատականը վաստակելու համար իրենք ևս քիչ ջանքեր չեն գործադրել։ 1977 թվականին արդյունաբերական արտադրանքի ծավալն աճեց 7,5 տոկոսով՝ պլանով նախատեսված 6,1 տոկոսի դիմաց։ Թողարկվեց 56 միլիոն ռուբլով ավելի շատ արդյունաբերական արտադրանք, քան նախատեսվում էր հանրապետության աշխատավորների ստանձնած սոցիալիստական պարտավորություններով։ Հաջողությամբ կատարվեց նաև աշխատանքի արտադրողականության բարձրացման առաջադրանքը։

Եթե հանրագումարի բերենք հնգամյակի առաջին երկու տարում ժողովրդական տնտեսության զարգացման արդյունքները, ապա կտեսնենք, որ հանրապետության արդյունաբերական արտադրանքի աճը նկատելիորեն գե-

բազանցում է հնգամյա պլանով սահմանված տեմպերը՝ 15,7 տոկոսի փոխարեն 16,9 տոկոս։ Դա նշանակում է, որ կայուն նախադրյալներ են ստեղծվում ամբողջությամբ վերցրած հնգամյա պլանը ոչ միայն հաջողությամբ կատարելու, այլև նշանակալից չափով գերակատարելու համար։

Արդյունաբերության զարգացման ասպարեզում ձեռք բերած հաջողությունները արդյունք են նախ և առաջ այն հայրենանվեր աշխատանքի, որ կատարում են հանրապետության արտադրական ձեռնարկությունների կոլեկտիվները։ Դրանք արդյունք են նաև որակական մի շարք լուրջ փոփոխությունների, որ այժմ տեղի են ունենում հանրապետության արդյունաբերության ճյուղային կառուցվածքում՝ մեքենաշինության աշխատատար և ոչ նյութատար ճյուղերի զարգացման առավել արագ տեմպերի շնորհիվ։

Արտադրության ինտենսիվության բարձրացման նպատակով ձեռնարկվող միջոցների կոմպլեքսում էական դեր է պատկանում արդյունաբերության կառավարման կազմակերպական ձևերի կատարելագործմանը։ Երկու տարում մեզ մոտ ստեղծվել են 37 արտադրական միավորումներ, որոնցում ընդգրկվել է 109 ձեռնարկություն։ Որոշակի աշխատանք է տարվում հանրապետության տերիտորիայում արտադրաուժերի ռացիոնալ տեղաբաշխման, մարդկային ազատ ռեսուրսներ ունեցող ոչ մեծ քաղաքներում ու շրջաններում արդյունաբերության զարգացման նպատակով։

Ինչպես նշվեց ՍՄԿԿ XXV համագումարում, արդի փուլում սովետական էկոնոմիկայի զարգացման հանգուցային պրոբլեմներից մեկը գիտատեխնիկական առաջընթացի արագացումն է։ Ղեկավարվելով համագումարի ցուցումներով, հանրապետության արդյունաբերական ձեռնարկությունները որոշակի աշխատանք են տանում արտադրության մեջ գիտության ու տեխնիկայի նվաճումները ներդնելու նպատակով։ Միայն 1977 թվականին գործարկվել են մոտ 100 մեքենայացված հոսքային գծեր, ավելի քան 50 կոմպլեքսային մեքենայացված և ավտոմատացված աշխատամասեր, արտադրամասեր ու ձեռնարկություններ։ Արդյունաբերական արտադրության մեջ գիտության ու տեխնիկայի նվաճումների ներդրումից ստացված տարեկան տնտեսական օգուտը կազմել է ավելի քան 40 միլիոն ռուբլի։

Գործունեության վճռորոշ տեղամասերից մեկը, որով էապես պայմանավորված է հնգամյակի առաջադրանքների կատարումը, արտադրանքի որակի բարձրացման համար մղվող պայքարն է։ Այսօր մեր հանրապետության արդյունաբերությունն ավելի քան 1.150 անուն արտադրանք թողարկում է որակի բարձրագույն կատեգորիայով։ Իր այս ցուցանիշով Հայկական ՍՍՀ-ն ընթանում է միութենական այն հանրապետությունների շարքում, որոնք որականիշով արտադրանքի թողարկման ասպարեզում առավել բարձր արդյունքների են հասել։ Պետական որականիշով թողարկվող ապրանքների տեսակարար կշիռը արդյունաբերական արտադրության ընդհանուր ծավալում հասել է 10,5 տոկոսի՝ նախատեսված 10,3-ի դիմաց։

Հնգամյակի անցած երկու տարին նշանավորվեց հանրապետության գյուղատնտեսական արտադրության վերելքի կոմպլեքսային ծրագրի հետևողական իրականացման ասպարեզում ձեռք բերված լուրջ հաջողություններով։ Բավական է ասել, որ այդ ժամանակաշրջանում համախառն արտադրանքի տարեկան միջին ծավալը, 1971—1975 թվականների տարեկան միջին արտադրության համեմատությամբ, ավելացավ 19 տոկոսով։ Դա մեր գյուղատնտեսության աշխատողների ծանրակշիռ խոսքն է՝ հնգամյա պլանով հանրապետության ժողովրդական տնտեսության առջև դրված խնդիրների լուծման գործում։

Հանրապետության գյուղատնտեսության զարգացման հուսադրող արդյունքները վկայում են, որ այս ասպարեզում դրական խոր տեղաշարժեր են կատարվում, որոնք, անշուշտ, որոշակի ազդակ կծառայեն՝ ամբողջությամբ վերցրած գյուղատնտեսական արտադրության հետագա զարգացման համար։

Էկոնոմիկայի վերելքի ապահովման գործում իրենց արժանի ավանդն են ներդրել նաև հանրապետության շինարարները, տրանսպորտի, գիտության, կուլտուրայի, սպասարկման ոլորտի աշխատողները։



Հնգամյակի երկրորդ տարվա սոցիալիստական մրցության տարեգրության մեջ իրենց անունները գրանցելու պատվին արժանացան մեր հանրապետության մայրաքաղաք Երևանը, Կիրովականը, Արարատի և Ախուրյանի շրջանները, արտադրական մի շարք ձեռնարկությունների՝ Անդրկովկասյան երկաթուղու Երևանի բաժանմունքի, մայրաքաղաքի կոնյակի և ալյումինի գործարանների, «Երարդշին» տրեստի, Կամոյի անվան շրջանի «Գյուղտեխնիկա» շրջանային միավորման, Իջևանի քաղգործկոմի նորոգման շինարարական վարչության, «Լազուր» հանրապետական մասնագիտացված միավորման, Շահումյանի շրջանի XVIII կուսհամագումարի անվան կոլտնտեսության, Արտաշատի և Վարդենիսի շրջանի Թուսկյուլի սովխոզների կոլեկտիվները, որոնք պարգևատրվել են ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ դրոշներով։ Նման բարձր պատվի են արժանացել՝ գրանցվելով ՍՍՀՄ ԺՏՆՑ-ի համամիութենական պատվո տախտակին, նաև Երևանի ալրաղաց գործարանի, «Մասիս» կոշիկի արտադրական միավորման, № 2 «Գյուղշին» տրեստի № 29 մեքենայացված շարասյան, Հրազդանի պետական շրջանային էլեկտրակայանի, Աշտարակի ճանապարհային նորոգման շինվարչության, Կիրովականի գեղարվեստական կոմբինատի, Ջարենցավանի ավտոձեռնարկության, Նոյեմբերյանի շրջանի Արճիսի և Թալինի շրջանի «Արագած» սովխոզների կոլեկտիվները։

Մրցության հաղթողների այս՝ հաճելիորեն ընդարձակ ցանկում, ինչպես դժվար չէ նկատել, ներկայացված են էկոնոմիկայի գրեթե բոլոր ոլորտների լավագույն կոլեկտիվները։ Իսկ դա նշանակում է, որ առաջավոր փորձն ընդօրինակելու և արմատավորելու լայն հնարավորություններ ունեն գործնականում բոլոր ձեռնարկություններն ու արտադրական միավորները։ Ըստ էության, հենց դրանով է կարևոր մրցության արդյունքների վերլուծությունը։ Արժանին հատուցելով առաջավորներին, ՍՄԿԿ Կենտկոմը, ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը, ՀԱՄԿԽ-ն ու ՀամԼԿԵՄ Կենտկոմն իրենց որոշմամբ կուսակցական, սովետական, արհմիութենական, կոմերիտական ու տնտեսական մարմիններին հանձնարարել են խոր ու համակողմանիորեն վերլուծել մրցության արդյունքները՝ այն հաշվով, որ դա, նվաճումներն ընդհանրացնելու հետ մեկտեղ, հնարավորություն ընձեռի բացահայտելու չօգտագործված ռեզերվները, մեր առաջընթացն արգելակող թերությունները։

Հենց այդ են հրամայաբար պահանջում հնգամյակի երրորդ տարվա լարված պլանի իրականացման շահերը։ 1978 թվականն առանձնահատուկ տեղ ունի հնգամյակի համակարգում. առանցքային տարի լինելով, այն պետք է նշանավորվի արդեն ձեռք բերված նվաճումների ամրապնդմամբ և կարևորագույն փուլ դառնա՝ հնգամյակն ամբողջությամբ վերցրած հաջողությամբ ավարտելու համար մղվող պայքարում։

Արձագանքելով կուսակցության կոչին, հանրապետության բանվոր դասակարգը, գյուղացիությունը, մտավորականությունը համաժողովրդական լայն պայքար են ծավալել 1978 թվականն իրոք հարվածային աշխատանքի տարի դարձնելու համար։ Չնայած պլանների լարվածությանը, արդյունաբերական ձեռնարկությունների կոլեկտիվները խոստացել են ժամկետից շուտ՝ դեկտեմբերի 26-ին ավարտել արտադրանքի իրացման և կարևորագույն արտադրատեսակների մեծ մասի թողարկման տարեկան պլանը, իսկ հնգամյակի երեք տարվա առաջադրանքների կատարումն ավարտել մինչև դեկտեմբերի 18-ը։ 1978 թվականին, նախորդ տարվա համեմատությամբ, ազգային եկամուտը կաճի 7, իսկ արդյունաբերական արտադրության ծավալը՝ 7,4 տոկոսով։ Հանգամանորեն հաշվի առնելով եղած ռեզերվներն ու հնարավորությունները, պլանային ցուցանիշները դիտելով որպես նվազագույնը, աշխատավորական կոլեկտիվները տարվա սկզբից պայքարում են պետական առաջադրանքներն անպայմանորեն գերակատարելու համար։

Ստանձնած պարտավորությունների կատարումն առավել հաստատուն կդարձնի գյուղատնտեսական արտադրության վերելքի ասպարեզում նկատվող դրական տեղաշարժերը։ Գլխավոր խնդիրն այստեղ բերքատվության ու մթե-

ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան պլենումը կուսակցական, սովետական, տնտեսական, արհմիութենական ու կոմերիտական կազմակերպությունների հիմնական խնդիրը համարեց յուրաքանչյուր կոլեկտիվի, շրջանի, քաղաքի, մարզի, երկրամասի ու հանրապետության 1978 թվականի առաջադրանքների ոչ միայն կատարումը, այլև գերակատարումը: Ղեկավարվելով պլենումում ընկ. Լ. Ի. Բրեժնևի ճառի դրույթներով, հարկավոր է ավելի հետևողականորեն զբաղվել արտադրության արդյունավետության ու աշխատանքի որակի բարձրացման, տնտեսական պոտենցիալի ռացիոնալ օգտագործման, գիտատեխնիկական առաջընթացի արագացման, խնայողության ռեժիմի արմատավորման, մեր էկոնոմիկայի զարգացման մյուս արմատական պրոբլեմներով, որոնց լուծմամբ է պայմանավորված սովետական ժողովրդի բարեկեցության հետագա բարձրացումը:

1978 թվականի պլանի կատարման կարևորագույն պայմանը, ինչպես այդ մասին ամենայն որոշակիությամբ ասված է ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի նամակում, մեր աշխատանքի բոլոր մակարդակներում, բոլոր տեղամասերում կազմակերպվածությունն ու կարգապահությունն է: Խոսքը վերաբերում է աշխատանքային, տեխնոլոգիական, պլանային կարգապահությանը:

Վերջերս մամուլում հրապարակվեցին հանրապետության աշխատավորների սոցիալիստական պարտավորությունները: Դրանցում նշված են այն բնագծերը, որ հանրապետությունը նվաճելու է հնգամյակի երրորդ տարում: Այդ պարտավորությունների անթերի կատարման երաշխիքը լայնորեն ծավալված սոցիալիստական մրցությունն է, որն իր ոլորտի մեջ է առել հանրապետության ողջ աշխատավորությանը: Ձեռնարկություններում լայն թափ է ստանում սպասարկման գոտիների ընդլայնման շարժումը, աճում են վարպետ-դաստիարակների շարքերը, «բանվորների պարտավորություններին՝ ինժեներային ապահովում» նշանաբանով իրենց աշխատանքն ակտիվացնում են մասնագետները: Շատ ձեռնարկությունների, արտադրամասերի կոլեկտիվներ, տասնյակ հազարավոր բանվորներ պայքարում են հնգամյակի երեք տարվա առաջադրանքները ՍՍՀՄ Սահմանադրության առաջին տարեդարձի օրը՝ հոկտեմբերի 7-ին կատարելու համար:

Հայրենանվեր աշխատանքը մասսայական նախաձեռնությունների բազում օրինակներ է տալիս: Կուսակցական կազմակերպությունների, կոմունիստների պարտքն է՝ ամեն կերպ նպաստել այն նորի ու առաջավորի տարածմանը, որ ծնում է կոմունիստական շինարարության պրակտիկան, սոցիալիստական մրցությունը:

Մեր հանրապետությունը, ինչպես և ողջ սովետական երկիրը, հնգամյակի երրորդ տարվա սոցիալ-տնտեսական պլանների կատարման լավ մեկնարկ է վերցրել: Ամեն կերպ ամրապնդել ձեռք բերված հաջողությունները, 1978 թվականը դարձնել հարվածային աշխատանքի ու բարձր արդյունավետության տարի՝ ահա այս է կուսակցական կազմակերպությունների խնդիրը:

# ԱՊՐԵԼ ԵՎ ԱՇԽԱՏԵԼ ԼԵՆԻՆԱԲԱՐ

Հունվարի 28-ին տեղի ունեցավ «Կուսակցական և պետական աշխատանքի լենինյան ոճի մասին» հանրապետական գիտագործնական կոնֆերանս, որը կազմակերպել էր Հայաստանի կոմկուսի Կենտրոնական կոմիտեն: Այդ կոնֆերանսին մասնակցում էին կուսակցական, սովետական, տնտեսական ղեկավար աշխատողներ, ստեղծագործական կազմակերպությունների, բարձրագույն ուսումնական և գիտահետազոտական հաստատությունների ղեկավարներ, մամուլի, հեռուստատեսության և ռադիոյի ներկայացուցիչներ, ՀԿԿ Կենտկոմի, ՀՍՍՀ Գերագույն սովետի նախագահության, Մինիստրների խորհրդի, ՀԱՄԽ-ի և ՀԼԿԵՄ Կենտկոմի ապարատների պատասխանատու աշխատողներ: Ստորև տպագրվում են կոնֆերանսի նյութերը:

Կոնֆերանսը ներածական խոսքով բացեց ՀԿԿ Կենտկոմի առաջին քարտուղար Կ. Ս. Դեմիրճյանը:

## ԸՆԿ. Կ. Ս. ԴԵՄԻՐՃՅԱՆԻ ՆԵՐԱԾԱԿԱՆ ԽՈՍՔԸ

Վլադիմիր Իլյիչ Լենինի անվան հետ են կապված մեր բազմազգ երկրում տեղի ունեցած բոլոր մեծագույն վերափոխումները, նրա անմահ գաղափարները ապրում են կոմունիստական կուսակցության բազմակողմանի գործունեության մեջ, սովետական մարդկանց աշխատանքային պատմական հաղթանակներում:

Սովետական ժողովրդի մեծագործություններում վառ ու կենդանի մարմնավորվել է Լենինի մեծ կուսակցության՝ մեր հասարակության ճանաչված քաղաքական-գաղափարական առաջնորդի և ավանգարդի, տիտանական հեղափոխական-վերակերտիչ ստրատեգիան: ՍՄԿԿ-ի առաջատար և ղեկավար դերն այժմ վավերագրված է երկրի Հիմնական օրենքում: Եվ հիմա, երբ կուսակցության XXV համագումարի մշակած սոցիալ-տնտեսական ծրագրի թափն ու մասշտաբները պահանջում են բոլոր ուժերն ու ռեսուրսները մոբիլիզացնել սովետական մարդկանց կենսագործունեության բոլոր ոլորտներում աշխատանքի արդյունավետությունն առավելագույնս բարձրացնելու համար, բնականաբար, անհրաժեշտ է դառնում բարձրացնել կուսակցական, պետական, տնտեսական և մյուս մարմինների ղեկավարման, նրանց գործունեության ու մեթոդների կատարելագործման մակարդակը:

Կոմունիստական կուսակցությունը միշտ էլ կարևոր նշանակություն է հատկացրել աշխատանքի լենինյան ոճի, կառավարման դեմոկրատական և գիտական սկզբունքների արմատավորմանը: Այդ համարելով սովետական հասարակության առաջընթացի նախադրյալներից մեկը, նա կոմունիստներին, մեր բոլոր կադրերին անշեղորեն դաստիարակել է լենինյան նորմերից կատարվող շեղումների նկատմամբ անհաշտության ոգով, նրանց կողմնորոշել է լենինյան ոճի վարպետորեն տիրապետման, ինչպես խորհուրդ է տալիս Վ. Ի. Լենինը, աշխատանքի այնպիսի հնարների, եղանակների ու մեթոդների ընտրության միջոցով, որոնք կարող են ուժերի նվազագույն ծախսմամբ ամենամեծ և առավել հիմնավոր արդյունքներ տալ:

Այս հարցերին առանձնահատուկ ուշադրություն է նվիրված կուսակցության XXV համագումարի և ՍՄԿԿ Կենտկոմի հաջորդ պլենումների որոշումներում: Դրանց մեջ կարևոր տեղ է գրավում Կենտկոմի 1977 թվականի դեկտեմբերյան պլենումը, որտեղ ընկեր Լ. Ի. Բրեժնևի ճառում համակողմանի վերլուծվեց կուսակցական, պետական և տնտեսական մարմինների աշխատանքը, լենինյան ոճի պահանջների լույսի ներքո ցույց տրվեցին նրանց գործունեության հետագա կատարելագործման ուղիները:

Վ. Ի. Լենինի մշակած և ՍՄԿԿ Կենտկոմի կողմից ստեղծագործաբար զարգացվող՝ կուսակցական և պետական ապարատի գործունեության քաղաքական և կազմակերպական հիմունքները մեր կուսակցության անգնահատելի սեփականությունն են, հիմունքներ, որոնց կենսունակությունն ու հարուստ արգասավորությունը հաստատվում է սոցիալիստական և կոմունիստական շինարարության համապարփակ պրակտիկայում: Խարսխված լինելով մարքս-լենինյան տեսության և հեղափոխիչ պրակտիկայի միասնության, հասարակական զարգացման օրենքների խոր իմացության վրա, լենինյան ոճն անշեղորեն կատարելագործվում է կոմկուսակցության տեսական և պրակտիկ գործունեության պրոցեսում և, նկատի ունենալով մեր առջև ծառացած արդիական հրատապ խնդիրները, հարստացվում է ստեղծագործաբար:

ՍՄԿԿ XXV համագումարը վերստին շեշտեց կուսակցական և պետական աշխատանքի ոճի հետագա կատարելագործման կարևորությունն ու անհրաժեշտությունը: «Կուսակցական ղեկավարման հաջողության կարևոր պայմանը,— համագումարում նշեց ընկեր Լ. Ի. Բրեժնևը,— աշխատանքի լենինյան ոճն է: Իսկ լենինյան ոճը ստեղծագործական ոճ է, որին խորթ է սուբյեկտիվիզմը, նրան բնորոշ է գիտական մոտեցումը բոլոր հասարակական պրոցեսների նկատմամբ: Այն ենթադրում է բարձր պահանջկոտություն իր և ուրիշների նկատմամբ, բացառում է ինքնագոհությունը, հակադրվում է բյուրոկրատիզմի և ձևամոլության ամեն տեսակի դրսևորումներին»:

Այդ տարողունակ բնորոշման մեջ արտահայտված են լենինյան ոճի կարևորագույն, առավել բնորոշ պահանջները, որոնցից ելնելով, այսօր գնահատվում է բոլոր մակարդակների կառավարման մարմինների, բոլոր ղեկավար աշխատողների գործունեությունը: Խոսքն այն մասին է, թե մեր կադրերը ինչպես են կիրառում գիտական մեթոդն աշխատանքում, կոնկրետ խնդիրները լուծելիս ինչպես են զուգակցում իրազեկությունը բարձր կազմակերպվածության և գործարարության հետ, ղեկավարման կոլեկտիվության սկզբունքներն անձնական նախաձեռնության հետ, ինչպես են իրագործում կապը մասսաների հետ, կոլեկտիվներում զարգացնում քննադատությունն ու ինքնաքննադատությունը, անհանդուրժողությունը սուբյեկտիվիզմի դրսևորումների, վոլյունտարիստական միտումների և լուծումների նկատմամբ:

Իհարկե, լենինյան ոճը կյանքի բոլոր դեպքերի համար պիտանի դեղատոմսերի միագումար չէ, այդ հասկացությունը համակողմանի է և խոր, որն ըստ էության, ընդգրկում է կուսակցական և պետական շինարարության ամբողջ գիտությունն ու պրակտիկան, դա կենդանի և ստեղծագործական մեթոդ է: Միայն աշխատանքի այդպիսի մեթոդն է իսկապես նպաստում էկոնոմիկայի և կուլտուրայի ղեկավարման մակարդակի բարձրացմանը, մարդկանց դաստիարակությանը, նրանց ստեղծագործական եռանդը նպատակամղում կոմունիստական շինարարության մեծ խնդիրների լուծմանը:

Աշխատանքի լենինյան ոճի ցայտուն օրինակ է Սովետական Միության կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի, ընկեր Լ. Ի. Բրեժնևի գլխավորած քաղբյուրոյի բազմաբեղուն գործունեությունը: Հույժ գիտականորեն մշակելով մեր հասարակության զարգացման գլխավոր հեռանկարները, միասնական քաղաքական կուրս, Կենտրոնական կոմիտեն, ներքին և արտաքին քաղաքականության խնդիրների լուծման ուղիներն ու միջոցները սահմանելիս, ցուցաբերում է գործի նկատմամբ իսկական լենինյան մոտեցում, գիտականություն, խոր ռեալիզմ, գործնականություն և վճռականություն, ամբողջականությամբ ընդգրկում արդիականության խնդիրները:

Երկրի կուսակցական կոմիտեները, հետևելով լենինյան Կենտրոնական կոմիտեի համակող օրինակին, ըստ ամենայնի բարելավում են իրենց գործունեության ոճը, առանձնահատուկ ուշադրություն նվիրում սոցիալական ու տնտեսական կոնկրետ խնդիրների լուծման հետ քաղաքական և կազմակերպչական աշխատանքի զուգակցմանը, մասսաներին մոբիլիզացնում՝ հանրային արտադրության հետագա վերելքի հասնելու, տասներորդ հնգամյակի առաջադրանքները որակով և ժամկետից շուտ կատարելու համար:



Առաջադրված խնդիրների հաջող լուծումն անմիջականորեն պայմանավորված է կազմակերպչական աշխատանքի մակարդակով, ընդունված որոշումների կատարման ժամանակին ու սիստեմատիկ վերահսկողությամբ և ստուգմամբ, որ լենինյան ոճի կարևորագույն պահանջներից մեկն է: Որոշման ճշտությունը, ասում էր Լենինը, գործի սկիզբն է միայն: Գլխավորը որոշման կատարումն է: Նա պահանջում էր ծանրության կենտրոնը դարձնել փաստացի կատարման ստուգումը: Հաշվառման ու վերահսկողության ապահովումը նա համարում էր առաջադրված խնդիրների լուծման կարևորագույն նախապայմանը: Ահա թե ինչու առանց կատարման վերստուգման պարզորոշ, լավ մտածված սիստեմի, անհնար է հաջողության հասնել նախատեսված պլանների կատարման ոլորտում: Գործն այնպես պետք է կազմակերպված լինի, որ ընդունված ոչ մի որոշում թղթի վրա չմնա, որ կուսակցական ու պետական ապարատի բոլոր օղակներում իրագործվի կատարման վերահսկողությունը, բարձրանա պատասխանատվությունը և կատարողական կարգապահությունը:

Այս ասպարեզում, վերջին տարիների ընթացքում, զգալի աշխատանք է կատարում նաև մեր հանրապետության կուսակցական կազմակերպությունը: Նրա կյանքում կարևոր իրադարձություն եղավ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի 1975 թվականի հունվարյան պլենումը, որը մեծ ուշադրություն նվիրեց հանրապետության ղեկավար մարմինների աշխատանքի պրակտիկայում լենինյան նորմերի և սկզբունքների անշեղ կիրառմանը:

Պլենումն ամենայն վճռականությամբ դատապարտեց լենինյան ոճից եղած խոտորումները, լուրջ թերություններ բացահայտեց կուսակցական աշխատանքում, տնտեսական և կուլտուրական շինարարության ասպարեզներում: Թե ինչի էին հանգեցրել այդ խոտորումներն ու թերությունները, դուք լավ գիտեք:

Աշխատանքի լենինյան ոճին չհամապատասխանող ձևերն ու մեթոդները, կուսակցական և պետական կարգապահության խախտումները, պահանջկոտության թուլացումը, իրենց պաշտոնական պարտքի նկատմամբ ղեկավար աշխատողների մի մասի անպատասխանատվությունը և, ամբողջությամբ վերցրած, ղեկավարման մակարդակի իջնելը հասցրել էին այն բանին, որ շատ ցուցանիշներով հանրապետությունը լրջորեն ետ էր մնում:

Կատարելով ՍՄԿԿ XXV համագումարի և Հայաստանի կոմկուսի XXVI համագումարի որոշումները, մեր կուսակցական կազմակերպությունը վերջին տարիներին քիչ աշխատանք չի կատարել էկոնոմիկայի և կուլտուրական շինարարության կուսակցական ղեկավարման, կուսակցական ու պետական ապարատի գործունեության մակարդակը բարձրացնելու բնագավառներում:

Նրա ուշադրության կենտրոնում են գտնվում կադրերի ընտրության լենինյան սկզբունքների հետևողական իրականացման, կոմունիստների, բոլոր ղեկավար աշխատողների կողմից աշխատանքի լենինյան ոճի տիրապետման, նրանց ակտիվության և պատասխանատվության բարձրացման հարցերը: Հայաստանի կոմկուսի Կենտկոմի հոգատարության առարկան են նաև կառավարման կատարելագործումը, տնտեսական, սոցիալ-քաղաքական և գաղափարադաստիարակչական խնդիրների լուծման նկատմամբ խորապես գիտական մոտեցումը:

Այդ ամենի շնորհիվ նկատելիորեն բարձրացել են կոմունիստների և բոլոր աշխատողների քաղաքական և աշխատանքային ակտիվությունը, նրանց անձնական պատասխանատվությունը, շտկվել է դրությունը ժողովրդական տնտեսության ոլորտում: Բարելավվել է նաև կուսակցական կազմակերպությունների կառուցվածքն ու գործունեությունը նյութական արտադրության ասպարեզում: Աշխատավորների անձնվեր աշխատանքի, կուսակցական կազմակերպությունների՝ նրանց շրջանում կատարած գաղափարադաստիարակչական և կազմակերպչական գործունեության շնորհիվ մենք նշանակալի հաջողությունների ենք հասել տասներորդ հնգամյակի պլանային առաջադրանքների կատարման գործում: Ինչպես հայտնի է, հնգամյակի առաջին տարում ձեռք բերած այդ հաջողությունների համար հանրապետությունն արժանացավ

թյան հետագա վերելքի միջոցառումների նոր ծրագիրն աչքի է ընկնում հարցերի կոմպլեքսային լուծման նկատմամբ գիտական մոտեցմամբ։ Այն նոր հնարավորություններ է ստեղծել հանրապետության էկոնոմիկան կարճ ժամանակում առավել բարձր աստիճանի հասցնելու համար։

ՀԿԿ Կենտրոնական կոմիտեն խորապես վերլուծեց 1976—1980 թվականների ժողովրդատնտեսական պլանների կազմավորման վիճակը։ Պլանի նախագիծը համապատասխանեցվեց «ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1976—1980 թվականների հիմնական ուղղությունների» պահանջներին։ Հանրապետության էկոնոմիկայի զարգացման արագ տեմպերը կապահովվեն հանրային արտադրության արդյունավետության, թողարկվող արտադրանքի տեխնիկական մակարդակի ու դրա որակի զգալի բարձրացման հաշվին՝ եղած արտադրական կարողությունների առավել լրիվ օգտագործման, գործող ձեռնարկությունների վերակառուցման ու տեխնիկական վերազինման, գիտության ու տեխնիկայի ժամանակակից նվաճումների արմատավորման հիման վրա։

Հայտնի է, որ Արարատյան հարթավայրի աղուտների և գերխոնավ հողերի յուրացումը մեծ նշանակություն ունի հանրապետության էկոնոմիկայի զարգացման, մասնավորապես վաղահաս կարտոֆիլի և բանջարեղենի մշակության համար։ Հանրապետությունում կուտակվել է այդպիսի հողերի յուրացման զգալի փորձ։

Հայաստանի կոմկուսի Կենտկոմը ՍՄԿԿ Կենտկոմին առաջարկություն ներկայացրեց չօգտագործվող հողերը մոտակա տարիներին կոմպլեքսայնորեն յուրացնելու մասին։ Անցյալ տարվա հոկտեմբերին ՍՄԿԿ Կենտկոմը և ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը որոշում ընդունեցին «Հայկական ՍՍՀ-ում ոռոգելի հողագործությունն ընդլայնելու և դրա արդյունավետությունը բարձրացնելու միջոցառումների մասին»։

Հանրապետության կոմկուսի Կենտկոմի և կառավարության առաջարկությունների հիման վրա ՍՄԿԿ Կենտկոմը և ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդն ընդունեցին մեզ համար շատ կարևոր որոշումներ Հրազդանի լեռնաքիմիական կոմբինատի շինարարությունը դադարեցնելու և այդ ձեռնարկության արտադրության բնույթը փոխելու, Երևան քաղաքում մետրոպոլիտեն կառուցելու մասին։

Քննարկման պրոցեսում է մինչև 1995 թվականը հանրապետությունում ավելի քան 1.000 հեկտար ընդհանուր մակերեսով 9 ջերմոցային տնտեսություն կառուցելու հարցը։ Ջերմոցները կկառուցվեն գյուղատնտեսական յուրացման համար ոչ պիտանի հողերում, հիմնականում՝ Թալինի, Հոկտեմբերյանի, Սևանի և մի շարք այլ շրջաններում, որտեղ բնակլիմայական բարենպաստ պայմաններ կան։

Կուսակցության կադրային քաղաքականության բնորոշ առանձնահատկությունն ու գլխավոր միտումը առավել խստապահանջությունն է կադրերի ընտրության և տեղաբաշխման խնդրում։ Կադրային հարցերը լուծելիս անհրաժեշտ է հաշվի առնել աշխատողի քաղաքական, գործարար ու բարոյական հատկանիշների ողջ կոմպլեքսը։ Առաջնահերթ նշանակություն է տրվում ղեկավար աշխատողի՝ որպես կազմակերպչի ու դաստիարակի, գաղափարաքաղաքական և բարոյական հատկություններին ու հմտություններին։

Կուսակցության XXV համագումարում, ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ ընկեր Լ. Ի. Բրեժնևը նշեց, որ կադրային քաղաքականությունը մի հզոր լծակ է, որի միջոցով կուսակցությունը ներգործում է հասարակական զարգացման ընթացքի վրա։ «Ժամանակակից ղեկավարը,— ասված է հաշվետու զեկուցման մեջ,— պետք է իր մեջ կուսակցականությունն օրգանապես զուգորդի խոր բանիմացության հետ, կարգապահությունը՝ նախաձեռնության հետ և գործի նկատմամբ ստեղծագործական մոտեցման հետ։ Միաժամանակ, ղեկավարը պարտավոր է ցանկացած տեղամասում հաշվի առնել նաև սոցիալ-քաղաքական, դաստիարակչական կողմերը, զգայուն լինի մարդկանց նկատմամբ, նրանց կարիքների ու պահանջմունքների նկատմամբ, օրինակ ծա-



ռայի աշխատանքում և կենցաղում» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 105)։

Ղեկավար աշխատողի գործունեության նպատակասլացությունը և նրա աշխատանքի ոճը որոշվում են ամենից առաջ հարցերի լուծման նկատմամբ նրա կուսակցական-քաղաքական մոտեցմամբ։ Սակայն այդպիսի մոտեցումը հնարավոր է միայն այն դեպքում, երբ նա տիրապետում է աշխատանքի լենինյան ոճին, օժտված է հեղափոխական թափով ու գործարարությամբ։

Մեզ մոտ դեռևս կան ղեկավար աշխատողներ, որոնք անկարող են ինչպես հարկն է վարել գործը, ցուցաբերում են անպատասխանատվություն, անտարբերություն, պահպանողականություն, որը հարուցում է լուրջ թերություններ, երբեմն էլ ձախողումներ։

Ընկեր Լ. Ի. Բրեժնևը նշել է, որ մեզ շատ են հարկավոր գործարար, բանիմացությունը ձեռներեցության հետ զուգակցող մարդիկ։ Կյանքը պահանջում է խորամուխ լինել համապետական, համաժողովրդական խնդիրներում, հետևողականորեն բարձրացնել աշխատանքի որակը, մշտապես և գիտականորեն վերլուծել ղեկավարման հետ առնչվող բոլոր հանգամանքները, կուտակված փորձի մեջ ներդնել սեփական ավանդը։

Կուսակցությունը երբեք չի ունեցել քաղաքականապես հասուն ու որակյալ կադրերի այնպիսի մեծ բանակ, որպիսին՝ այժմ։ Ուստի, կուսակցական, սովետական ու տնտեսական կազմակերպություններից պահանջվում է ավելի մեծ սկզբունքայնություն կադրերի առաջքաշման գործում։ Դժբախտաբար, պատահում է և այնպես, որ լավ աշխատողները ժամանակին չեն նկատվում։ Նման երևույթները հաղթահարելու նպատակով կուսակցությունը մեծ ուշադրություն է նվիրում երիտասարդ մասնագետներին ժամանակին ղեկավար աշխատանքի առաջ քաշման, նրանց եռանդն ու գիտելիքները հին աշխատողների փորձի հետ զուգորդման հարցին։

Կուսակցությունն աճեցրել ու դաստիարակել է մեր մեծ գործին անսահման նվիրված աշխատողների մեծաթիվ կադրեր, որոնք իրենց ուժերը, գիտելիքներն ու փորձը ի սպաս են դնում կոմունիստական շինարարության խնդիրների հաջող լուծմանը։ Ինչպես ողջ Միությունում, նույնպես և մեր հանրապետությունում, ներկայումս բոլոր հնարավորությունները կան, որ կուսակցական, սովետական, տնտեսական ու հասարակական աշխատանքի բոլոր բնագավառները գլխավորեն փորձված, որակյալ, քաղաքական ու կազմակերպչական գործունեության լավ դպրոց անցած, աշխատավորության շրջանում հեղինակություն վայելող ղեկավարներ։ Եվ հանրապետության կուսակցական կազմակերպություններն սկսել են ավելի հմտորեն օգտագործել այդ հնարավորությունները։ Դրա վկայությունն է վերջին տարիներս ղեկավար աշխատանքի առաջ քաշված կադրերի կազմը։ Այդ են հաստատում նաև կուսակցական, սովետական, տնտեսական, արհմիութենական և մյուս կազմակերպությունների ղեկավար կադրերի կազմում տեղի ունեցած որակական տեղաշարժերը։ Եթե 1971 թվականին բարձրագույն կրթություն ուներ քաղկոմների և շրջկոմների քարտուղարների 96,6 տոկոսը, ապա այժմ կուսակցության շրջկոմների ու քաղկոմների բոլոր քարտուղարներն ունեն բարձրագույն կրթություն, ավելի քան 38 տոկոսը՝ ինժեներատեխնիկական և գյուղատնտեսական, 45-ը՝ կուսակցական-քաղաքական։

Զգալի աշխատանք է կատարվել սովետական աշխատողների կազմի բարելավման ասպարեզում։ Շրջանային և քաղաքային սովետների գործկոմների 63 նախագահներից 62-ը բարձրագույն կրթություն ունեն, նրանցից 27-ը ժողովրդական տնտեսության մասնագետներ են, 21-ն ունեն կուսակցական-քաղաքական կրթություն։ Կուսակցության քաղկոմների ու շրջկոմների կազմում բանվորներն ու կոլտնտեսականներն այժմ հասնում են 38,1 տոկոսի, կանայք՝ 26,8 տոկոսի։ Հայկական ՍՍՀ-ից ՍՍՀՄ Գերագույն սովետի կազմում ընտրված դեպուտատների 51,3 տոկոսը բանվորներ են և կոլտնտեսականներ, 33,3-ը՝ կանայք։ Հանրապետության Գերագույն սովետում այդ ցուցանիշները կազմում են ,համապատասխանաբար՝ 51,1 և 33,2, իսկ տեղական սովետներում՝ 69,3 և 35,2 տոկոս։

Մեզ դեռևս չի հաջողվել կադրային ամբողջ աշխատանքը վերակառուցել ՍՄԿԿ XXV համագումարի պահանջների ոգով։ Առանձին կուսակցական կոմիտեներում կադրերի հետ տարվող աշխատանքը սիստեմատիկ, մշտական բնույթ չի կրում, միշտ չէ, որ պահպանվում են կադրերի ընտրության ու տեղաբաշխման լենինյան սկզբունքներն ու նորմերը։ Կադրերին ղեկավար պոստերի նշանակելիս հաճախ հաշվի չեն առնում այնպիսի անհրաժեշտ հատկությունների առկայությունը, ինչպիսիք են՝ քաղաքական հասունությունը, բարձր որակավորումը, մարդկանց հետ աշխատելու հմտությունը։ Քիչ չեն այնպիսի դեպքերը, երբ կադրային հարցերը լուծելիս հաշվի չեն առնում սկզբնական կուսկազմակերպությունների կարծիքը։ Դրա հետևանքով հաճախ պատասխանատու ղեկավար աշխատանքի են առաջ քաշվում այնպիսի անձինք, որոնք հետագայում դրականորեն չեն դրսևորում իրենց։

Կուսակցական կոմիտեները, բոլոր աստիճանների ղեկավարները միշտ պետք է հիշեն, որ կադրերի հետ տարվող աշխատանքում կուսակցությունը վարում է վստահությունը, հարգանքն ու հոգատարությունը սկզբունքային պահանջկոտության, հանձնարարված գործի համար կադրերի պատասխանատվության զգացումը բարձրացնելու հետ զուգորդելու լենինյան քաղաքականություն։ Կուսակցությունը դեմ է մերկ վարչարարությանը, կարգադրամոլությանը, քանի որ դրանք մարդուն զրկում են իր ուժերի հանդեպ վստահությունից, նախաձեռնությունից։

Կադրերի հետ տարվող աշխատանքում շատ կարևոր է ոչ թե երկյուղի, այլ աշխատողների բարձր գիտակցականության և պատասխանատվության վրա խարսխված կարգապահությունը։

Կուսակցությունն անհանդուրժողական վերաբերմունք է ցուցաբերում նրանց նկատմամբ, ովքեր խախտում են կուսակցական ու պետական կարգապահությունը, ովքեր անկեղծ չեն կուսակցության հանդեպ, գործում են կոմունիստի աշխարհայացքին, բարոյական նորմերին անհարիր արարքներ։ Առավել ևս չի կարելի ղեկավար աշխատանքում թողնել այնպիսի անձանց, ովքեր հանդես են բերում անպատասխանատվություն, ապրում են գիտելիքների, ունակությունների հին պաշարով, կարծելով թե պաշտոնն ինքնին նրանց համար կապահովի հեղինակություն, հարգանք։

Կուսակցական վերահսկողությունը կուսակցության տնտեսական ու սոցիալական քաղաքականության հետևողական կենսագործման արդյունավետ զենքն է, կազմակերպական-կուսակցական և գաղափարական-քաղաքական ողջ աշխատանքի կատարելագործման ուժեղագույն լծակը, կադրերի դաստիարակման հզոր միջոցը։ Եվ, խնդիրների հետ բարդացման համեմատ, մշտապես մեծանում է կուսակցական վերահսկողության նշանակությունը։

Հանրապետության կուսկազմակերպությունները կիրառում են վերահսկողության և կատարման ստուգման բազմազան ձևեր։ Ուշադրության է արժանի սկզբնական կուսկազմակերպությունների հաշվետվությունների պարբերական քննարկումը կուսակցական կոմիտեների պլենումներում և բյուրոների նիստերում։ Նկատելիորեն ավելացել է այնպիսի կոմպլեքսային հաշվետվությունների քննարկումը, որոնք ամբողջովին ընդգրկում են կուսակցական մարմինների և նրանց ղեկավարների աշխատանքի ոճն ու մեթոդները։ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի աշխատանքում հաստատվել է կուսակցության շրջկոմների ու քաղկոմների, կուսկոմիտեների, սկզբնական կուսկազմակերպությունների հաշվետվությունների քննարկման պրակտիկան։

Կենտկոմը մշտապես հոգում է կուսակցական կոմիտեների աշխատանքի ոճի, հասարակական կյանքի բոլոր կողմերի ղեկավարման մակարդակի բարձրացման, մասսաների շրջանում տարվող կազմակերպչական ու քաղաքական աշխատանքի կատարելագործման մասին։ Նման հետևողական աշխատանքը նպաստում է շրջանային կոմիտեների գործունեության բարելավմանը, նրանց առջև դրված խնդիրների հաջող կենսագործմանը։

ՀԿԿ Կենտկոմը քննարկել է կուսակցության Կրասնոսելսկի, Թումանյանի, Գորիսի, Արարատի, Եղեգնաձորի, Աբովյանի, Ախուրյանի շրջկոմների աշխատանքի առանձին կողմերը, նրանց գործունեությունը նպատակամղել շրջաննե-



րի էկոնոմիկայի հանգուցային հարցերի լուծմանը, կոմունիստների բոլոր աշխատողների գաղափարական-քաղաքական դաստիարակությանը, բոլոր օղակներում աշխատանքի արդյունավետության ու որակի բարձրացմանը։

Կուսակցական աշխատանքի պրակտիկայում ավելի ու ավելի հաստատուն տեղ է գտնում որոշումների կատարումն ստուգելու նոր ձևերի ու մեթոդների կիրառումը։ Ցավոք, որոշ կուսկազմակերպություններ կատարման ստուգումն անջատում են կազմակերպական աշխատանքից, այն հանգեցնում նոր փաստերի հավաքման, տեղեկանքների կազմման և նույն հարցերին վերաբերող հերթական որոշումների ընդունման։ Բայց չէ՞ որ կատարման ստուգման էությունը ոչ թե միևնույն թերությունները նշող որոշումների քանակի ավելացումն է, այլ ուշադրության կենտրոնացումը կազմակերպչական աշխատանքի, բացահայտված թերությունների ու սխալների վերացման վրա։

Աշխատանքի լենինյան ոճի կարևոր պահանջը կուսակցական, սովետական ու տնտեսական մարմինների միջև ֆունկցիաների ճիշտ բաշխումն է։ Վ. Ի. Լենինը բազմիցս պարզաբանել է, որ քաղաքականապես ղեկավարում է կուսակցությունը, իսկ կոնկրետ կառավարում են սովետներն ու մյուս մարմինները։ Շեշտելով, որ քաղաքականությունն ու էկոնոմիկան անքակտելի են, Լենինը միաժամանակ նշում է, որ կուսակցությունը ղեկավարում է տնտեսությունը և ոչ թե կառավարում։ Կուսակցական մարմինների կողմից կառավարման անմիջական մարմիններին փոխարինելու ամեն մի փորձ հակասում է աշխատանքի լենինյան ոճի պահանջներին, կուսակցության ղեկավար դերի բուն գաղափարին և անխուսափելիորեն հանգեցնում աշխատողների պատասխանատվության ու նախաձեռնության նվազեցման, նրանց վարժեցնում ինքնապահովման, իրենց հոգսերը ուրիշների վրա բարդելու պրակտիկային։

Այդ հարցը խորապես արծարծվեց նաև «Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության Սահմանադրության (Հիմնական օրենքի) նախագծի ու նրա համաժողովրդական քննարկման արդյունքների մասին» ընկեր Լ. Ի. Բրեժնևի զեկուցման մեջ։ «Մեր կուսակցությունը,— նշեց ընկ. Բրեժնևը,— դառնալով կառավարող կուսակցություն, դեռևս Վ. Ի. Լենինի ղեկավարած ութերորդ համագումարում հաստատ հայտարարեց, որ իր որոշումները նա կիրառում է «սովետական մարմինների միջոցով, սովետական Սահմանադրության շրջանակներում» (ՍՄԿԿ-ն համագումարների, կոնֆերանսների և Կենտկոմի պլենումների բանաձևերում ու որոշումներում, հ. 2, 8-րդ հրատ., էջ 77), որ, ղեկավարելով սովետների գործունեությունը, նա չի փոխարինում նրանց, սահմանազատում է կուսակցական և պետական մարմինների ֆունկցիաները։ Լենինյան այդ սկզբունքն արձանագրված է ՍՄԿԿ Կանոնադրության մեջ և վերստին ընդգծվել է կուսակցության վերջին համագումարների որոշումներում»։

«Պետական կյանքի հարցերում,— նկատել է նա,— իր գիծը կուսակցությունը վարում է նախ և առաջ այն կոմունիստների միջոցով, որոնք ժողովրդի կողմից ընտրվել են սովետներում և որոնք աշխատում են պետական մարմիններում։ Կուսակցությունն իր կարևորագույն խնդիրներից մեկն է համարում ըստ ամենայնի ամրապնդել և կատարելագործել սովետների իշխանությունը, հոգ տանել սոցիալիստական դեմոկրատիայի հետագա զարգացման համար։ Այդ սկզբունքային գծին մենք հետևում ենք և միշտ կհետևենք»։

Կուսակցական կազմակերպությունները պետք է ուղղություն տան տնտեսական մարմինների գործունեությանը, բայց բնավ չջանան փոխարինել կամ դիմազրկել նրանց։ Ֆունկցիաների հստակ սահմանազատման բացակայությունը և ոչ իրավասու միջամտությունը հանգեցնում են անդեմության, հանձնարարված գործի համար անպատասխանատվության, սնում են բյուրոկրատիզմ բուն իսկ կուսակցական կազմակերպություններում։

Այն դրույթը, որ կուսակցական կոմիտեները կոչված են գործելու հատուկ մեթոդներով, անշուշտ, չի նշանակում, թե նրանք կարող են քամահրել արտադրական պրոբլեմները։ Ընդհակառակը, կուսակցական ապարատի աշխատողները, իրենց գործունեության բարելավման նպատակով պետք է սովորեն ձեռ-

նարկությունների, կոլտնտեսությունների ու սովխոզների, պետական մարմինների ու հասարակական կազմակերպությունների վրա ազդել կուսակցական վերահսկողության կատարելագործման միջոցով, կուսակցական կազմակերպությունների աշխատանքի մակարդակի բարձրացման, սովետական ու տնտեսական մարմինների նախաձեռնություններին զորավիգ լինելու, գործարար առաջարկություններով ու խորհուրդներով նրանց ժամանակին օգնություն ցույց տալու միջոցով։ Այդ ազդեցությունը նրանք պետք է իրականացնեն նաև վճռական, սկզբունքային տնտեսական հարցերի վերաբերյալ, հիմնավորված դրույթների մշակմամբ, մասսաներին կազմակերպելով, նրանց ակտիվությունն ու նախաձեռնությունը խթանելով, կադրերի ճիշտ ընտրությամբ ու տեղաբաշխմամբ, համերաշխ կոլեկտիվներ դաստիարակելով, վարչական ապարատի գործունեությանը հետևողականորեն վերահսկելու, կուսակցության ու կառավարության դիրեկտիվների կենսագործման համար այդ ապարատի պատասխանատվությունը բարձրացնելու միջոցով։

Տնտեսական, սոցիալական ու հոգևոր ոլորտի վրա կուսակցության ներգործությունն իր բնույթով եղել, այսուհետ ևս կլինի գլխավորապես քաղաքական։ Կուսակցական աշխատողի գործունեության գլխավոր մեթոդը համոզելն ու դաստիարակելն է։

Առանց գործարարության, առանց առաջավոր գաղափարները պրակտիկ գործողությունների վերածելու հմտության ամեն մի պլան, ամեն մի մտադրություն կմնա լոկ բարի կամեցողություն։ Վ. Ի. Լենինը բազմիցս հիշեցնում էր, որ ամենալավ, ամենաճիշտ որոշումները սոսկ թղթի վրա կմնան, եթե այդ որոշումներին, խնդիրների առաջադրմանը չհաջորդի կազմակերպական եռանդուն գործունեություն։ Անպատասխանատվությունը, անկազմակերպվածությունը, կարգ ու կանոնի բացակայությունը անխուսափելիորեն վիժեցնում, ձախողում են գործը։ Ամենօրյա աշխատանքային կարգապահության կայուն ձևերի հաստատումը, ասել է Վ. Ի. Լենինը, «Այդ ամենադժվար, բայց և ամենաշնորհակալ խնդիրն է, որովհետև միայն նրա լուծումը մեզ սոցիալիստական կարգեր կտա։ Պետք է սովորել աշխատավոր մասսաների բուռն, գարնանային հորդությամբ հոսող, բոլոր ափերից դուրս եկող միտինգային դեմոկրատիզմը միացնել երկաթե կարգապահության հետ աշխատանքի ժամանակ, անառարկելի ենթարկման հետ՝ մի անձի, սովետական ղեկավարի կամքին՝ աշխատանքի ժամանակ» (Երկեր, հ. 27, էջ 326)։

Ուշադրությունը կենտրոնացնել գլխավորի վրա, տեսադաշտից բաց չթողնել մանրուքները՝ այսպիսին է գործարար ղեկավարին հատուկ գործելակերպը։

Գործարարությունը ենթադրում է օպերատիվություն, որն անհամատեղելի է դանդաղկոտության, անպատասխանատվության ու քաշքշուկ հարուցող անվերջանալի համաձայնեցումների, ինչպես և զանազան կամպանիաներով անչափ տարվելու, գրոհայնության հետ։ Գործողությունների ճշգրտությունն ու հստակությունն ամեն մի աշխատողի, ամեն մի ղեկավարի հույժ կարևոր ու անհրաժեշտ հատկություններն են։ Կոմունիստական գործարարությունը ոչ մի ընդհանրություն չունի նեղ պրակտիցիզմի հետ։

Լենինը խիստ դատապարտում էր ամեն ինչի ձեռնարկելու և ոչինչ մինչև վերջ չհասցնելու հակումը, գտնելով, որ այդ հատկությունն անհարիր է բոլշևիկյան կազմակերպությանը։

Գիտատեխնիկական բուռն առաջընթացի, արտադրության ինտենսիվացման, մասնագիտացման ու համակենտրոնացման, կառավարման կատարելագործման պայմաններում, երբ առաջնային են դառնում արդյունավետությունը, աշխատանքի որակը, այդ պահանջները կարևորագույն նշանակություն են ստանում։

ՍՄԿԿ XXV համագումարը կուսակցական կազմակերպությունների առաջնահերթ խնդիրը համարեց սկզբունքային պայքարը բյուրոկրատիզմի, համապետական շահերի խախտման դրսևորումների, անպատասխանատվության ու ձևականության դեմ։ Մեզ մոտ դեռևս կան որոշ աշխատողներ, որոնք ձգտում են խույս տալ իրենց իրավասությանը ենթակա հարցերի լուծումից, պատասխանատվությունը բարդելով ուրիշների վրա։ Տակավին մինչև վերջ չի հաղ-



թահարված նիստերով, խորհրդակցություններով, թղթաբարությամբ հրապուրվելը, որն աշխատողների ուշադրությունը շեղում է կատարման կազմակերպումից ու ստուգումից։

Կուսակցության մեջ կոլեգիալ ղեկավարությունն ապահովվում է կուսակցական մարմինների կանոնավոր հաշվետվություններով և ընտրություններով, ժամանակին համագումարներ, կոնֆերանսներ, ժողովներ, կոմիտեների ու բյուրոների նիստեր հրավիրելով, դրանց կազմի նորացմամբ և ընդլայնմամբ։ Կոլեկտիվ մարմինների բուն կազմը, որը ներառում է աշխատավորների տարբեր խավերի ներկայացուցիչներին, հնարավորություն է ընձեռում ավելի լավ ու առավել լրիվն ամփոփելու ձեռք բերած աշխատանքային փորձը, արդյունավետ դարձնելու հասարակական կյանքի ղեկավարումը։

Տեղին է հիշեցնել, որ, կոլեգիալության սկզբունքն իրագործելիս, Լենինը միշտ շեշտում էր երկու բան։ Դա ամենից առաջ հարցերի լայն, ազատ քննարկումն է՝ նախքան որոշումն ընդունելը, ապա՝ անհատական, անձնական խստագույն պատասխանատվության սահմանումը՝ ընդունված որոշումների կենսագործման համար։ Ղեկավարման կոլեկտիվությունն անբաժանելի է հանձնարարված գործի նկատմամբ յուրաքանչյուր աշխատողի անձնական պատասխանատվությունից։

Հայաստանի կոմունիստական կուսակցության կենտրոնական կոմիտեն լուրջ ուշադրություն է նվիրում և մշտապես զբաղվում է սկզբնական կուսակցական կազմակերպությունների աշխատանքի ոճի կատարելագործման հարցերով. Նրանք մեր կուսակցության հիմքն են, նրանց ստեղծագործական աշխատանքով է պայմանավորված տնտեսական ու կուլտուրական շինարարության կուսակցական ղեկավարման մակարդակը։

Մշակվել և իրականացվում են միջոցառումներ սկզբնական կուսկազմակերպությունների կառուցվածքը կատարելագործելու և այն արտադրական կառուցվածքին համապատասխանեցնելու համար։

Հանրապետությունում ներկայումս ստեղծվում է 60-ից ավելի արտադրամիավորում։ Զգալի աշխատանք է կատարվում նրանց կուսակցական կազմակերպությունների աշխատանքի մակարդակը բարձրացնելու համար։ «Հայէլեկտրամեքենա» արտադրամիավորման կուսկազմակերպությունում կուսակցական կոմիտե է ընտրվել ընդլայնված կազմով։ Մի շարք միավորումներում ստեղծվում են դրանց կազմում եղած ձեռնարկությունների, կուսակցական կազմակերպությունների քարտուղարների խորհուրդներ։

Հարկ է նկատել, որ տակավին ոչ բոլոր քաղկոմներն ու շրջկոմներն են սիստեմատիկաբար և ինչպես հարկն է զբաղվում սկզբնական կուսկազմակերպությունների կազմակերպական ամրապնդման հարցերով, դրա հետևանք է, օրինակ, Ապարանի, Ամասիայի, Մեղրու և մի շարք այլ շրջանների կուսկազմակերպությունների պասիվությունը. Նրանք պատշաճ ազդեցություն չեն ունենում պետական պլանների կատարման, կուսակցական ու պետական կարգապահության ամրապնդման վրա։

Ներկայումս հանրապետության կուսակցական կազմակերպություններում ավարտվել է հաշվետու-ընտրական կամպանիան։ Հաշվետու-ընտրական ժողովներ տեղի ունեցան բոլոր սկզբնական կազմակերպություններում, բացի նրանցից, որտեղ կան կուսկոմիտեներ։ Կուսակցության քաղկոմները, շրջկոմները այդ քաղաքական կարևոր կամպանիան օգտագործեցին՝ ՍՄԿԿ XXV համագումարի պահանջներին համապատասխան սկզբնական կուսկազմակերպությունների հետագա կազմակերպական ամրապնդման, դրանց գործունեության մակարդակի բարձրացման նպատակով։

Լենինյան ոճով աշխատողի անհրաժեշտ հատկություններն են բարձր գաղափարայնությունը և քաղաքական հասունությունը։ Յուրաքանչյուր կոմունիստ, առավել ևս ղեկավար աշխատող, պետք է աչքի ընկնի գաղափարական խոր համոզվածությամբ, անզիջում, ազնիվ ու շիտակ, իրոք սկզբունքային լինի յուրաքանչյուր գործում, հատկապես այն դեպքում, երբ խոսքը վերաբերում է հասարակական շահերի պաշտպանությանը, կուսակցական ու պետական

նարկումների, կոլտնտեսությունների ու սովխոզների, պետական մարմինների ու հասարակական կազմակերպությունների վրա ազդել կուսակցական վերահսկողության կատարելագործման միջոցով, կուսակցական կազմակերպությունների աշխատանքի մակարդակի բարձրացման, սովետական ու տնտեսական մարմինների նախաձեռնություններին զորավիգ լինելու, գործարար առաջարկություններով ու խորհուրդներով նրանց ժամանակին օգնություն ցույց տալու միջոցով։ Այդ ազդեցությունը նրանք պետք է իրականացնեն նաև վճռական, սկզբունքային տնտեսական հարցերի վերաբերյալ, հիմնավորված դրույթների մշակմամբ, մասսաներին կազմակերպելով, նրանց ակտիվությունն ու նախաձեռնությունը խթանելով, կադրերի ճիշտ ընտրությամբ ու տեղաբաշխմամբ, համերաշխ կոլեկտիվներ դաստիարակելով, վարչական ապարատի գործունեությանը հետևողականորեն վերահսկելու, կուսակցության ու կառավարության դիրեկտիվների կենսագործման համար այդ ապարատի պատասխանատվությունը բարձրացնելու միջոցով։

Տնտեսական, սոցիալական ու հոգևոր ոլորտի վրա կուսակցության ներգործությունն իր բնույթով եղել, այսուհետ ևս կլինի գլխավորապես քաղաքական։ Կուսակցական աշխատողի գործունեության գլխավոր մեթոդը համոզելն ու դաստիարակելն է։

Առանց գործարարության, առանց առաջավոր գաղափարները պրակտիկ գործողությունների վերածելու հմտության ամեն մի պլան, ամեն մի մտադրություն կմնա լոկ բարի կամեցողություն։ Վ. Ի. Լենինը բազմիցս հիշեցնում էր, որ ամենալավ, ամենաճիշտ որոշումները սոսկ թղթի վրա կմնան, եթե այդ որոշումներին, խնդիրների առաջադրմանը չհաջորդի կազմակերպական եռանդուն գործունեություն։ Անպատասխանատվությունը, անկազմակերպվածությունը, կարգ ու կանոնի բացակայությունը անխուսափելիորեն վիժեցնում, ձախողում են գործը։ Ամենօրյա աշխատանքային կարգապահության կայուն ձևերի հաստատումը, ասել է Վ. Ի. Լենինը, «Այդ ամենադժվար, բայց և ամենաշնորհակալ խնդիրն է, որովհետև միայն նրա լուծումը մեզ սոցիալիստական կարգեր կտա։ Պետք է սովորել աշխատավոր մասսաների բուռն, գարնանային հորդությամբ հոսող, բոլոր ափերից դուրս եկող միտինգային դեմոկրատիզմը միացնել **երկաթե** կարգապահության հետ աշխատանքի ժամանակ, **անառարկելի ենթարկման** հետ՝ մի անձի, սովետական ղեկավարի կամքին՝ աշխատանքի ժամանակ» (**Երկեր**, հ. 27, էջ 326)։

Ուշադրությունը կենտրոնացնել գլխավորի վրա, տեսադաշտից բաց չթողնել մանրուքները՝ այսպիսին է գործարար ղեկավարին հատուկ գործելակերպը։

Գործարարությունը ենթադրում է օպերատիվություն, որն անհամատեղելի է դանդաղկոտության, անպատասխանատվության ու քաշքշուկ հարուցող անվերջանալի համաձայնեցումների, ինչպես և զանազան կամպանիաներով անհափ տարվելու, գրոհայնության հետ։ Գործողությունների ճշգրտությունն ու հստակությունն ամեն մի աշխատողի, ամեն մի ղեկավարի հույժ կարևոր ու անհրաժեշտ հատկություններն են։ Կոմունիստական գործարարությունը ոչ մի ընդհանրություն չունի նեղ պրակտիցիզմի հետ։

Լենինը խիստ դատապարտում էր ամեն ինչի ձեռնարկելու և ոչինչ մինչև վերջ չհասցնելու հակումը, գտնելով, որ այդ հատկությունն անհարիր է բոլշևիկյան կազմակերպությանը։

Գիտատեխնիկական բուռն առաջընթացի, արտադրության ինտենսիվացման, մասնագիտացման ու համակենտրոնացման, կառավարման կատարելագործման պայմաններում, երբ առաջնային են դառնում արդյունավետությունը, աշխատանքի որակը, այդ պահանջները կարևորագույն նշանակություն են ստանում։

ՍՄԿԿ XXV համագումարը կուսակցական կազմակերպությունների առաջնահերթ խնդիրը համարեց սկզբունքային պայքարը բյուրոկրատիզմի, համապետական շահերի խախտման դրսևորումների, անպատասխանատվության ու ձևականության դեմ։ Մեզ մոտ դեռևս կան որոշ աշխատողներ, որոնք ձգտում են խույս տալ իրենց իրավասությանը ենթակա հարցերի լուծումից, պատասխանատվությունը բարդելով ուրիշների վրա։ Տակավին մինչև վերջ չի հաղ-



թահարված ինտերով, խորհրդակցություններով, թղթաբարությամբ հրապուրվելը, որն աշխատողների ուշադրությունը շեղում է կատարման կազմակերպումից ու ստուգումից։

Կուսակցության մեջ կոլեգիալ ղեկավարությունն ապահովվում է կուսակցական մարմինների կանոնավոր հաշվետվություններով և ընտրություններով, ժամանակին համագումարներ, կոնֆերանսներ, ժողովներ, կոմիտեների ու բյուրոների նիստեր հրավիրելով, դրանց կազմի նորացմամբ և ընդլայնմամբ։ Կոլեկտիվ մարմինների բուն կազմը, որը ներառում է աշխատավորների տարբեր խավերի ներկայացուցիչներին, հնարավորություն է ընձեռում ավելի լավ ու առավել լիովին ամփոփելու ձեռք բերած աշխատանքային փորձը, արդյունավետ դարձնելու հասարակական կյանքի ղեկավարումը։

Տեղին է հիշեցնել, որ, կոլեգիալության սկզբունքն իրագործելիս, Լենինը միշտ շեշտում էր երկու բան։ Դա ամենից առաջ հարցերի լայն, ազատ քննարկումն է՝ նախքան որոշումն ընդունելը, ապա՝ անհատական, անձնական խստագույն պատասխանատվության սահմանումը՝ ընդունված որոշումների կենսագործման համար։ Ղեկավարման կոլեկտիվությունն անբաժանելի է հանձնարարված գործի նկատմամբ յուրաքանչյուր աշխատողի անձնական պատասխանատվությունից։

Հայաստանի կոմունիստական կուսակցության կենտրոնական կոմիտեն լուրջ ուշադրություն է նվիրում և մշտապես զբաղվում է սկզբնական կուսակցական կազմակերպությունների աշխատանքի ոճի կատարելագործման հարցերով. նրանք մեր կուսակցության հիմքն են, նրանց ստեղծագործական աշխատանքով է պայմանավորված տնտեսական ու կուլտուրական շինարարության կուսակցական ղեկավարման մակարդակը։

Մշակվել և իրականացվում են միջոցառումներ սկզբնական կուսկազմակերպությունների կառուցվածքը կատարելագործելու և այն արտադրական կառուցվածքին համապատասխանեցնելու համար։

Հանրապետությունում ներկայումս ստեղծվում է 60-ից ավելի արտադրամիավորում։ Զգալի աշխատանք է կատարվում նրանց կուսակցական կազմակերպությունների աշխատանքի մակարդակը բարձրացնելու համար։ «Հայէլեկտրամեքենա» արտադրամիավորման կուսկազմակերպությունում կուսակցական կոմիտե է ընտրվել ընդլայնված կազմով։ Մի շարք միավորումներում ստեղծվում են դրանց կազմում եղած ձեռնարկությունների, կուսակցական կազմակերպությունների քարտուղարների խորհուրդներ։

Հարկ է նկատել, որ տակավին ոչ բոլոր քաղկոմներն ու շրջկոմներն են սիստեմատիկաբար և ինչպես հարկն է զբաղվում սկզբնական կուսկազմակերպությունների կազմակերպական ամրապնդման հարցերով, դրա հետևանք է, օրինակ, Ապարանի, Ամասիայի, Մեղրու և մի շարք այլ շրջանների կուսկազմակերպությունների պասիվությունը. նրանք պատշաճ ազդեցություն չեն ունենում պետական պլանների կատարման, կուսակցական ու պետական կարգապահության ամրապնդման վրա։

Ներկայումս հանրապետության կուսակցական կազմակերպություններում ավարտվել է հաշվետու-ընտրական կամպանիան։ Հաշվետու-ընտրական ժողովներ տեղի ունեցան բոլոր սկզբնական կազմակերպություններում, բացի նրանցից, որտեղ կան կուսկոմիտեներ։ Կուսակցության քաղկոմները, շրջկոմները այդ քաղաքական կարևոր կամպանիան օգտագործեցին՝ ՍՄԿԿ XXV համագումարի պահանջներին համապատասխան սկզբնական կուսկազմակերպությունների հետագա կազմակերպական ամրապնդման, դրանց գործունեության մակարդակի բարձրացման նպատակով։

Լենինյան ոճով աշխատողի անհրաժեշտ հատկություններն են բարձր գաղափարայնությունը և քաղաքական հասունությունը։ Յուրաքանչյուր կոմունիստ, առավել ևս ղեկավար աշխատող, պետք է աչքի ընկնի գաղափարական խոր համոզվածությամբ, անվրեպ, ազնիվ ու շիտակ, իրոք սկզբունքային լինի յուրաքանչյուր գործում, հատկապես այն դեպքում, երբ խոսքը վերաբերում է հասարակական շահերի պաշտպանությանը, կուսակցական ու պետական

կյանքի լենինյան նորմերի կիրառմանը: Նման ղեկավար աշխատողին անհնար է շեղել ճիշտ հունից:

Միայն անսկզբունքայնության և ամեն ինչ ներելու պայմաններում կարող էին տեղի ունենալ այնպիսի խախտումներ, որոնք մոտ անցյալում կատարվեցին Էջմիածնի շրջանում: Շրջանի որոշ կոլտնտեսությունների ու սովխոզների ղեկավարներ ձևակերպել էին կեղծ փաստաթղթեր՝ պետությանը մի քանի տասնյակ հազար ռուբլու գյուղատնտեսական մթերքներ հանձնելու մասին: Կուսակցության շրջկոմը ժամանակին սկզբունքային գնահատական չէր տվել կուսակցական ու պետական կարգապահության կոպիտ խախտումներին. միայն ՀԿԿ Կենտկոմի միջամտությունից հետո ձեռնարկվեցին անհրաժեշտ միջոցներ, մեղավորները ենթարկվեցին կուսակցական ու քրեական պատասխանատվության: Պետական կարգապահության կոպիտ խախտման փաստեր էին բացահայտվել նաև մի քանի այլ հիմնարկություններում ու գերատեսչություններում, որտեղ կուսակցական կազմակերպությունները, անհրաժեշտ բարձրության վրա չգտնվելով, հանդես էին բերել անսկզբունքայնություն:

Մեր առաջընթացը կասեցնող երևույթների դեմ մղվող պայքարում փորձված զենք են քննադատությունն ու ինքնաքննադատությունը:

Քննադատությունը ենթադրում է սկզբունքայնություն, օբյեկտիվություն, հրապարակայնություն: Այն պետք է արտացոլի իրերի ռեալ վիճակն աշխատավորական կոլեկտիվներում և կուսակցական կազմակերպություններում, ամրապնդի ու զարգացնի սոցիալիստական ապրելակերպին բնորոշ հատկանիշները, կադրերին, բոլոր կոմունիստներին դաստիարակի կուսակցական ու պետական կարգապահության խախտումների, պաշտոնական դիրքի չարաշահման, մեծամտության, բացասական մյուս երևույթների նկատմամբ անհաշտ վերաբերմունքի ոգով: Առանց այս ամենի չկա աշխատանքի լենինյան ոճ: Կուսակցության մեջ և երկրում այժմ նպաստավոր պայմաններ են ստեղծված համարձակ և սկզբունքային քննադատության համար:

Խոսքը, իհարկե, վերաբերում է օբյեկտիվ, առողջ քննադատությանը, որն արվում է սկզբունքային դիրքերից՝ ելնելով ընդհանուր գործի շահերից: Իսկական կուսակցական քննադատությունն ընդհանուր ոչինչ չունի դեմագոգիայի, ազնիվ մարդկանց արատավորելու և վարկաբեկելու ոտնձգությունների հետ:

Կուսակցության XXV համագումարին տրված ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետվության, Տամբովի մարզի վերաբերյալ Կենտկոմի որոշման մեջ ուշադրություն է հրավիրվում այն բանի վրա, որ քննադատությունն արժեքավոր է ոչ թե արտահայտությունների խստությամբ, այլ ապացուցելիությամբ, ճշմարտացիությամբ, հասարակական նշանակությամբ: ՍՄԿԿ XXV համագումարում շեշտվեց նաև քննադատության ու ինքնաքննադատության զարգացման կարևորությունը: Դրանք պետք է լինեն անկեղծ, բովանդակեն պատրաստակամություն՝ անհապաղ ձեռամուխ լինելու սխալների ու թերությունների շտկմանը:

Ղեկավարվելով համագումարի դրույթներով, հանրապետության կուսկազմակերպությունները որոշակի աշխատանք են կատարել քննադատության ու ինքնաքննադատության հետագա ծավալման համար: Դրան նպաստում է այն հանգամանքը, որ սկզբնական կուսակցական կազմակերպություններում, շրջկոմներում, քաղկոմներում, ինչպես նաև ՀԿԿ Կենտկոմում կոմունիստների քննադատական դիտողությունները, առաջարկությունները մանրակրկիտ հաշվի են առնվում, դրանց վերաբերյալ ձեռնարկվում են անհրաժեշտ միջոցներ, հանձնարարություններ տրվում համապատասխան մարմիններին: Բարելավվում է մամուլի քննադատական ելույթներին արձագանքելու գործը:

ՀԿԿ Կենտկոմի բյուրոյի և քարտուղարության նիստերում սիստեմատիկաբար քննարկվում է Կենտկոմի, քաղկոմ-շրջկոմների պլենումներում, սկզբնական կուսկազմակերպությունների ժողովներում արվող քննադատական դիտողությունների և առաջարկությունների իրականացման ընթացքը: Օրինակ, Կենտկոմի պլենումներից մեկում հատկապես քննարկվեց սկզբնական կուսակցական կազմակերպությունների հաշվետու-ընտրական ժողովներում կոմունիստների քննադատական դիտողությունների և առաջարկությունների իրակա-



նացման ընթացքը: Այս առումով հետևողական աշխատանք են կատարում կուսակցության Երևանի, Լենինականի, Կիրովականի քաղկոմները, Նաիրիի, Հրազդանի, Ախուրյանի և այլ շրջկոմներ:

Սակայն դեռ ամենուրեք չէ, որ քննադատությունն ու ինքնաքննադատությունը ծավալվում են պատշաճ չափով: Կուսակցության որոշ շրջկոմներ, սովետական ու տնտեսական մարմիններ արդյունավետ միջոցներ չեն ձեռնարկում՝ բոլոր օղակներում ստեղծելու կոմունիստների, աշխատավորների քննադատական դիտողությունների և առաջարկությունների ազատ արտահայտման համար անհրաժեշտ պայմաններ: Միշտ չէ, որ համապատասխան կազմակերպությունները հոգում են այդ առաջարկությունների ու դիտողությունների իրականացման համար: Դեռևս կան մամուլի քննադատության նկատմամբ ոչ ճիշտ վերաբերմունքի դեպքեր:

Քննադատության և ինքնաքննադատության հետագա զարգացման հարցերը սերտորեն, փոխադարձաբար կապված են կոմունիստների գաղափարական համոզվածության և կուսակցական սկզբունքայնության հետ: Գաղափարական բարձր համոզվածությունն է կոմունիստների մտքի, կամքի ու գործողությունների միասնության հիմքը, դրանով է պայմանավորվում ծրագրային ու կանոնադրական բոլոր պահանջների ու պարտականությունների խորապես գիտակցված կատարումը:

Վեհ գաղափարայնության հետ օրգանապես կապված է նաև բարձր սկզբունքայնությունը: Լենինաբար վերաբերվել գործին՝ նշանակում է ամեն քայլափոխում ղեկավարվել սկզբունքային նկատառումներով: Հետևելով լենինյան պատգամներին՝ մեր կուսակցությունը մշտապես ընդլայնում և ամրապնդում է կապերը մասսաների հետ: Իրականացնելով երկրի ղեկավարումը զարգացած սոցիալիստական հասարակության պայմաններում, ՍՄԿԿ-ն հիմնականում իր ուշադրությունը բևեռում է աշխատավորների լայն մասսաների փորձի համակողմանի օգտագործման, նրանց ստեղծագործական ակտիվության ու նախաձեռնության առավելագույն խթանման վրա: Մասսաների փորձի բազմակողմանի, խոր ուսումնասիրումը, հասարակական զարգացման օրենքների իմացության հետ մեկտեղ, կուսակցությանը հնարավորություն է ընձեռում՝ ստեղծագործաբար կիրառելու մարքս-լենինյան տեսությունը, ճիշտ սահմանելու խնդիրները և դրանց լուծման միջոցները:

Սոցիալիստական դեմոկրատիայի հետագա ծավալումը, օրինականության և իրավակարգի ամրապնդումը, կուսակցական կյանքի լենինյան նորմերի և ղեկավարության կոլեկտիվության սկզբունքի վերականգնումն ու հետևողական զարգացումը, տնտեսական ու կուլտուրական շինարարության ասպարեզում միութենական հանրապետությունների իրավունքների ընդլայնումը, հասարակական կազմակերպությունների դերի բարձրացումը հսկայական դեր խաղացին մասսաների հետ կուսակցության կապերի ամրապնդման, աշխատավորների ստեղծագործական ակտիվության և նախաձեռնության խթանման գործում:

Կուսակցական կազմակերպությունները պարտավոր են կենդանի կապեր ունենալ ժողովրդական լայն զանգվածների հետ: Պարբերական անձնական շփումը, մասսաների առջև կուսակցական, սովետական ղեկավար աշխատողների ելույթները խոշոր նշանակություն ունեն ո՛չ միայն կոմունիստական շինարարության խնդիրների հաջող լուծման համար, այլև ղեկավարներին հարստացնում են մասսաների կոլեկտիվ փորձով և իմաստությամբ, հնարավորություն ընձեռում՝ ճիշտ կանխատեսելու իրադարձությունների ընթացքը, կուսակցության քաղաքական ղեկավարումը դարձնում առավել նպատակասլաց ու արդյունավետ:

Աշխատանքի լենինյան ոճի ուսումնասիրումն ու տիրապետումը ոչ թե կամպանիա է, այլ մասսաների շրջանում տարվող կազմակերպական ու գաղափարական աշխատանքի բարելավման ամենօրյա պրոցես: Այս է ՍՄԿԿ XXV համագումարի որոշումների անշեղ կենսագործման լավագույն առհավատչյան:

# ԳԼԽԱՎՈՐԸ ԿԱՏԱՐՄԱՆ ՍՏՈՒԳՈՒՄՆ Է

**(ՀԿԿ Լենինականի քաղկոմի առաջին քարտուղար Ռ. Ա. ԱՐԶՈՒՄԱՆՅԱՆԻ ելույթից)**

Արդի պայմաններում, երբ առաջին պլան են մղվում մեր զարգացման որակական կողմերը, անհամեմատ ավելի բարձր պահանջներ են ներկայացվում կատարման ստուգմանն ու վերահսկողությանը։ Կուսակցության XXV համագումարն այդ հարցերը բարձրացրեց որակապես նոր մակարդակի՝ վերահսկողությունը և կատարման ստուգումը համարելով յուրաքանչյուր կուսակցական մարմնի, յուրաքանչյուր սկզբնական կազմակերպության կարևորագույն խնդիրը։

Կուսակցությունը մեզ սովորեցնում է, որ հասարակական զարգացման պրոցեսների վրա ակտիվորեն ներազդելու համար անհրաժեշտ է նախ և առաջ խորապես ու բազմակողմանիորեն ուսումնասիրել տվյալ փուլի հրատապ խնդիրները, կոնկրետ, օբյեկտիվ պայմաններն ու առանձնահատկությունները։

Ղեկավարվելով ներկուսակցական աշխատանքի լենինյան սկզբունքներով, Լենինականի քաղաքային կոմիտեն իր կազմակերպական-քաղաքական ողջ աշխատանքն ուղղում է կուսակցության ու կառավարության դիրեկտիվների, սեփական որոշումների անվերապահ կենսագործմանը, քաղաքի տնտեսական ու կուլտուրական շինարարության խնդիրների իրականացմանը։ Այդ գործում նրա համար ուղենիշ են ՍՄԿԿ Կենտկոմի հայտնի որոշումները Կրասնոդարի ու Թբիլիսիի կուսակցական կազմակերպությունների մասին և ՀԿԿ Կենտկոմի 1975 թվականի հունվարյան պլենումի որոշումները։

Որոշումների կատարման ստուգման վերաբերյալ հարցը դեռևս 1975 թվականի օգոստոսին քննարկվեց քաղկոմի պլենումում, որտեղ օգտակար և լուրջ խոսակցություն ծավալվեց կուսակցական կազմակերպություններում, սովետական և տնտեսական ղեկավար մարմիններում կատարման ստուգման վիճակի շուրջ։ Պլենումը մշակեց կազմակերպական միջոցառումների մի ամբողջ կոմպլեքս՝ ուղղված վերահսկողության և կատարման ստուգման սիստեմի կատարելագործմանը, բոլոր օղակներում կատարողական կարգապահության ուժեղացմանը։

Նշված միջոցառումների հաջող կատարման համար կուսակցության քաղկոմը ձգտում է իր գործունեության մեջ արմատավորել աշխատանքի պլանային հիմունքները, քանի որ, ինչպես ցույց է տալիս պրակտիկան, գործի հաջողությունը պայմանավորված է ամենից առաջ պլանավորման հիմնավորվածությամբ։

Պլանավորման հիմքում դրվում են սոցիոլոգիական հետազոտություններ, կառավարման տեսության տարրեր, որոնք հնարավորություն են ընձեռում՝ ընտրելու հանգուցային հարցերը, որոշելու տվյալ փուլի առավել հրատապ և առաջնային պրոբլեմները։

Պլանավորման գործում վճռական նշանակություն ունեն ներքևից եկող ինֆորմացիայի, հասարակական կարծիքի մանրակրկիտ հաշվառումն ու մշակումը։ Հատուկ, օպերատիվ ինֆորմացիան կուսակցական կոմիտեին հնարավորություն է ընձեռում՝ ո՛չ միայն իրազեկ լինելու գործերի ընթացքին, այլև ժամանակին միջոցներ և ջանքեր գործադրելու առաջացած դժվարությունների հաղթահարման համար։

Ինֆորմացիայի շարժումը կարգավորելու և կառավարելու նպատակով կուսակցության քաղաքային կոմիտեն ստեղծել է ինֆորմացիայի սեկտոր, մշակել սկզբնական կուսկազմակերպությունների հատուկ անձնագրեր, որոնք սպառիչ պատկերացում են տալիս կազմակերպությունների և աշխատանքային կոլեկտիվների գործունեության, նրանց պլանների և հուզող հարցերի մասին։ Ինֆորմացիայի հաշվառման, վերլուծման և կառավարման հիման վրա սեկ-



տորը հիմնավորված հանձնարարականներ է տալիս աշխատանքի ընթացիկ և հեռանկարային պլանավորման համար։

Աշխատանքի պլանավորման ընթացքում ուշադիր կերպով ուսումնասիրվում են նաև ժողովներում կոմունիստական քննադատական դիտողություններն ու առաջարկությունները։

Այս կամ այն հարցի քննարկման համար կուսքաղկոմը ներգրավում է կուսակցական-տնտեսական լայն ակտիվին, գիտական աշխատողների, փորձառու մասնագետների։ Բացի դրանից, քաղկոմին առընթեր ստեղծված են արտահաստիքային բաժիններ ու հանձնաժողովներ։ Դրանով իսկ ապահովվում է լայն մասնակցությունը հարցի նախապատրաստմանը։ Հանձնաժողովները, քաղկոմի համապատասխան բաժնի հետ միասին, մշակում են որոշումների նախագծերը։

Որոշում ընդունելուց հետո հանձնաժողովի անդամները, կուսքաղկոմի ապարատի աշխատողների հետ միասին, լինում են տեղերում՝ սկզբնական օղակներին օգնություն ցույց տալու նպատակով։

Կատարման ժամանակընթացքում թղթապանակներում հավաքվում են անհրաժեշտ ինֆորմացիաներ, որոնց հիման վրա պատրաստվում է համապատասխան զեկուցում տվյալ որոշման իրագործման մասին։ Հարցերը վերահսկողությունից հանվում են միայն քաղկոմի բյուրոյի կամ պլենումի որոշմամբ։ Քաղկոմի ապարատի բոլոր պատասխանատու աշխատողների մոտ կան մագնիսային հսկիչ սիստեմներ, որոնք հնարավորություն են ընձեռում ամենօրյա հսկողություն սահմանել սկզբնական կուսկազմակերպություններում միջոցառումների իրագործման և որոշումների կատարման նկատմամբ։

Վերահսկողությունը վերևից իրագործելու հետ միասին՝ կուսքաղկոմն անշեղորեն ուժեղացնում է նաև վերահսկողությունը ներքևից, երբ սկզբնական կուսկազմակերպությունները, աշխատավորական զանգվածները ստուգում են որոշումների կատարումը, ղեկավար մարմինների գործունեությունը։

Կուսակցության քաղաքային կոմիտեն լուրջ ուշադրություն է նվիրում որոշումների կատարման ստուգման ասպարեզում սկզբնական կուսկազմակերպությունների աշխատանքում եղած առաջավոր փորձի տարածմանն ու արմատավորմանը։ 1976 թ. ապրիլին քաղկոմի բյուրոն քննարկեց «Գործավարությունը և կատարման ստուգման կազմակերպումը Ս. Լուկաշինի անվան մանվածքային ֆաբրիկայի կուսակցական կազմակերպությունում» հարցը։ Բացահայտվեցին մի շարք լուրջ թերություններ։ Քաղկոմի բյուրոն ոչ միայն սկզբունքային գնահատական տվեց կազմակերպությունում գործերի վիճակին, այլև նշեց թերությունների վերացման ուղիներ։

1977 թ. հունիսին, կրկին անդրադառնալով կատարման վերահսկողության ասպարեզում ֆաբրիկայի կուսկոմիտեի աշխատանքին, քաղկոմի բյուրոն նշեց, որ մեկ տարվա ընթացքում զգալիորեն բարելավվել է ֆաբրիկայի սկզբնական կուսկազմակերպությունների գործունեությունը. ստեղծվել է վերահսկողության արդյունավետ սիստեմ, կատարելագործվել են աշխատանքի ոճն ու մեթոդները։

Վերահսկողության սկզբունքային և հետևողական կազմակերպումը նախ և առաջ պայմանավորված է կադրերի ճիշտ ընտրությամբ և տեղաբաշխմամբ։ Վերահսկողության ոչ մի կատարյալ սիստեմ բնականորեն չի կարող գործել, եթե այն չի ուղեկցվում ամենօրյա կազմակերպչական աշխատանքով։ Այս իմաստով այսօր առանձնակի նշանակություն է ստանում սկզբնական կուսկազմակերպություններում ակտիվի ընտրության և դաստիարակության գործը։ Այժմ քաղաքի սկզբնական կուսկազմակերպությունների 250 քարտուղարների 99 տոկոսն ունի բարձրագույն, թերի բարձրագույն և միջնակարգ կրթություն։ Նրանցից 26-ը բանվորներ են, 114-ը՝ կանայք։

Ցավոք, ամենուրեք չէ, որ կադրերի գործունեության վերահսկողությունը գտնվում է անհրաժեշտ մակարդակի վրա։ Տակավին լուրջ թերություններ ու բացթողումներ գոյություն ունեն տնտեսական, սովետական, արհմիութենական որոշ աշխատողների, արտադրության զանազան օղակների ղեկավարների աշխատանքում։

Վերահսկման և ստուգման կատարման գործում վճռական նշանակություն ունի ներքևից եկող քննադատական դիտողությունների նկատմամբ ղեկավար աշխատողների մոտ առողջ վերաբերմունքի դաստիարակման հարցը։ Քննադատական դիտողություններն ու առաջարկությունները, դրանց իրագործման ընթացքը սիստեմատիկաբար քննարկվում են կուսքաղկոմի, կուսկոմիտեների նիստերում և սկզբնական կուսկազմակերպությունների ժողովներում, ուր մշակվում են դրանց կենսագործմանն ուղղված լուրջ միջոցառումներ։ Արդյունքների մասին սիստեմատիկաբար ինֆորմացիա է տրվում կոլեկտիվների բոլոր անդամներին։

Վերահսկողության բոլոր օղակների ջանքերի կոորդինացման գործին մեծ չափով նպաստեց ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը՝ «Լատվիական ՍՍՀ ժողովրդական վերահսկողության մարմինների կուսակցական ղեկավարման մասին»։

Աշխատանքի ոճի ու մեթոդների հետագա կատարելագործում, կատարման վերահսկողության և ստուգման ակտիվացում, կուսակցական ու պետական կարգապահության ամրապնդում՝ ահա թե ինչի մեջ է տեսնում Լենինականի քաղաքային կոմիտեն ՍՄԿԿ XXV համագումարի կողմից առաջադրված պատմական խնդիրների հաջող իրագործման երաշխիքը։

# ՄՐՑՈՒԹՅԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՄԱՆ ԼԵՆԻՆՅԱՆ ՍԿԶԲՈՒՆՔՆԵՐԸ

**(ՀԱՄԽ-ի նախագահ Լ. Գ. ՍԱՀԱԿՅԱՆԻ ելույթից)**

Սոցիալիստական մրցության սկզբունքների մշակումը Վ. Ի. Լենինի ընդհանուր տեսական ժառանգության կարևոր մասն է։ Իր մի շարք աշխատություններում նա մեծ ուշադրություն է նվիրել սոցմրցության հարցերին, վերլուծել դրա կազմակերպման բարելավման բազմաթիվ կողմերն ու խնդիրները։

Թե ինչպիսի նշանակություն էր տալիս Վ. Ի. Լենինը սոցիալիստական մրցության կազմակերպմանը, վկայում է այն փաստը, որ իր Ինչպե՞ս կազմակերպել մրցությունը աշխատությունը նա գրել է սովետական իշխանության հաստատումից ընդամենը երկու ամիս հետո։ Առաջնորդը նշել է, որ միայն սոցիալիզմն է ստեղծում մրցությունն առաջին անգամ լայնորեն և մասսայաբար կիրառելու հնարավորություն։ Բայց մրցությունն իրոք լայնորեն, իրոք մասսայական չափերով կիրառելու համար այն պետք է կազմակերպել։ Մրցության կազմակերպումը,— մատնանշում է նա,— պետք է կարևոր տեղ գրավի սովետական իշխանության խնդիրներում։

Լենինյան այս ցուցումներն այսօր էլ արդիական են հնչում։ Կուսակցությունը, ղեկավարվելով լենինյան պատգամներով, ներկայումս մեծ ուշադրություն է նվիրում մրցության կազմակերպման հետագա կատարելագործմանը։ Դա նախ և առաջ բացատրվում է նրանով, որ սոցիալիստական մրցությունը աշխատավորների ինքնագործունեությունն ու նախաձեռնությունը զարգացնելու վճռական միջոց է։ Ներկայումս մեր երկրի բանվորների և ծառայողների ավելի քան 90 տոկոսը կամ գրեթե 100 միլիոն մարդ սոցիալիստական մրցության մասնակիցներ են։

Կուսակցության XXV համագումարի որոշումները, երկրի թևակոխումը զարգացած սոցիալիստական հասարակության փուլը նշանավորվեցին մրցության նոր վերելքով, նրա նոր, բարձր աստիճանով։ Անհատական և բրիգադային մրցության մասնակիցների թիվը մեր հանրապետությունում հասավ 800 հազար մարդու, որոնցից 380 հազարը մասնակցում են կոմունիստական աշխատանքի համար շարժմանը։

Կուսակցական մարմինների ղեկավարությամբ հանրապետությունում շարունակ կատարելագործվում են սոցիալիստական մրցության ղեկավարման ոճն ու մեթոդները։ ՀԿԿ Կենտկոմի բյուրոյում սոցիալիստական մրցության



կազմակերպման հարցերի սիստեմատիկ քննարկումը մեծ չափով նպաստել է մրցության կազմակերպման կատարելագործմանը, այն ավելի գործարար դարձնելուն, նոր մեթոդների ու ձևերի մշակմանն ու կիրառմանը։ Թերևս դա է պատճառը, որ ՀԱՄԿԽ-ի վերջերս կայացած պլենումը, քննության առնելով Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 60-ամյակի պատվին Սովետական Հայաստանի աշխատավորության կողմից ստանձնած սոցիալիստական պարտավորությունների կատարման ընթացքը, արժեքավորեց հանրապետությունում ժողովրդական տնտեսության զարգացման, սոցմրցման կազմակերպման ասպարեզներում ձեռք բերված զգալի հաջողությունները։

Մեր հանրապետության աշխատավորները մեծ խանդավառությամբ ընդունեցին 1978 թվականին սոցիալիստական մրցություն ծավալելու մասին ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի նամակը։ Բոլոր աշխատանքային կոլեկտիվներում տեղի ունեցած ժողովներում ամփոփվեցին 1977 թվականի աշխատանքի արդյունքները, որոշվեցին նոր տնտեսական տարվա խնդիրները։ Ընդունված սոցիալիստական բարձր պարտավորություններում իր ամենացայտուն և լրիվ դրսևորումն է գտել սոցիալիստական մրցության նոր կողմնորոշումը դեպի արտադրության ինտենսիվացման գործոնները, աշխատանքի որակական ցուցանիշների բարելավումը։

Հանրապետությունում լայն տարածում է ստացել Լիխաչովի անվան ավտոգործարանի աշխատողների նախաձեռնությունը՝ արագացնել գիտության և տեխնիկայի նվաճումների ներդրումը արտադրության մեջ, ավելացնել բարձրորակ արտադրանքի թողարկումը։ Ամենուրեք արձագանք է գտել «Որակի հնգամյակին՝ բանվորական երաշխիք» շարժումը, լենինգրադցիների նախաձեռնությունը՝ «Յուրաքանչյուրի աշխատանքի բարձր որակից դեպի կոլեկտիվի բարձրարդյունավետ աշխատանքը»։

Ձեռք բերված հաջողությունների կողքին մի շարք աշխատանքային կոլեկտիվներում սոցիալիստական մրցության կազմակերպման բնագավառում դեռևս հանդիպում են էական թերություններ։ Պարտավորությունների մշակման, արդյունքների ամփոփման, մրցության ընթացքի լուսաբանման գործում դեռևս արմատախիլ չեն արվել ձևականության դրսևորումները։ Կան փաստեր, երբ պարտավորությունները տնտեսապես և ինժեներային առումով հիմնավորվում են ոչ բավարար, չեն ամրացվում խելամիտ կազմակերպական-տեխնիկական նորմաներով, երբեմն դրանք ընդունվում են առանց հաշվի առնելու արտադրամասերի, հերթափոխությունների, բրիգադների պարտավորությունները, խախտվում են արդյունքների ամփոփման ժամկետները։

Անշուշտ, մարդը միշտ եղել է հիմնական արտադրաուժը, հասարակական հարաբերությունների մարմնավորողը։ Սակայն արդի պայմաններում նրա գիտակցությանը, ինտելեկտին, աշխատանքային և սոցիալական ակտիվությանը ներկայացվող պահանջներն ավելի են մեծանում, որը բխում է աշխատանքի բնույթի մեջ տեղի ունեցող փոփոխություններից, այն բանից, որ աշխատանքային պրոցեսների ծանրության կենտրոնը գնալով ավելի շատ է հենվում մտավոր-հոգեբանական գործոնների վրա։ Տեխնիկայի և արտադրության կազմակերպման արմատական բարելավումը նորանոր պահանջներ է ներկայացնում մարդկային գործունեությանը, բարձրացնում է հասարակական գիտակցության դերը, աշխատանքային կոլեկտիվների դերը։ Այս ամենն իր տրամաբանական արտացոլումն է գտնում սոցիալիստական մրցության մեջ, պահանջում է գիտական մոտեցում մրցության կազմակերպման գործին, թելադրում է հաշվի առնել ոչ միայն տնտեսական, այլև սոցիալական, դաստիարակչական գործոնները։

Մրցության արդյունավետության բարձրացումը շատ դեպքերում կանխորոշվում է նրա կազմակերպման մեխանիզմի հետագա կատարելագործմամբ։ Եվ դա հասկանալի է, քանի որ մրցությունը ոչ թե տարերային, այլ գիտականորեն կազմակերպվող պրոցես է։ Մասսաների մրցությունը ներկայումս բարձրացել է իր զարգացման որակապես նոր աստիճանին։ Այդ մակարդակին պետք է համապատասխանի նաև նրա կազմակերպումը։ Մինչդեռ միշտ չէ, որ դրանք ներդաշնակ համապատասխանության մեջ են գտնվում, որի պատճառներից

մեկը, մեր կարծիքով, նաև սոցիալիստական մրցության կազմակերպողների ոչ բավարար պրոֆեսիոնալ պատրաստության մեջ է։ Ուստի, այսօր հարկավոր է կոմպլեքսային ձևով լուծել սոցիալիստական մրցությունը ղեկավարողների, տնտեսական կադրերի և արհմիութենական աշխատողների պատրաստման ու որակավորման բարձրացման հարցը։ Դա առավել ևս կարևոր է այն պատճառով, որ մասսաների ստեղծագործական որոնումների զարգացմանը համեմատ մրցությունն ավելի ու ավելի շատ է զգում հիրավի գիտական կազմակերպման կարիք։ Նրա արդյունավետությունը, տնտեսական և սոցիալ-քաղաքական հարցերի լուծման վրա նրա ազդեցության աստիճանն այնքան բարձր կլինեն, որքան զարգանան մրցության բոլոր կազմակերպիչների համագործակցությունը, նրանց գործողությունների կոորդինացումը։ Ընդ որում, շատ կարևոր նշանակություն ունի ֆունկցիաների և իրավունքների պարզորոշ բաժանումը։ Հայտնի է, որ այնտեղ, ուր հստակ կերպով ընդգծված չեն ֆունկցիաները, իսկական ղեկավարում չի կարող լինել։ Իհարկե, խոսքը վերաբերում է ֆունկցիաների հարաբերական և ոչ բացարձակ բաժանմանը։

Բացի ընդհանուր սկզբունքներից, որոնք հատկանշական են սոցիալիստական տնտեսության կառավարման ողջ սիստեմին, մրցության գիտական կազմակերպումը հենվում է նաև այլ, միայն իրեն ներհատուկ սկզբունքների վրա, որոնք մատնանշվել են դեռևս Վ. Ի. Լենինի կողմից։ Դրանք են՝ հրապարակայնությունը, արդյունքների համեմատելիությունը, առաջավոր փորձի գործնական կրկնությունը։ Մրցության կազմակերպման լենինյան այս սկզբունքները ներկայումս իրացվում են ավելի զարգացած նյութատեխնիկական բազայի և գիտատեխնիկական առաջընթացի նվաճումների պայմաններում։

Վերցնենք, օրինակ, հրապարակայնության սկզբունքը։ Արդյունքների օպերատիվ ամփոփման և մրցության ընթացքի ցուցադրման նպատակով այժմ հաջողությամբ օգտագործվում են կառավարման ավտոմատացված միջոցներն ու սիստեմները, էլեկտրոնային հաշվողական տեխնիկան, որոնք հնարավորություն են ընձեռում ապահովել լայն ու օպերատիվ տեղեկություններ պարտավորությունների, պայմանագրերի ու հանդիպական պլանների կատարման ընթացքի մասին։ Դրանց շնորհիվ մրցության վերաբերյալ բոլոր տվյալներն ավելի արագ ու հեշտ են ընկալվում նրա բոլոր մասնակիցների կողմից։

Մրցության բովանդակությունը ներկա էտապում, նրա նոր խնդիրները, բնականաբար, պայմանավորում են նաև համեմատելիության նոր չափանիշների կիրառումը։ Որոշ դեպքերում մրցության արդյունքը կարելի է ճշտորեն հաշվել, այլ դեպքերում հարկ է լինում դիմել անուղղակի ցուցանիշների։ Մրցության արդյունքների համեմատելիությունը բարելավելու համար անհրաժեշտ է առաջիկայում է՛լ ավելի կատարելագործել վիճակագրական հաշվետվության պետական սիստեմը, նկատի ունենալով, որ այն իր մեջ պետք է ներառի ոչ միայն կոլեկտիվների տնտեսական գործունեության բնութագիրը, այլև մրցության արդյունքները, դրանց գնահատման որակական ցուցանիշները։ Մանավանդ որ վիճակագրության մեջ արտացոլվող մրցության սոցիալական ցուցանիշների շրջանակն ակնհայտորեն անբավարար է։

Եվ վերջապես, խիստ կարևոր է մրցության առաջավոր փորձի տարածումը։ Պրակտիկան ցույց է տալիս, որ արտադրության մի շարք ճյուղերում առաջավորների աշխատանքի արտադրողականությունը մեկուկես անգամ բարձր է, իսկ ետ մնացողներինը գրեթե նույնքան ցածր է միջին մակարդակից։ Կրճատել այս տարբերությունը՝ կնշանակի զգալիորեն բարձրացնել արտադրության արդյունավետությունը։

Սակայն սոցիալիստական մրցության մի այնպիսի կարևոր «մեխանիզմ», ինչպիսին է առաջավոր փորձի տարածումը, դեռևս ոչ ամենուրեք է բավականաչափ կարգավորված։ Մեր կարծիքով, աշխատանքի լավագույն օրինակների պրոպագանդայում հիմնական թերությունը նրա, այսպես կոչված, լուսավորչական բնույթն է, այսինքն՝ առաջավոր փորձի մասին երբեմն ավելի շատ խոսում են, քան այն գործնականորեն մասսայականացնում, արմատավորում։ Այնինչ, դա պետք է դառնա ձեռնարկությունների և կազմակերպությունների



այնպիսի պարտականություն, ինչպիսին է արտադրական առաջադրանքների կատարումը։

Կարծում ենք, որ անհրաժեշտ է առաջավոր փորձը նաև օպերատիվ կարգով հաշվի առնել նորմատիվներում ու ստանդարտներում՝ պլանների և սոցիալիստական պարտավորությունների նախագծերը մշակելիս։ Միայն այս ուղիով այն կարելի է դարձնել բոլոր մրցողների սեփականությունը։ Լիովին հասունացել է առաջավոր փորձի տարածման միասնական պետական սիստեմ ստեղծելու գաղափարը։ Անհրաժեշտ է նաև մշակել առաջավոր փորձի տարածման սահմանների չափանիշներ։ Երբեմն պատահում է, որ տեղական նշանակություն ունեցող նախաձեռնումները մենք փորձում ենք դարձնել համամիութենական, և մեր ջանքերն իզուր են անցնում։

Մրցության սոցիալ-քաղաքական արդյունքները բարելավելու համար հարկավոր է կոլեկտիվի սոցիալիստական պարտավորություններն ավելի սերտորեն ու օրգանապես առնչել սոցիալական զարգացման պլանների հետ։ Թվում է, որ սոցիալական զարգացման պլանի ցուցանիշները պետք է ելակետային դառնան սոցիալիստական պարտավորությունները մշակելու համար։ Մրցության նպատակը պետք է լինի ոչ միայն արտադրական պլանների կատարումն ու գերակատարումը, այլև սոցիալական այն ցուցանիշների նվաճումը, որոնք նախատեսվում են կոլեկտիվի սոցիալական զարգացման պլանով։

## ԳՈՐԾՈՒՆ ՎԵՐԱՀՍԿՈՂՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ

**(Հայկական ՍՍՀ ժողովրդական վերահսկողության կոմիտեի նախագահ Գ. Ա. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆԻ ելույթից)**

Մեր կուսակցությունը հատուկ կարևորություն է տալիս կազմակերպչական ողջ աշխատանքի և դրա անքակտելի մասը հանդիսացող վերահսկողության, ընդունված որոշումների կատարման ստուգման մակարդակի բարձրացմանը։

Վ. Ի. Լենինը խորապես և համակողմանիորեն հիմնավորել է նոր հասարակության կառուցման տարբեր փուլերում վերահսկողության անհրաժեշտությունն ու գլխավոր ուղղությունները, մշակել դրա հիմնական սկզբունքները, նպատակներն ու խնդիրները։ Վլադիմիր Իլյիչը սոցիալիստական վերահսկողության կարևորագույն սկզբունքը համարում էր դրա իսկական ժողովրդայնությունը, մասսայականությունը։

Սովետական պետության մեջ, որն արտահայտում է ամբողջ ժողովրդի շահերն ու կամքը, վերահսկողության իրավունքը պատկանում է իրեն՝ ժողովրդին, որպես իր երկրի միակ տիրոջ։ Ներկայումս հանրապետության ժողովրդական վերահսկողության մարմինների աշխատանքին մասնակցում է ավելի քան 100 հազար մարդ, դրանց 56,5 տոկոսը բանվորներ և կոլտնտեսականներ են։ Գործում են ժողովրդական վերահսկողության ավելի քան 6 հազար խմբեր և 7 հազար պոստեր։ Դա մեծ ուժ է։

Ժողովրդական վերահսկիչների 37 տոկոսը կոմունիստներ են, այլ կերպ ասած՝ հանրապետության կուսակցական կազմակերպության յուրաքանչյուր չորրորդ անդամն աշխատակցում է վերահսկողության մարմիններին։ Կուսակցական և սովետական մարմինները, կուսակցական կազմակերպությունները կանոնավոր կերպով քննարկում են ժողովրդական վերահսկողության մարմինների հաշվետվությունները, զգալի աշխատանք են տանում «Լատվիական ՍՍՀ ժողովրդական վերահսկողության մարմինների կուսակցական ղեկավարման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման պահանջների կատարման նպատակով։

Հանրապետության ժողովրդական վերահսկողության մարմինների աշխատանքում գլխավորը ՍՄԿԿ XXV համագումարի և ՀԿԿ XXVI համագումարի որոշումների կատարման վերահսկումն է։ Նրանք մեծ ուշադրություն են նվիրում պետական պլանների կատարման ընթացքին, ժողովրդական տնտեսու-

Այդպիսի մի շարք փորձեր ՀԿԿ Կենտկոմի կողմից արժանի հակահարված ստացան:

Քննադատության զենքը պետք է գտնվի մաքուր և ազնիվ ձեռքերում:

Մեր կուսակցությունը միշտ սկզբունքային քննադատության և ինքնաքննադատության օրինակ է տալիս: Հայաստանի կոմունիստների կյանքում խորապես սկզբունքային, գործարար և կոնստրուկտիվ քննադատության օրինակ էր ՀԿԿ Կենտկոմի 1975 թվականի հունվարյան պլենումը: Հունվարյան պլենումի քննադատական ոգին, նրա գործարար բնույթը փոխանցվեցին մեր քաղաքային և շրջանային կոմիտեներին, իսկ դրանց միջոցով՝ պայքարի ամենառաջավոր օղակում գտնվող մեր սկզբնական կուսակցական կազմակերպություններին:

Քննադատությունը և ինքնաքննադատությունը մեր բոլոր կուսկազմակերպություններում նոր ուժով ծավալվեց «Տամբովի մարզային կուսակցական կազմակերպությունում քննադատության և ինքնաքննադատության մասին» ՍՄԿԿ Կենտկոմի հայտնի որոշումից և ՍՄԿԿ XXV համագումարից հետո:

Բազմաթիվ սկզբնական կուսկազմակերպություններ, քաղաքային-շրջանային կոմիտեներ արժեքավոր փորձ են կուտակել կոմունիստների քննադատական դիտողությունների և առաջարկների ուսումնասիրման, ամփոփման և կենսագործման ասպարեզում, կուսակցության անդամներին և ակտիվին սիստեմատիկաբար իրազեկ են պահում դրանց իրականացման ընթացքին:

ՍՄԿԿ XXV համագումարը հատուկ ուշադրություն նվիրեց կուսակցական շինարարության հարցերին, այդ թվում՝ քննադատության և ինքնաքննադատության բուն մեթոդին: Այդ մեթոդի էությունն այն է, որ այս կամ այն կազմակերպության, այս կամ այն աշխատողի գործունեության բոլոր կողմերը ստանան օբյեկտիվ գնահատական, որպեսզի եղած թերությունները համակողմանի վերլուծվեն և վերացվեն, որ թույլ չտրվի լիբերալ վերաբերմունք թերությունների և դրանց կրողների նկատմամբ: Համագումարը մեկ անգամ ևս շեշտեց, որ մարդկանց հանդեպ վստահությունն ու հարգանքը պետք է զուգորդվեն հանձնարարված գործի նկատմամբ բարձր պահանջկոտության հետ:

Ելնելով ՍՄԿԿ XXV համագումարի պահանջներից՝ ՀԿԿ Կենտկոմը, Երևանի, Լենինականի, Կիրովականի քաղաքային կոմիտեները և մի շարք գյուղական շրջկոմներ խոշոր միջոցառումներ են իրականացնում հատկապես արտադրության կուսակցական ղեկավարման բարելավման, բուն էկոնոմիկայի զարգացման բնագավառում:

ՀԿԿ Կենտկոմի անմիջական ղեկավարությամբ մեր հանրապետության կուսակցական կազմակերպությունները քիչ աշխատանք չկատարեցին նաև հանրապետությունում հասարակական-քաղաքական և բարոյահոգեբանական մթնոլորտն առողջացնելու, կուսակցական ղեկավարման գործում անցյալում թույլ տրված սխալներն ու խեղաթյուրումները շտկելու նպատակով:

Սակայն մենք վատ կոմունիստներ կլինեինք, եթե իսկական սկզբունքային քննադատական մոտեցում չդրսևորեինք կատարվածի նկատմամբ և կրկին ու վերստին մեր ուշադրությունը չբևեռեինք թերությունների, սխալների ու վրիպումների վրա, չսովորեինք հաղթահարել դրանք: Քննադատությունը և ինքնաքննադատությունն ինչ-որ անցողիկ, կամպանիոն բնույթի բան չէ, այն մեր կուսակցական կազմակերպությունների քաղաքական հասունության և նրանց պատասխանատվության ստույգ չափանիշն է: Մինչդեռ առանձին կուսշրջկոմների արձանագրություններին ծանոթանալիս ակամա ամաչում ես նրանց աշխատողների փոխարեն այն անհամեստ, ոչ քննադատական գնահատականների համար, որ տալիս են իրենց աննշան հաջողություններին: Կուսակցական ժողովների, ակտիվների, պլենումների, կոնֆերանսների ամբիոններից երբեմն գործարար և գործնական, խորապես կուսակցական վերլուծությունների փոխարեն կարելի է լսել ոչ քննադատական ինքնահաշվետվություններ՝ համեմված ինքնագովության ներբողներով: Մի շարք կուսակցական կոմիտեների և սկզբնական կուսկազմակերպությունների աշխատանքում դեռևս հաղթահարված չեն լիբերալիզմը, անսկզբունքայնությունը, անտարբերությունը:



Մեր կուսակցությունն ունի մեկ կարգապահություն, մեկ օրենք բոլոր կոմունիստների համար: Սակայն իրականում առանձին քաղկոմ-շրջկոմներ անտեսում են այդ հանրահայտ դրույթը. զանազան խախտումների համար իրավացիորեն պատժում են շարքային կոմունիստներին, իսկ առանձին ղեկավար աշխատողներ այդ նույն արարքի համար անպատիժ են մնում: Այդպիսի փաստեր 1976—1977 թթ. նկատվել են Նոյեմբերյանի, Ստեփանավանի և այլ կազմակերպություններում:

ՍՍՀՄ Սահմանադրությունը մեր ժողովրդի, մեր կուսակցության բարձրագույն կամքի արտահայտությունն է: Նոր Սահմանադրությունը գործողության մեջ դրվելու կապակցությամբ նկատելիորեն փոխվում են մեր ողջ պետական ապարատի, նրա կենտրոնական և տեղական մարմինների աշխատանքի բովանդակությունը, ձևերն ու մեթոդները: Սահմանադրության անշեղ կիրառման շահերը պահանջում են հետևողականորեն կատարելագործել աշխատանքի ոճը մեր գործունեության բոլոր օղակներում:

# ԳՈՐԾՈՒՆԵՈՒԹՅԱՆ ԿԱՐԵՎՈՐ ԲՆԱԳԱՎԱՌ

**(ՀԿԿ Կիրովականի քաղկոմի առաջին քարտուղար Հ. Ա. ՕՀԱՆՅԱՆԻ ելույթից)**

ՍՄԿԿ ղեկավար դերի աճն անխզելիորեն կապված է ինչպես կուսակցության, նրա որակական կազմի ամրապնդման, ներքին կյանքի ճիշտ կազմակերպման, գաղափարադաստիարակչական աշխատանքի ուժեղացման հետ, այնպես էլ ժողովրդական տնտեսության, հասարակական գործունեության բոլոր կողմերի կուսակցական ղեկավարման մակարդակի բարձրացման հետ: Բնական է, որ էկոնոմիկայի կուսակցական ղեկավարությունը ՍՄԿԿ գործունեության կարևորագույն բնագավառն է:

Համաժողովրդական տնտեսության կուսակցական ղեկավարման լենինյան սկզբունքների կիրառմամբ հարստանում են կուսակցական-կազմակերպական աշխատանքի ձևերն ու մեթոդները, որոնց միջոցով կուսակցությունը ներգործում է երկրի տնտեսական կյանքի վրա:

ՍՄԿԿ XXV համագումարը շեշտեց, որ սովետական հասարակության զարգացման դինամիզմը, կոմունիստական շինարարության աճող մասշտաբները հրամայաբար պահանջում են էկոնոմիկայի և կուլտուրայի զարգացման կուսակցական ղեկավարության մակարդակի անընդհատ բարձրացում: Խոսքը տնտեսական շինարարության կուսակցական ղեկավարման նկատմամբ որակապես նոր մոտեցման, կուսակցական և պետական աշխատանքի ոճի կատարելագործման մասին է:

Այդ պրոցեսի գլխավոր ուղղությունը տնտեսական քաղաքականության և ստրատեգիայի գիտական հիմնավորվածության մակարդակի բարձրացումն է:

Մեր կուսակցության համար, հասարակական կյանքի ղեկավարման, քաղաքական, տնտեսական, կազմակերպական և մյուս խնդիրների լուծման նկատմամբ գիտական, նպատակամղված մոտեցումը, հատկապես զարգացած սոցիալիզմի պայմաններում, օբյեկտիվ անհրաժեշտություն է:

Վ. Ի. Լենինը սովորեցնում էր բազմակողմանիորեն հաշվի առնել երկրի տնտեսական զարգացման ձեռք բերված մակարդակը, չանտեսել օբյեկտիվ պայմանները, տեսնել ռեալ հնարավորությունները:

ՍՄԿԿ XXV համագումարը կոնկրետացրեց և զարգացրեց կուսակցության տնտեսական քաղաքականության սկզբունքային դրույթները հասուն սոցիալիստական հասարակության պայմաններում՝ առաջիկա հնգամյակի և ավելի մեծ հեռանկարների համար:

Կուսակցական կազմակերպությունների գործունեության մեջ ավելի ու ավելի են հաստատվում աշխատանքի լենինյան ոճն ու մեթոդները՝ գործի նկատմամբ գիտական, ստեղծագործական մոտեցումը, բարձր պահանջկոտու-

թյունն ու պատասխանատվությունը, սկզբունքայնությունը, թերությունների, բարեհոգության և ինքնահանգստացման ամեն տեսակ դրսևորումների նկատմամբ անհաշտվողականությունը:

ՀԿԿ Կիրովականի քաղաքային կոմիտեն արտադրության արդյունավետության բարձրացման հանգուցային հարցերը պահում է սևեռուն հսկողության տակ: Մեր ուշադրության կենտրոնում նոր կարողությունների արագ հանձնումն ու ժամկետից շուտ յուրացումն է, արտադրության վերակառուցումն ու տեխնիկական վերազինումը, նորագույն տեխնիկայի կոմպլեքսային մեքենայացման միջոցառումների արմատավորումը, աշխատանքի կազմակերպման կատարելագործումը, սոցիալիստական մրցության ներգործունության բարձրացումը:

Մեզ մոտ, սկսած կուսակցական կազմակերպություններից մինչև քաղաքային կոմիտեն, ստեղծվել է ձեռնարկությունների գործունեության նկատմամբ վերահսկողության գործնական սիստեմ: Այն իր մեջ ներառում է ձեռնարկություններում գործերի վիճակի օպերատիվ վերլուծումը:

Քաղաքային կոմիտեում ամեն ամիս անցկացվում են աշխատանքի արդյունքների քննարկումներ՝ ետ մնացող ձեռնարկությունների ղեկավարների հաշվետվությունների հետ միասին: Այդ ամենը նպաստում է բարձր պահանջկոտության մթնոլորտի ստեղծմանը, կադրերի նախաձեռնության զարգացմանը, դժվարությունների ու թերությունների հաղթահարմանը:

Հնգամյակի թվերը գտնվում են քաղաքային կոմիտեի ամենօրյա վերահսկողության ներքո: Մենք հետևում ենք, որ պլանները կատարվեն և գերակատարվեն ըստ տարիների, ըստ եռամսյակների, ըստ ամիսների ու տասնօրյակների: Ավելին, մենք հետևում ենք, որպեսզի պլանավորման ժամանակ առաջադրանքներն ըստ եռամսյակների, ըստ ամիսների բաշխվեն համաչափ, որպեսզի տարվա առաջին կիսամյակում ստեղծվի տարեկան պլանի հաջող կատարման հուսալի ռեզերվ:

Ղեկավարման լենինյան մեթոդի բնորոշ հատկանիշը տնտեսական պրոբլեմների լուծմանը բազմակողմանի մոտեցումն է, որը պայմանավորված է արտադրության սոցիալիստական եղանակի բուն էությամբ:

Կուսակցության քաղաքային կոմիտեն քաղաքը դիտում է որպես տնտեսական մեկ միավոր, մեկ միասնական օրգանիզմ: Ներկա պայմաններում, երբ տեղերում չկան միջճյուղային միավորումների գործունեությունը կոորդինացնող տնտեսական ղեկավար մարմիններ, բարդանում է քաղկոմ-շրջկոմների աշխատանքը էկոնոմիկայի ղեկավարման ասպարեզում: Քաղկոմը փաստորեն տեղում դառնում է ձեռնարկությունների գործունեությունը կոորդինացնող միակ մարմինը:

Փորձը ցույց է տալիս, որ որևէ ձեռնարկության, հիմնարկության, կազմակերպության վատ աշխատանքը, բացթողումը խախտում են քաղաքի էկոնոմիկայի կարգավորված ռիթմը: Դրա համար «Ոչ մի ետ մնացող» շարժման մեջ մենք ընդգրկել ենք նաև քաղաքի տրանսպորտի, առևտրի, կենցաղային ծառայությունների, բուժսպասարկման, ուսումնական հաստատությունների կոլեկտիվներին:

Ձեռնարկությունների աշխատանքը կոորդինացնելու նպատակով քաղկոմին կից ստեղծել ենք դիրեկտորների հասարակական խորհուրդ, որն օգնում է՝ խորությամբ վերլուծելու գործերի իրական վիճակը, լուծելու քաղաքի զարգացմանն առնչվող առանձին հարցեր:

Արտադրության արդյունավետության բարձրացման պրոբլեմը օրգանապես զուգորդվում է արտադրանքի որակի բարձրացման խնդրի հետ: Ղեկավարվելով ՍՄԿԿ XXV համագումարի որոշումներով, քաղաքային կոմիտեն կուսակցական և տնտեսական մարմինների ուշադրությունը մշտապես սևեռում է արտադրանքի որակի, տեխնիկական մակարդակի, հուսալիության և երկարակեցության բարձրացման հարցերի վրա:

Հաջողությունը հնարավոր է միայն կոմպլեքսային, սիստեմավորված մոտեցմամբ, երբ զուգակցվում են քաղաքական, սոցիալական, տնտեսական, գիտատեխնիկական և կազմակերպչական խնդիրները: Հաշվի առնելով այդ



հանգամանքը, մենք դեռևս 1976 թ. հրավիրեցինք քաղկոմի պլենում՝ նվիրված արտադրանքի որակի բարձրացմանը: Պլենումի մասնակիցները նախապես ծանոթացան որակի կառավարման սիստեմի արմատավորման ասպարեզում քաղաքի առաջավոր ձեռնարկությունների, կուսակցական կազմակերպությունների փորձին: Նրանք եղան ավտոգենային մեքենաշինության, լուսատեխնիկական, ճշգրիտ հաստոցների, բարձրջերմաստիճանային տաքացուցիչների գործարաններում, պլենումից առաջ կազմակերպվեց ցուցահանդես, որտեղ ցուցադրվեցին որակի պետական նշանի արժանացած արտադրատեսակները:

Պլենումի ընդունած որոշումը թողարկվող արտադրանքի որակի բարելավման միջոցառումների իրականացման ասպարեզում քաղաքի սկզբնական կուսկազմակերպությունների մեծ ու բազմակողմանի աշխատանքի սկիզբը դրեց: Քաղկոմին կից և բոլոր արտադրական ու շինարարական կազմակերպություններում ստեղծվել են որակի հարցով զբաղվող հանձնաժողովներ, որոնց ջանքերով միայն 1977 թ. իրականացվել է 437 տեխնիկական և կազմակերպչական միջոցառում:

Արմատավորվում է «Որակի օր» միջոցառումը: Անցած ժամանակաշրջանում քաղաքի 7 ձեռնարկություններում ներդրվել է որակի կառավարման սիստեմ, 3-ում այն արմատավորման փուլում է: Ավտոգենային մեքենաշինության գործարանի արտադրանքի 75 տոկոսն այժմ թողարկվում է պետական որականիշով, որի համար 1977 թ. գործարանն արժանացավ ՍՍՀՄ Մինիստրների խորհրդին կից պետական ստանդարտների կոմիտեի և ՀԱՄԿԽ-ի առաջին կարգի դիպլոմի: Ճշգրիտ հաստոցների գործարանի թողարկած էլեկտրակայծային հաստոցը 1977 թ. գարնանը Լայպցիգի տոնավաճառում նվաճել է ոսկե մեդալ:

Այս ամենի հետ մեկտեղ մենք լավ ենք հասկանում, որ արտադրանքի որակի բարձրացման դեռևս ոչ բոլոր ռեզերվներն են լրիվ օգտագործվում: Ձգտում ենք հասնել այն բանին, որ որակի շեշտակի բարձրացման համար պայքարը որոշի բոլոր արտադրական կոլեկտիվների աշխատանքի ուղղությունը:

Էկոնոմիկայի առանցքային հարցերից մեկը՝ արտադրության արդյունավետության բարձրացման հիմքը, կարողությունների արագ յուրացումն ու արդյունավետ օգտագործումն է: Քաղկոմը հաստատել է շահագործման հանձնվելիք օբյեկտների ցանկը և գրաֆիկը, դրանց կառուցումը գտնվում է քաղկոմի, քաղսովետի և սկզբնական կուսկազմակերպությունների ամենօրյա վերահսկողության ներքո: Գործի շահերից ելնելով՝ քաղկոմին կից ստեղծել ենք կապիտալ շինարարության ընթացքը վերահսկող, շինարարությանը մասնակից (պատվիրատու, կապալառու, նախագծող, մատակարարող) կազմակերպությունների ջանքերը կոորդինացնող հանձնաժողով: Յուրաքանչյուր շաբաթ օրը քաղաքում հայտարարված է շինարարության օր:

Այժմ մեր նպատակն է, հենվելով էկոնոմիկայի կուսակցական ղեկավարման լենինյան սկզբունքների վրա, կատարելագործել արտադրության ղեկավարման ձևերն ու մեթոդները, ապահովել բոլոր կոլեկտիվների բարձրարտադրողական աշխատանքը: Դա կլինի մեր կոնկրետ ավանդը ՍՄԿԿ XXV համագումարի պատմական որոշումների կատարման գործում:

## ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՆԱԽԱԴՐՅԱԼԸ

**(Հայկական ՍՍՀ գյուղատնտեսության մինիստր Հ. Վ. ԹԱՐՋՈՒՄԱՆՅԱՆԻ ելույթից)**

Մեր հանրապետության ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերը, այդ թվում և գյուղատնտեսությունը, 1978 թվականը թևակոխեցին հնգամյակի երկու տարիների պլանները հաջողությամբ կատարած և գերակատարած:

Հատկանշական է, որ 1977 թ. հանրապետության կոլտնտեսություններն ու սովխոզները, կուսկազմակերպությունների ղեկավարությամբ, պետությանը

վաճառեցին այնքան հացահատիկ, շաքարի ճակնդեղ, բանջարեղեն, կաթ, խորդենի, որ գերազանցում էր հնգամյակի վերջին տարվա՝ 1980 թվականի համար նախատեսված մակարդակը:

Այս հաջողությունների նախադրյալների մասին որոշակի նշեց Լ. Ի. Բրեժնևը: Հայաստանի գյուղի աշխատավորներին ի սրտե շնորհավորելով գյուղատնտեսական մթերքների արտադրության 1977 թվականի պլանի կատարման առթիվ, իր ողջույնում նա ասաց. «Ձեր ձեռք բերած հաջողությունները գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության բարձրացման միջոցառումների կոմպլեքսի իրականացման գործում գյուղատնտեսության աշխատողների անձնվեր աշխատանքի արդյունք է, կոլտնտեսությունների, սովխոզների բանվորների, գյուղատնտեսության մասնագետների ու գիտնականների, գյուղատնտեսական ու մթերող կազմակերպությունների աշխատանքային բարձր խանդավառության, կուսակցական, սովետական, արհմիութենական և կոմերիտական մարմինների կազմակերպչական ու քաղաքական մեծ աշխատանքի արդյունքը»:

Սովետական պետական ապարատի էության, նրա գործունեության լենինյան դրույթները հանրահայտ են: Պետական յուրաքանչյուր ապարատ պետք է լինի ճկուն, գործունյա, իր վերադաս մարմինների և սեփական որոշումների կենսագործման մեջ մինչև վերջ հետևողական: Այն պետք է բոլոր թելերով կապված լինի աշխատավորական մասսաների հետ, ունկնդրի նրանց ձայնը, զերծ լինի բյուրոկրատիզմից, քաշքշուկներից: Ապարատում պետք է տիրի պետական խիստ կարգապահություն:

Կուսակցությունը, նրա Կենտրոնական կոմիտեն մշտապես հոգ են տանում, որպեսզի անշեղորեն կենսագործվեն լենինյան դրույթները, հետևողականորեն ավելի ու ավելի են կատարելագործում սովետական պետական ապարատը, նրա բոլոր օղակները: ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան պլենումի որոշումներում, պլենումում ընկեր Բրեժնևի արտասանած ճառում հստակորեն նշված են կուսակցական, սովետական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունների առաջիկա անելիքները:

Վերջին երեք տարում հանրապետության գյուղատնտեսության զարգացման ասպարեզում ձեռք բերած հաջողություններն արդյունք են ՀԿԿ Կենտկոմի 1975 թվականի հունվարյան պլենումի և Հայաստանի կոմկուսի XXVI համագումարի նախագծած ճիշտ ուղղության: Պլենումի և համագումարի որոշումներում պարզորոշ ցույց են տրված այն թերությունները ու սխալները, որոնք տեղ էին գտել հանրապետության գյուղատնտեսության զարգացման բնագավառում և նշվել այն գործնական միջոցառումները, որոնց կենսագործմամբ գյուղատնտեսությունը դուրս կգար այդ վիճակից և կբռներ անշեղ վերընթացի ուղին: Այդ միջոցառումները հիմնված են գյուղատնտեսական գիտության նորագույն նվաճումների վրա:

Եվ գյուղատնտեսության մինիստրությունն ընթացավ ու շարունակում է ընթանալ այդ ուղիով: Հայաստանի կոմկուսի Կենտկոմը և հանրապետության Մինիստրների խորհուրդը երբեք չեն թուլացրել մինիստրությանը ցույց տրվող ղեկավարությունն ու օգնությունը, մշտապես ընդառաջել են նրա նախաձեռնություններին: Ահա սա է եղել գյուղատնտեսության մինիստրության աշխատանքում եղած հաջողությունների գլխավոր նախադրյալը և մնում է այդպիսին:

Վերադաս մարմինների և սեփական որոշումների հետևողական կենսագործումը հաջողության երաշխիք է: Այստեղ մեզ շատ է օգնում վերահսկողության այն կարգը, որը սահմանված է մինիստրության կենտրոնական ապարատում: Դրա շնորհիվ ուզած րոպեին կարելի է իմանալ, թե ինչ ընթացքի մեջ է այս կամ այն որոշման կատարումը, ում մոտ է գտնվում այն, պաշտոնատար անձը, վարչության, ինստիտուտի, ձեռնարկության, կոլտնտեսության, սովխոզի ղեկավարությունը երբ պետք է զեկուցի իրեն տրված հանձնարարության կատարման մասին: Ահա վերահսկողության այս կարգի շնորհիվ է, որ վերջին երեք տարում դեռ չի նշվել մի դեպք, որ որոշումը հասցեատիրոջը հասած չլինի, «կորած» լինի կամ նրա մասին «մոռացած» լինեն:

Որպես կանոն, մինիստրության կենտրոնական ապարատում ընդունված



բոլոր որոշումները պետք է գիտականորեն, տնտեսապես հիմնավորված լինեն, նրանցում պետք է նախատեսված լինեն դրանց կենսագործման համար նյութական և մյուս բոլոր պայմանները, նշվի, թե ով է դրանց կատարման համար պատասխանատու: Հակառակ պարագայում որոշման նախագիծը մերժվում է:

Մեծ Լենինը մեզ սովորեցնում է, որ որոշում ընդունելը դեռ քիչ է, որքան էլ այն լավ լինի, կարևորը և գլխավորը նրա կատարման ապահովումն է:

Տասնամյակներ շարունակ շատ որոշումներ են ընդունվել սերմնաբուծության վիճակը բարելավելու մասին, սակայն գործը տեղից չի շարժվել, հանրապետությունում հացահատիկի միջին բերքատվությունը հեկտարից տատանվել է 10—12—15 ցենտների միջև: Ինչո՞ւ: Որովհետև, ինչպես ընդունված է ասել, որոշումները մնացել են թղթի վրա:

Մինիստրությունը սերմացուի հիմնովին բարելավման, դրանով լրիվ ապահովվածության հարցը համարեց № 1 պրոբլեմ և հետևողականորեն ու կոնկրետ լուծեց այն: Եվ եթե վերջին երեք տարիներին հանրապետությունում հացահատիկի միջին բերքատվությունը հեկտարից 20 ցենտներից պակաս չի լինում, ապա դրա գլխավոր նախապայմանը բարձրորակ սերմացուով ապահովվածությունն է: Ասածս վերաբերում է, առանց բացառության, բոլոր տնտեսություններին: Իսկ այս տարվա բերքի համար աշնանացանն ամենուրեք կատարվել է գլխավորապես առաջին կարգի սերմացուով: Այսօրվա դրությամբ, կարելի է ասել, համարյա 80 տոկոսով փոխվել, բարելավվել է նաև կարտոֆիլի սերմացուն:

Երրորդ տարին է, ինչ հանրապետությունը լրիվին ապահովված է ցանովի կերաբույսերի՝ սեփական արտադրության, բարձրորակ սերմացուով: Այս բնագավառում ևս մինիստրության գործունեությունը, աշխատանքի ոճը նույնն էր՝ մշակել գիտականորեն ու տնտեսապես հիմնավորված առաջադրանքներ յուրաքանչյուր շրջանի, տնտեսության համար, դրանց կենսագործման նպատակով ստեղծել անհրաժեշտ նախապայմաններ և, հետևողականորեն հաղթահարելով ամեն մի դիմադրություն, հասնել խնդրի վերջնական լուծման:

Նույնը կարելի է ասել նաև տոհմաբուծության, գոմաշինարարության, ինտենսիվ այգեգործության և այլ կարևոր, պրոբլեմային հարցերի վերաբերյալ ընդունված որոշումների մասին, որոնք ամենօրյա հսկողության տակ են գտնվում:

Մինիստրության ղեկավարությունը ձգտում է խուսափել ընդհանուր, անդեմ որոշումներ ընդունելուց: Որքան էլ մի տնտեսության կամ շրջանի հողակլիմայական պայմանները նման լինեն իր հարևանի պայմաններին, այնուամենայնիվ, երկուսի զարգացման մասին մեկ որոշում ընդունելով գործին շատ չես նպաստի:

Մինիստրության ղեկավարությունը, կենտրոնական ապարատի ճկուն գործունեությունն ապահովելու համար, ձգտում է, որքան հնարավոր է, ընդարձակել իր տեղական օրգանների, ինչպես նաև կենտրոնական ենթակա կազմակերպությունների ֆունկցիաներն ու դերը, բարձրացնել նրանց պատասխանատվությունը:

Հանրահայտ է, թե յուրաքանչյուր սովետական կազմակերպության ձեռքում ինչպիսի ներգործուն լծակ է ֆինանսավորումը: Վերջերս մինիստրությունն ուսումնասիրեց սովխոզների ֆինանսավորման հարցը և գտավ, որ մինիստրության կենտրոնական ապարատին այդ ֆունկցիան վերապահելը սխալ է և որոշեց այն հանձնել շրջանային վարչություններին: Դա մեծապես կնպաստի գյուղվարչությունների դերի ու պատասխանատվության բարձրացմանը, բյուջեից տրվող միջոցների ճիշտ ու խելացի վերաբաշխմանը՝ մինիստրության հսկողության ներքո:

Մինիստրության աշխատանքի ճկունությանն զգալիորեն նպաստում է և այն, որ նրա վարչությունները, բաժինները, առանձին պաշտոնյաներ ունեն իրենց աշխատանքի միամսյա և եռամսյա պլանները, որոնց հիման վրա մշակվում են նաև կոլեգիայի միամսյա և եռամսյա պլանները: Ի դեպ, մինիստրության և նրան ենթակա վարչություններում վերջին երեք տարիներին, պատաս-

Մինիստրության աշխատանքի ոճի կատարելագործման ձևերից մեկն էլ կարելի է համարել կոլեգիայի արտագնաց նիստերի անցկացումը հանրապետության մի շարք շրջաններում: Վերջին երկու տարում կոլեգիայի նման նիստեր են կազմակերպվել շուրջ տասը շրջաններում: Ընդ որում, այդ բոլոր նիստերին ակտիվորեն մասնակցել են կուսակցական և սովետական ղեկավարները, շրջկոմի բյուրոյի անդամները, կոլտնտեսությունների և սովխոզների, արդյունաբերական ձեռնարկությունների ղեկավարները: Որպես կանոն, քննարկումներն անցել են գործարար մթնոլորտում և նպաստել շրջաններում առողջապահության գործի բարելավմանը, բարձրացրել տեղական իշխանությունների շահագրգռությունն առողջապահական մարմիններին գործնական օգնություն կազմակերպելու հարցում:

Ելնելով կուսակցության առաջադրած խնդիրներից, ձեռնարկվել են մի շարք միջոցներ՝ կադրային քաղաքականության բնագավառում եղած բացթողումները շտկելու համար: Մինիստրության ապարատը թարմացվել է ավելի քան 80 տոկոսով, աշխատանքի են ներգրավվել երիտասարդ, խոստումնալից մասնագետներ, որոնք անցել են գործնական առողջապահության աշխատանքի բովով: Կիսով չափ փոխվել, թարմացվել է հիվանդանոցների և պոլիկլինիկաների ղեկավար անձնակազմը:

Գլխավոր հարցերից մեկը ղեկավար կադրերի և առողջապահության կազմակերպիչների կայուն և որակյալ ռեզերվի ստեղծումն է և եղած կադրերի հետ սիստեմատիկ աշխատանքի կազմակերպումը: Այդ նպատակով Հայաստանում ստեղծվել են առողջապահության կազմակերպիչների երկամսյա դասընթացներ, որտեղ Միության 20-ից ավելի խոշորագույն մասնագետների օգնությամբ մեր հանրապետության շուրջ 100 բժիշկներ արդեն ստացել են առողջապահության կազմակերպչի որակավորում:

Առողջապահության ղեկավար կադրերի տեսական և գործնական գիտելիքների մշտական կատարելագործման նպատակով 1977 թվականին մեր մինիստրությունում ստեղծվեց «Առողջապահության համալսարան», որի ունկնդիրներն են մինիստրության ղեկավարները, վարչությունների և բաժինների պետերը, ինստիտուտների դիրեկտորները, ռեկտորները, պրոռեկտորները, հանրապետական բուժհիմնարկությունների ղեկավարները:

Կադրերի որակավորումը բարձրացնելու ձևերից մեկը կարելի է համարել ամենամյա ամփոփիչ գործնական կոնֆերանսների անցկացումը, որտեղ գլխավոր բժիշկների, ինստիտուտների դիրեկտորների, ռեկտորների, ամբիոնների վարիչների և առողջապահության մյուս կազմակերպիչների առջև տվյալ տարվա աշխատանքների վերլուծական զեկուցումներով հանդես են գալիս մինիստրության բոլոր վարչությունների պետերը: 1977 թվականին առաջին անգամ անցկացված այդ միջոցառումը լայն արձագանք գտավ առողջապահության բնագավառի աշխատողների շրջանում և արժանացավ նրանց ջերմ հավանությանը: Այս բոլորի հետ մեկտեղ պետք է նշել, որ կադրային քաղաքականության իրագործման բազմաբովանդակ բնույթը մեզնից պահանջում է է՛լ ավելի կատարելագործել աշխատանքի ձևերն ու մեթոդները, որպեսզի հնարավոր լինի առավել հետևողականորեն պայքարել առողջապահության մարմինների աշխատանքում տեղ գտած թերությունների և բացթողումների վերացման համար:

## ՍՈՎԵՏՆԵՐԻ ԳՈՐԾՈՒՆԵՈՒԹՅԱՆ ԷԱԿԱՆ ՀԱՏԿԱՆԻՇԸ

**(Ժողովրդական դեպուտատների Սովետականի շրջսովետի գործկոմի նախագահ Ռ. Ա. ՎԱՐԴԱՆՅԱՆԻ ելույթից)**

Սոցիալիստական դեմոկրատիայի սիստեմում կուսակցությունը կարևորագույն տեղ է հատկացնում ժողովրդական դեպուտատների սովետներին: Իրենց



գործունեությամբ ընդգրկելով քաղաքական-տնտեսական ու կուլտուրական կյանքի զանազան կողմերը, սովետները հանդես են գալիս որպես հանրապետության բոլոր սոցիալական խավերի միասնությունը մարմնավորող առավել ներկայացուցչական մարմիններ: Նրանք իրենց մեջ ավելի ու ավելի են զուգորդում պետական հասարակական կազմակերպության գծերը: Դեռևս 1918 թ. մարտին, հանդես գալով կուսակցության VII համագումարում, Համառուսաստանյան Կենտգործկոմի նախագահ Յ. Մ. Սվերդլովն ասել է. «Մեր կուսակցությունն իր ամբողջ հոգին դրել է սովետների մեջ, սովետների միջոցով և սովետներում է նա տարել իր գլխավոր աշխատանքը»:

Եվ այսօր, երբ կուսակցության VII համագումարից անցել է վաթսուն տարի, կոմունիստական կուսակցության վարած լենինյան քաղաքականության շնորհիվ նկատելիորեն ուժեղացել է իշխանության ներկայացուցչական մարմինների ազդեցությունը հասարակական կյանքի բոլոր կողմերի վրա, ընդլայնվել ու հարստացել է նրանց գործունեության բովանդակությունը, ամրապնդվել են կապերը մասսաների հետ, ավելի բազմակողմանի է դարձել դեպուտատների աշխատանքը: Եթե հանրագումարի բերենք այն, ինչ արդեն արվել է, կարելի է ամենայն որոշակիությամբ ասել՝ կուսակցության հոգատարությունը սովետների նկատմամբ, ընդունված որոշումների իրագործումը հնարավորություն ընձեռեցին պետական իշխանության մարմինների գործունեությունը բարձրացնել որակապես նոր աստիճանի:

Եվրոպայի կոմունիստական ու բանվորական կուսակցությունների Բեռլինի կոնֆերանսում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ Լ. Ի. Բրեժնևի ունեցած ելույթում նշվում է. «Մեզ մոտ ավելի քան 2 միլիոն աշխատավորներ պետական իշխանության կրողներ են, ընտրվում են սովետներում: Բայց դա բոլորը չէ, գրեթե 30 միլիոն սովետական քաղաքացիներ ներկայացնում են սովետների ակտիվը, որոնք կամովին ու անշահախնդիր օգնում են պետական կառավարման մեծ ու բարդ գործին»:

Եվ իրոք, այսօր կուսակցության բոլոր գործերում, նրա հետ միասին ընթանում են աշխատավորների մասսայական կազմակերպությունները:

Հեղափոխության բոցերի մեջ ծնված լինելով որպես իշխանության համար ժողովրդի պայքարի օրգան, սովետներն այժմ դարձել են միլիոնների հասարակական գործունեության դպրոց: Աշխատավոր մարդու նկատմամբ հոգատարությունը դարձել է տեղական սովետների պարտքն ու պարտականությունը:

Օգտագործելով սովետների աշխատանքի լավ ավանդույթները, դրանք հարստացնելով կոմունիստական նոր ձևերով ու մեթոդներով, սովետները կոչված են աշխատավոր մասսաներին ակտիվորեն ներգրավելու արտադրության, հասարակության բոլոր գործերի կառավարմանը: Տեղական սովետների ամբողջ գործունեությունն իրականացվում է բնակչության ամենալայն խավերի հետ անմիջական կենդանի շփման միջոցով:

Նորաստեղծ Սովետական շրջանն իր սոցիալ-տնտեսական զարգացման ընթացքով, հեռանկարային աճով դարձել է մայրաքաղաքի խոշոր շրջաններից մեկը: Իր աշխարհագրական դիրքով միավորելով չորս խոշոր թաղամասեր՝ Նոր Նորքի զանգվածները, հինավուրց Քանաքեռն ու նորաստեղծ Ավանը, շրջանն իր մեջ ընդգրկել է ավելի քան 210 հազար բնակիչ, մեկ միլիոն քմ պետական բնակելի ֆոնդով:

Ազգաբնակչության, դրա հետ միասին քաղաքաշինության զարգացման բուռն տեմպերը հրամայաբար պահանջում են արմատապես վերակառուցել մեր տնտեսության բոլոր բնագավառների գործունեությունը: Երևան քաղաքի առաջավոր շատ ձեռնարկությունների հետ միասին մեծ Հոկտեմբերի 60-ամյակի պատվին լրացուցիչ նոր պարտավորություններ ստանձնեցին նաև Սովետական շրջանի ձեռնարկությունները և ողջ ազգաբնակչությունը: Միայն 1977 թվականին շրջանում շահագործման հանձնվեց ավելի քան 175 հազար քմ բնակելի տարածություն, կամ նոր ու հարմարավետ բնակարաններ ստացավ մոտ 3.000 ընտանիք:

*Մեծ ու բարդ են քաղաքաշինության խնդիրները: Նոր շրջան կառուցելով՝ մենք գիտակցում ենք, որ սոցիալիստական քաղաք չի նշանակում միայն զարգացած արդյունաբերություն, շինարարություն կամ ճարտարապետություն: Սոցիալիստական քաղաքը միաժամանակ ենթադրում է գիտակցության և ազգաբնակչության ընդհանուր կուլտուրայի բարձր մակարդակ:*

*Կենսագործելով ՍՄԿԿ XXV համագումարի որոշումները, շրջանային սովետը և նրա գործադիր կոմիտեն, կազմակերպչական-մասսայական աշխատանքը նպատակամղել են շրջանի սոցիալ-կուլտուրական և տնտեսական շինարարության խնդիրների լուծմանը, բնակչության սպասարկման ոլորտի մակարդակի բարձրացմանը և սոցիալիստական օրինականության ապահովմանը: Շրջանային սովետի դեպուտատները, «ՍՍՀՄ-ում աշխատավորների դեպուտատների սովետների ստատուսի մասին» օրենքի պահանջներին համապատասխան, ակտիվորեն իրականացնում են իրենց լիազորությունները, հաճախ հանդիպումներ են ունենում ընտրողների հետ, նրանց հաշիվ տալիս սովետի ու իրենց աշխատանքի մասին: Տեղական սովետների ընտրություններից հետո շրջսովետի դեպուտատների 86,1 տոկոսը կամ 250 դեպուտատներից 238-ը մի քանի անգամ հաշվետվություններով հանդես են եկել ընտրողների առջև: Բացի ընտրական օկրուգներում կատարվող աշխատանքից՝ դեպուտատներն ըստ գրաֆիկի ընտրողների ամենօրյա ընդունելություն են կատարում շրջսովետի գործկոմում, լսում և համապատասխան օրգանների, շրջսովետի գործկոմի բաժինների և վարչությունների միջոցով լուծում նրանց հուզող հարցերը:*

*Տեղական սովետի հաջողությունների գրավականն այն է, թե նա ինչ չափով է կարողանում ժամանակին ընթացք տալ և կոորդինացնել ներքին օղակների գործունեությունը՝ կուսակցության ու կառավարության կանխագծումներն իրականացնելու համար:*

*Աշխատանքի պլանավորման որակական նոր ձև է հեռանկարային պլանների կազմումը, որը հնարավորություն է ընձեռում կանխատեսելու ապագայում կատարելիք գործերի տարրերը: Այդ պլանի իրագործումը նպաստում է տնտեսական ու կուլտուրական շինարարության արմատական հարցերի ճիշտ լուծմանը:*

*Սոցիալ-տնտեսական զարգացման կոմպլեքսային հեռանկարային պլանները կազմելիս պետք է հաշվի առնել տեղական ռեսուրսների ու հնարավորությունների չափը:*

*Սովետականի շրջսովետի գործադիր կոմիտեի 1976—1980 թթ. հեռանկարային պլանը ներառում է հիմնականում մի քանի ուղղություններ. շրջանի տնտեսական զարգացման հեռանկարները՝ արտադրության արդյունավետության բարձրացման առումով. ազգաբնակչության առևտրի, կենցաղային ու բժշկական սպասարկման, տրանսպորտի ու կապի միջոցների աստիճանական զարգացման ապահովումը, շրջանի բարեկարգման, կանաչապատման, հանգստի, կուլտուրական սպասարկման օբյեկտների ստեղծման և այլ հարցեր:*

*Կուսակցության XXV համագումարի, ՍՄԿԿ Կենտկոմի հոկտեմբերյան (1976 թ.) պլենումի առաջադրած խնդիրները պահանջում են իշխանության մարմինների աշխատանքի ոճի ու մեթոդների հետագա կատարելագործում այն հաշվով, որ նրանք ավելի լրիվ իրականացնեն օրենսդրությամբ նախատեսված ֆունկցիաները, ավելի մեծ չափով ցուցաբերեն նախաձեռնություն ու օպերատիվություն:*

*Հանդես գալով որպես ղեկավար ուժ, ուղղություն տալով և կոորդինացնելով բոլոր պետական մարմինների ու հասարակական կազմակերպությունների գործողությունները, կուսակցությունը ձգտում է հասնել այն բանին, որպեսզի նրանք առավելագույն չափով օգտագործեն իրենց իրավունքներն ու պարտականությունները: Աշխատանքի կազմակերպման նման պրակտիկան լայնորեն կիրառվեց մեր հանրապետությունում ՀԿԿ Կենտկոմի հունվարյան պլենումից հետո:*

*Տեղական սովետների աշխատանքի արդյունավետությունը շատ դեպքերում բնորոշվում է նրանով, թե տվյալ սովետը ինչ չափով է կարողանում իրականացնել ընտրողների առաջադրած պատվիրանները կամ նստաշրջաններում դեպուտատների հարցապնդումները: Ընտրողների պատվիրանների և դեպուտատների հարցապնդումների ժամանակ առաջ քաշված հարցերը հիմնականում լուծվում են համապատասխան դեպուտատական հանձնաժողովների կողմից, նախապես մշակված, տվյալ հարցի լուծման աղբյուրների ու հնարավորությունների պարզաբանման միջոցով, գործադիր կոմիտեի քննարկմանը ներկայացված նախագծի վերջնական հաստատումից հետո: Նման հարցերի լուծման ժամանակ ցուցաբերած ձևական մոտեցումը, ավելորդ հապճեպությունը հարվածում է տեղական սովետի մարտունակությանը, նսեմացնում նրա հեղինակությունը աշխատավորության լայն մասսաների շրջանում:*

*Մեկ տարի առաջ Նոր Նորքի բնակելի զանգվածի 5-րդ միկրոշրջանի բնակիչները հանդես եկան «Միկրոշրջանը դարձնել օրինակելի թաղամաս» նախաձեռնությամբ: Նախաձեռնությունն արժանացավ կուսակցության Երևանի քաղաքային կոմիտեի բյուրոյի հավանությանը: Այն, իրոք, դարձավ ամբողջ միկրոշրջանի ողջ ազգաբնակչության սեփականությունը: Սա այն վառ օրինակներից մեկն է, որը ցույց է տալիս, թե ինչպես կարելի է օգտագործել ազգաբնակչության ուժերը՝ թաղամասը օրինակելի կարգ ու կանոնի, բարեկարգ ու բարետես վայր դարձնելու համար: Անցել է ընդամենը մեկ տարի, բայց 5-րդ միկրոշրջանում, իրենց իսկ բնակիչների նախաձեռնությամբ, կատարվել է հսկայական աշխատանք՝ թե՛ բարեկարգման, թե՛ բնակելի շենքերի ճարտարապետական տեսքի վերականգնման ասպարեզում:*

*Հասարակայնության ու միլիցիայի հենակետի և բնակարանային շահագործման գրասենյակի միջոցով հսկողություն է սահմանվում առևտրի ու կենցաղային օբյեկտների աշխատանքների վրա, վերջիններս իրենց հերթին միջոցներ են ձեռնարկում ազգաբնակչության սպասարկման կուլտուրան ամուր հիմքերի վրա դնելու համար:*

# ԳԻՏԱԿԱՆՈՐԵՆ ԼՈՒԾԵՆՔ ՍՈՑԻԱԼ-ՏՆՏԵՍԱԿԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՀԱՐՑԵՐԸ

**(Արզնու տեխնիկական ճշգրիտ քարերի գործարանի դիրեկտոր Ս. Մ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆԻ ելույթից)**

*Սոցիալական հարցերի լուծումը պայմանավորված է տնտեսական առաջընթացով, իսկ տնտեսական զարգացումը, իր հերթին, շատ բանով որոշվում է սոցիալական խնդիրների լուծմամբ: Հետևաբար, սոցիալ-տնտեսական խնդիրները փոխադարձորեն կապված են միմյանց հետ և դրանք պետք է իրականացվեն միասնական պլանով:*

*Երկար ժամանակահատվածի համար սոցիալ-տնտեսական զարգացման կոմպլեքսային պլանավորումն ու իրականացումը հնարավոր դարձան, երբ արդյունաբերական ձեռնարկությունները անցան պլանավորման նոր սիստեմին, որով բարձրացվեց աշխատավորական կոլեկտիվների ինքնուրույնությունը արտադրական, սոցիալ-տնտեսական խնդիրների լուծման բնագավառում, երբ պլանավորման քանակական ցուցանիշները փոխարինվեցին որակական ցուցանիշներով:*

*Կոլեկտիվի սոցիալ-տնտեսական զարգացման կոմպլեքսային պլանների կազմման նպատակով մեզ մոտ ստեղծվել է մշտական գործող հանձնաժողով, որի կազմում ընդգրկված են գլխավոր մասնագետները, հմուտ տնտեսագետներ և առաջավոր բանվորներ:*

*Սոցիալական պլանավորման կարևոր փուլերից մեկը տեղեկությունների հավաքման ու մշակման պրոցեսն է, որով պայմանավորված են զարգացման առաջնահերթ խնդիրների բացահայտումը, համապատասխան միջոցառումների մշակման և իրականացման արդյունավետությունը:*

Այս փուլում հանձնաժողովը տեղեկություններ է հավաքում ոչ միայն ձեռնարկության շրջանակներում, այլև կոլեկտիվից դուրս գտնվող աղբյուրներից՝ աշխատավորության և նրանց ընտանիքների անդամների նյութական ու այլ պահանջմունքների բավարարման միջոցառումների մշակման նպատակով: Որպես տեղեկությունների աղբյուր օգտագործվում են նաև հասարակական կազմակերպությունների տվյալները, բանվոր ծառայողների նամակները, առաջարկությունները, դիմումները:

Յուրաքանչյուր աշխատավորական կոլեկտիվ հանդիսանում է տվյալ վայրի, քաղաքի, շրջանի մի օղակը: Տեխնիկական ճշգրիտ քարերի գործարանը, օրինակ, Նոր-Հաճընի հիմնական արդյունաբերական ձեռնարկությունն է և նրա զարգացմամբ է էապես պայմանավորված ամբողջ ավանի զարգացումը: Ուստի հանձնաժողովը կոլեկտիվի սոցիալական հարցերի լուծումը համապատասխանեցնում է Նոր-Հաճընի մասշտաբով լուծվելիք սոցիալական միջոցառումների հետ՝ ստեղծելով սոցիալական զարգացման մի միասնական պլան:

Պլանավորման նախապատրաստական աշխատանքների ժամանակ հատկապես ուշադրություն է նվիրվում միջոցառումների տնտեսագիտական հիմնավորմանը և ֆինանսական ապահովմանը, որովհետև առանց համապատասխան ֆինանսական աղբյուրների հնարավոր չէ ոչ միայն նախատեսված միջոցառումների իրականացումը, այլև կասկածի տակ է առնվում սոցիալական պլանավորման կենսունակության գաղափարն առհասարակ:

Տասներորդ հնգամյակի սոցիալական ու տնտեսական զարգացման հիմնական խնդիրների իրականացման համար, նյութական և ֆինանսական ռեսուրսների առկայության պայմաններում, վճռական դերը պատկանում է արտադրության արդյունավետության և արտադրանքի որակի բարձրացմանը, որը պետք է ուղեկցվի աշխատանքի ճիշտ կազմակերպմամբ, տնտեսական կառավարման հետագա կատարելագործմամբ, աշխատավորական կոլեկտիվի սոցիալական կառուցվածքի հետագա լավացմամբ: Նշված խնդիրների իրականացման ուղղությունները տարբեր կոլեկտիվներում տարբեր են, դրանք պայմանավորված են տվյալ ձեռնարկության արտադրության առանձնահատկություններով, կոլեկտիվի հնարավորություններով:

Մեր կոլեկտիվը տասներորդ հնգամյակի առաջադրանքները կատարելու համար մշակել է մի շարք հիմնական ուղղություններ, որոնք և դարձել են նրա արտադրական ու սոցիալ-տնտեսական ցուցանիշների հետագա լավացման աշխատանքային ծրագիր: Տարբեր բնույթ ունեն դրանք՝ տեխնիկական, արտադրական-կազմակերպչական, ֆինանսական, սոցիալական: Վերջինս ներառում է այնպիսի բաղադրատարրեր, ինչպիսիք են կոլեկտիվի աշխատանքային պայմանների լավացումը, աշխատանքի կազմակերպման ու կառավարման կատարելագործումը, նյութական և բարոյական խրախուսումը, բնակարանային և կենցաղային պայմանների բարելավումը, աշխատավորության սոցիալական ակտիվության զարգացումը:

Նշված խնդիրների լուծման գործում, ողջ կոլեկտիվին ակտիվորեն ընդգրկելու առումով, չափազանց կարևոր նշանակություն ունի սոցիալիստական մրցության ծավալումը և նրա արդյունավետ կազմակերպումը:

Ինչո՞վ է պայմանավորված տնտեսական և սոցիալական զարգացման մեր ծրագիրը: Մշակելով այն, մենք առաջնորդվել ենք հնգամյակում կոլեկտիվի առջև ծառացած խնդիրներով: Հնգամյակում նախատեսված է արտադրանքն ավելացնել երկու անգամ, արտադրողականությունը բարձրացնել 127 տոկոսով, մոտ 3 անգամ կաճեն օգուտները:

Բանավանի բնակչությունն այդ ժամանակամիջոցում կաճի 1,5 անգամ, իսկ դա իր հերթին բազմաթիվ նոր սոցիալական հարցեր է առաջադրում: Բազմազան այդ խնդիրների մեջ մենք, ինչպես հարկն է, կարևորում ենք կոլեկտիվի սոցիալական զարգացման հարցը:

Մշտական գործող հանձնաժողովի նախաձեռնությամբ բանավանում կատարվեց մարդահամար: Ավանի սոցիալ-դեմոգրաֆիական կառուցվածքի վե-



րաբերյալ ստույգ տեղեկությունները հնարավորություն տվեցին մշակել կոլեկտիվի սոցիալական կառուցվածքի պլանավորված փոփոխման հիմնական միջոցառումները:

Մեզ հայտնի դարձավ, թե մինչև 1980 թ. որքան բանվորական տեղ պետք է պատրաստվի՝ աշխատանքով ապահովելու համար 1957—1963 թվականներին, ինչպես նաև հաջորդ մի քանի տարիներին ծնված երեխաներին:

Մոտավոր հաշվարկները ցույց են տալիս, որ առաջիկա 7—8 տարում անհրաժեշտ կլինի ստեղծել նոր արտադրական կարողություններ, աշխատանքով ապահովելու համար ավելի քան 2.000 մարդու: Այս հարցը, որպես առաջնահերթ խնդիր, մտցված է գործարանի սոցիալ-տնտեսական զարգացման հեռանկարային պլանների մեջ:

Եթե գնահատելու լինենք սոցիալ-տնտեսական միջոցառումների իրականացման շնորհիվ կոլեկտիվի տնտեսական առաջընթացը, ապա կարելի է ասել, որ վերջին յոթ տարում մեզ մոտ, առանց կապիտալ ներդրումների, արտադրանքի միջին տարեկան աճը հասցվել է ավելի քան 14 տոկոսի, իսկ 1977 թվականին այն կազմեց 22 տոկոս: Ներկայումս մեկ քառակուսի մետր արտադրական տարածությունից 710 ռուբլով ավելի արտադրանք է ստացվում, իսկ հիմնական ֆոնդերի ֆոնդահատուցումն ավելացել է 1,5 անգամ:

Բանվորական ավանի գոյության երկու տասնամյակների ընթացքում կառուցվել են ավելի քան 70 հազար ք. մ. բնակելի տարածությամբ ժամանակակից շենքեր: Ավանում գործում են երեք միջնակարգ դպրոց, երաժշտական դպրոց, չորս մանկապարտեզ, կուլտուրայի պալատ, հիվանդանոց, պոլիկլինիկա, կենցաղսպասարկման կետեր, ֆուտբոլի մարզադաշտ, լողավազան և այլն: Ձեռնարկությունն իր միջոցներից տարեկան միջին հաշվով 700—800 հազար ռուբլի տրամադրում է բանավանի բարեկարգման, կանաչապատման, ասֆալտապատման, դպրոցների, մանկապարտեզների, խանութների նորոգման և շինարարական այլ աշխատանքների կատարմանը: Այս բոլորը կայունացրեց բանավանի բնակչությունը, զգալիորեն նվազեց բանվորական ուժի հոսունությունը, որը մենք դիտում ենք որպես սոցիալ-տնտեսական միջոցառումների իրականացման նշանակալի արդյունք:

Այս տարի կավարտվի Սևանի ափին բանվորների համար կառուցվող հանգստավայրը, շահագործման կհանձնվի 450 տեղանոց ճաշարանը, կսկսվի մի այլ ճաշարանի կառուցումը:

Մոտակա հինգ տարում կկառուցվեն 40 հազար ք. մ. բնակտարածությամբ շենքեր, երկու մանկապարտեզ՝ 560 երեխաների համար:

Լայն կիրառություն գտնող սոցիալ-տնտեսական զարգացման կոմպլեքսային պլանավորման սիստեմը, մեր կարծիքով, զերծ չէ թերություններից: Կատարելագործման կարիք ունի, մասնավորապես, ցուցանիշների այն համակարգը, որով բնորոշվում է արտադրական կոլեկտիվների սոցիալական զարգացման մակարդակը: Ոչ բոլոր դեպքերում է, որ կոլեկտիվների սոցիալական զարգացման պլաններով նախատեսված միջոցառումները բխում են նյութական և ֆինանսական ռեալ հնարավորություններից:

Գիտագործնական այս կոնֆերանսը, կուտակված փորձի վերաբերյալ մտքերի այսպիսի լայն փոխանակությունը, անշուշտ, կնպաստի մեր աշխատանքի ոճի կատարելագործմանը, նրա որակի բարձրացմանը:

## ԿՈՄՊԼԵՔՍԱՅԻՆ ՄՈՏԵՑՄԱՆ ՇՆՈՐՀԻՎ

**(Երևանի էլեկտրալամպերի գործարանի կուսկոմիտեի քարտուղար Վ. Հ. ԴԱՇՅԱՆԻ ելույթից)**

Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանակիր «Հայէլեկտրալույս» արտադրական միավորման գլխավորող՝ Երևանի էլեկտրալամպերի գործարանի կոլեկտիվը պետական պլանների ու ստանձնած սոցիալիստական պարտավո-

րությունների ժամկետից շուտ կատարման, արտադրության արդյունավետության ու թողարկվող արտադրանքի որակի բարձրացման գործում զգալի հաջողությունների է հասել ինչպես նախորդ հնգամյակում, այնպես էլ տասներորդ հնգամյակի անցած ժամանակաշրջանում: 25 եռամսյակ անընդմեջ գործարանի կոլեկտիվը քայլում է ՍՍՀՄ էլեկտրատեխնիկական արդյունաբերության մինիստրության սոցիալիստական մրցության հաղթող կոլեկտիվների շարքում, 4 տարի արժանանում ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշին:

Ինչո՞վ են պայմանավորված նման կայուն հաջողությունները: Առաջին հերթին նրանով, որ գործարանում ստեղծվել է համախմբված ու նախաձեռնող կոլեկտիվ, որն իր 870 հոգուց բաղկացած կուսկազմակերպության ղեկավարությամբ հաջողությամբ է իրագործում կուսակցության կանխագծումներն ու առաջադրած խնդիրները, արժանի ավանդ ներդնում երկրի լուսատեխնիկական ու էլեկտրավակուումային արդյունաբերության զարգացման գործում:

Նման կոլեկտիվի ստեղծման, կազմակերպման կարևորագույն պայմաններից մեկը գործարանի կուսակցական կոմիտեն ու դիրեկցիան համարում են տնտեսական ու գաղափարաքաղաքական խնդիրների միասնության ու դրանց լուծման նկատմամբ կոմպլեքսային մոտեցման վերաբերյալ լենինյան ցուցումի հետևողական իրագործումը:

ՍՄԿԿ XXV համագումարում Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևը կուսակցական կազմակերպությունների գործունեության արդյունավետության կարևոր պայմանը համարեց կոմպլեքսային մոտեցումը դաստիարակության ամբողջ գործի դրվածքի նկատմամբ, այսինքն՝ գաղափարաքաղաքական, աշխատանքային և բարոյական դաստիարակության սերտ միասնությունը:

Առաջնորդվելով ՍՄԿԿ XXV համագումարի որոշումներով՝ կուսկոմիտեն, տնտեսական ղեկավարության հետ, ամենօրյա պլանավորված, հետևողական աշխատանք է տանում գիտատեխնիկական առաջընթացի արագացման համար, կուսկոմիտեի նիստերում, կուսակցական ժողովներում քննարկում այդ հարցերը, յուրաքանչյուր տարի հայտարարում նոր տեխնիկայի ներդրման ստուգատես-մրցույթ, հանդես գալիս նոր նախաձեռնություններով: Կազմակերպական-տեխնիկական միջոցառումները, որպես կանոն, հրատարակվում են գրքույկի ձևով, հասցվում արտադրական բոլոր օղակներին, ծառայություններին, կուսակցական ու հասարակական կազմակերպություններին: 1976 և 1977 թվականներին արտադրության մեջ ներդրվել են 300 կազմակերպական-տեխնիկական միջոցառումներ, գյուտեր ու ռացիոնալիզատորական առաջարկություններ: Դրանք կոլեկտիվին հնարավորություն են ընձեռել՝ յուրացնելու 44 նոր արտադրատեսակների արտադրության տեխնոլոգիան, տարեկան պայմանականորեն տնտեսելու 1 միլիոն 654 հազար ռուբլի, հարաբերականորեն կրճատելու 494 մարդու, բարելավելու և առավել հարմարավետ դարձնելու 241 մարդու աշխատանքային պայմանները, բարձրացնելու արտադրանքի որակը:

Կուսկոմիտեի մշտական ուշադրության կենտրոնում է թողարկվող արտադրանքի որակի բարձրացման խնդիրը: Կուսկոմիտեի, արտադրամասային կուսակցական կազմակերպությունների ժողովների ընդունած որոշումների հետևողական իրագործումը հնարավորություն է ընձեռել գործարանում ստեղծելու արտադրանքի որակի բարձրացման կառավարման ու կազմակերպման կուռ համակարգ: Ներդրվել և հաջողությամբ կիրառվում է արտադրանքի անթերի պատրաստման և առաջին ներկայացումից ՏՎԲ-ին հանձնման սարատովյան մեթոդը:

Որակի կառավարման լիովին կոմպլեքսային համակարգի, կազմակերպչական-տեխնիկական մի շարք միջոցառումների ներդրման շնորհիվ որակի պետական նշանով արտադրանքի ծավալը 1976 թվականի 63,5 տոկոսից 1977 թվականին հասել է 72 տոկոսի:



* * *

Գիտատեխնիկական առաջընթացի արագացումը հնարավորություն է ընձեռում ո՛չ միայն բարձրացնելու արտադրության արդյունավետությունը, բարելավելու ձեռնարկության տեխնիկատնտեսական ցուցանիշները: Այն միաժամանակ զգալիորեն բարդացնում է մարդու աշխատանքը: Հետևապես, կուսակցական կազմակերպություններից պահանջվում է օրըստօրե առավել մեծ ուշադրություն նվիրել ժամանակակից արտադրական կուլտուրայով, մասնագիտական հարուստ գիտելիքներով, ունակություններով ու փորձով, բարձր գաղափարայնությամբ ու գիտակցական բարձր կարգապահությամբ բանվորական կադրերի պատրաստմանը, նրանց համար նորմալ աշխատանքային ու կուլտուր-կենցաղային պայմանների ստեղծմանը: Ահա ինչու կուսկոմիտեն իր առաջնահերթ խնդիրն է համարում տնտեսական պրոբլեմի հետ զուգակցված, նրա հետ սերտորեն միաձուլված լուծել բարոյասոցիալական պրոբլեմը:

Գաղափարական-դաստիարակչական աշխատանքի բարձր մակարդակը, նրա արդյունավետությունը, գործնականությունը մեծապես պայմանավորված են ո՛չ միայն դրանց տնտեսական կայուն բազայի առկայությամբ, այլև մասսաների վրա գաղափարական ազդեցության բոլոր ձևերի, մեթոդների ու միջոցների առավել լիակատար կիրառմամբ:

Գաղափարաքաղաքական խնդիրների կոմպլեքսի բաղկացուցիչ բոլոր գործոնները ուշադրության կենտրոնում պահելը, ՀԿԿ Երևանի քաղաքային կոմիտեի և 26 կոմիսարների անվան շրջանային կոմիտեի օգնությունն ու ղեկավարությունը հնարավորություն են ընձեռել կոլեկտիվում ստեղծելու աշխատանքային, քաղաքական ու ստեղծագործական ակտիվության մթնոլորտ, որին մեծապես նպաստեցին մեծ Հոկտեմբերի պանծալի 60-ամյակի տոնակատարությունը, ՍՄԿԿ Կենտկոմի 1977 թվականի մայիսյան, դեկտեմբերյան պլենումներում Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ ընկ. Լ. Ի. Բրեժնևի զեկուցման դրույթներն ու եզրահանգումները, ՍՍՀՄ նոր Սահմանադրության նախագծի համաժողովրդական քննարկումն ու ընդունումը:

Մեր ժամանակակցի անձի ձևավորման, նրա հոգևոր աճի, գաղափարական համոզվածության, գիտակցական կարգապահության համար հատուկ դեր է հատկացվում քաղաքական ու տնտեսագիտական ուսուցման սիստեմին: Մեր գործարանում անընդհատ ընդլայնվում է կուսակցական, կոմերիտական, տնտեսագիտական և արհմիութենական ուսուցման ցանցը: Այժմ ընդհանուր հաշվով 2.000 լամպագործներ ընդգրկված են այդ ցանցում: Նրանց հետ պրոպագանդիստական, դասախոսական ու քաղինֆորմացիոն աշխատանք են տանում կոլեկտիվի 200 ղեկավար ու ինժեներատեխնիկական աշխատողներ:

Բայց կարևորն այստեղ միայն քանակական աճը չէ: Գլխավորն այն է, որ այսօր կուսակցական կոմիտեն իր ուշադրության կենտրոնում է պահում, ուսուցման որակական կողմը, արդյունավետությունը, բովանդակության խորացումը, նրա գաղափարական-դաստիարակչական մակարդակի բարձրացումը: Մեզ մոտ որոշակի աշխատանք է կատարվում քաղաքական-տնտեսագիտական ուսուցման կազմակերպմանը կոմպլեքսային ձևով մոտենալու համար՝ հաշվի առնելով աշխատավորության սոցիալական կառուցվածքի, հանրակրթական ու կուլտուրական մակարդակի փոփոխությունները:

# ՀՈԴՎԱԾՆԵՐ

## ՍՍՀՄ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ՏՆՏԵՍԱԿԱՆ ՀԱՄԱԳՈՐԾԱԿՑՈՒԹՅԱՆ ՀԻՄՆԱԿԱՆ ԳԾԵՐԸ

**Ա. Ա. ԱՌԱՔԵԼՅԱՆ**
ՀՍՍՀ ԳԱ ակադեմիկոս

ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ավելի քան հարյուր ազգերն ու ազգությունները միավորել են իրենց աշխատանքը, տնտեսական ու բնական ռեսուրսները և կամավոր հիմունքներով ստեղծել ազգային տնտեսությունների կոոպերացիա։ Սովետական ժողովուրդների ազգամիջյան կոոպերացիայի, տնտեսական համագործակցության և փոխօգնության հարցերը մշտապես եղել են մեր կուսակցության ուշադրության կենտրոնում։ Դրանք համակողմանի արծարծվեցին նաև ՍՄԿԿ XXV համագումարում, որի որոշումներում միութենական ու ավտոնոմ հանրապետությունների, ինչպես նաև մեր երկրի տնտեսական շրջանների համագործակցության ու փոխօգնության զարգացումը տասներորդ հնգամյակում և հեռանկարում համարվում են կոմունիզմի համար մղվող պայքարի վճռական տեղամասեր։ Համագումարի մշակած միջոցառումների հետևողական իրականացումը կապահովի բոլոր հանրապետությունների և շրջանների տնտեսական հզորության հետագա աճ։ Առավել կամրապնդվեն նրանց կապերը և ընդհանուր պետական խնդիրների լուծման գործում կմեծանա յուրաքանչյուր հանրապետության ու տնտեսական շրջանի ներդրումը։

***

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը մարդկությանն ազատեց շահագործումից ու ազգային ճնշումից, սկսվեց սոցիալիզմի կառուցումը։ Մեծ Հոկտեմբերի հաղթանակը ստեղծեց ժողովուրդների և ազգերի միջև նոր հարաբերությունների հաստատման քաղաքական նախադրյալներ, նմանապես և արտադրամիջոցների սոցիալիստական սեփականության տնտեսական բարգավաճման ռեալ նախապայմաններ։

Արտադրամիջոցների հանրայնացումը մեր երկրի ժողովուրդների միջև եղած հակասությունները վերացնելու հիմք ծառայեց, հակասություններ, որոնք անցյալում պայմանավորված էին արտադրամիջոցների մասնավոր սեփականությամբ։ Ազգամիջյան հարաբերությունները ևս համակերպվեցին գոյավորված սոցիալիստական արտադրահարաբերություններով։ «Եթե մասնավոր սեփականությունը և կապիտալն անխուսափելիորեն մարդկանց անջատում են միմյանցից, բորբոքում ազգային երկպառակությունը և ուժեղացնում ազգային ճնշումը, ապա կոլեկտիվ սեփականությունն ու աշխատանքը նույնքան անխուսափելիորեն մոտեցնում են մարդկանց, խարխլում են ազգային երկպառակությունը և ոչնչացնում են ազգային ճնշումը» (ՍՄԿԿ համագումարների, կոնֆերանսների և Կենտկոմի պլենումների բանաձևերում ու որոշումներում, I մաս, 1954, էջ 709)։

Արտադրամիջոցների սոցիալիստական սեփականությունը տնտեսական



ողջ սիստեմի հիմքն է։ Մեր երկրի Սահմանադրության մեջ շեշտված է, որ «ՍՍՀՄ տնտեսական սիստեմի հիմքն արտադրամիջոցների սոցիալիստական սեփականությունն է...»։ Այդ սեփականությունը տնտեսական բոլոր հարաբերությունները միավորում է մեկ ամբողջության մեջ և դրանով իսկ բնորոշում հասարակության հիմնական կառուցվածքը։

Ժողովուրդների, ազգերի հարաբերությունների արմատները պետք է փնտրել հասարակության տնտեսական կառուցվածքում։ Մարքսիզմ-լենինիզմը սովորեցնում է, որ հասարակական բոլոր հարաբերություններում որոշիչ դերը պատկանում է տնտեսական, արտադրական հարաբերություններին։ Ինչպես արտադրահարաբերություններն են, այնպես էլ կլինեն մարդկանց, ժողովուրդների հարաբերությունները։

Սոցիալիստական արտադրահարաբերությունների շնորհիվ ՍՍՀՄ ժողովուրդների տնտեսական համագործակցությունն աչքի է ընկնում մի շարք առանձնահատկություններով։ Մեր սոցիալիստական հասարակությունն իր նպատակներով և տնտեսական համագործակցության իրականացման մեթոդներով արմատապես տարբերվում է բուրժուական հասարակությունից։ Ի տարբերություն կապիտալիզմի, որտեղ տարբեր երկրների տնտեսական հարաբերությունները ենթարկված են հավելյալ արժեքի արտադրությանն ու շահույթի յուրացման նպատակին, սոցիալիզմի օրոք ժողովուրդների տնտեսական համագործակցության նպատակը ամենքի բարեկեցության բարձրացումն է և հասարակության անդամների բազմակողմանի զարգացումը։ Սովետական ժողովուրդների համագործակցության նպատակը բոլոր հանրապետություններում արտադրության ընդլայնման ու կատարելագործման, նրա արդյունավետության բարձրացման միջոցով երկրի բոլոր աշխատավորների նյութական ու կուլտուրական աճող պահանջմունքների առավել բավարարումն է։

Սովետական Միությունում արտադրամիջոցների սոցիալիստական սեփականության բազայի վրա ազգերի և ազգությունների միջև ձևավորվել են այնպիսի հարաբերություններ, որոնք բացառում են անտագոնիստական, հակադիր շահերը և դրանցից բխող ներհակ նպատակները։

Արտադրամիջոցների հանրային սեփականությունը միավորում է տարբեր խմբերի շահերը, ստեղծելով նրանց ներդաշնակության օբյեկտիվ հնարավորություն։ Հանրային սեփականության բազայի վրա բոլոր աշխատավորների և ազգերի մոտ հաստատվել են ընդհանուր շահեր, միասնական նպատակ։ Սոցիալիզմի օրոք հանրային շահերը նույնական են արտադրության օբյեկտիվ նպատակի հետ։ Սոցիալիզմն առաջինը արտադրությունն անմիջապես ենթարկեց սպառման։ Դա սոցիալիզմին ներհատուկ հատկանիշն է։

Հայտնի է, որ կապիտալիզմի օրոք, աշխատանքի հասարակական բաժանման շնորհիվ երևան է գալիս ազգային պարփակվածության վերացման, ժողովուրդների տնտեսական մերձեցման, նրանց տնտեսական կապերի և փոխադարձ կախվածության նկրտում։ Սակայն ժողովուրդների այս փոխկապվածությունը և տերիտորիաների տնտեսական միավորումը կատարվում են ոչ թե ժողովուրդների՝ որպես իրավահավասար միավորների, համագործակցության հետևանքով, այլ կապիտալիստական առավել զարգացած երկրների կողմից ավելի թույլ զարգացած (հետամնաց) երկրների ժողովուրդներին ճնշելու և շահագործելու միջոցով։ Սա ժողովուրդների միջև հարուցում է անվստահություն, թշնամանք, բախումներ։

Բուրժուական տնտեսագետները ճգնում են ապացուցել, որ իբր գիտատեխնիկական հեղափոխությունը հանգեցնում է փոխշահավետ համագործակցության հիման վրա տարբեր ժողովուրդների տնտեսական միավորման։ Սա իրականության նենգափոխում է։ Իմպերիալիստական պետությունները, օգտագործելով գիտության ու տեխնիկայի բնագավառում ունեցած իրենց մոնոպոլ դերը, խորացնում են առաջավոր ու հետամնաց երկրների միջև եղած անդունդը։ Քանի որ գիտատեխնիկական հեղափոխության նվաճումներն այստեղ ներմուծվում են, հետևաբար նրանք կախման մեջ են զարգացած երկրներից։ Դրա հետևանքով առաջ է եկել կախման նոր ձև՝ «տեխնոլոգիական գաղութատիրությունը», որը համարվում է ինդուստրիալ կապիտալիստական տերու-

թյունների կողմից հետամնաց երկրներին շահագործելու և իրենց ենթարկելու իրական գործոն։

Զարգացող երկրների հիմնական մասը միջոցների սուր պակաս ունի։ Այդ իսկ պատճառով կուտակման ոլորտում էական տեղ են գրավում արտաքին աղբյուրները։ 1973 թվականին «Երրորդ աշխարհի» երկրների արտաքին պարտքը կազմում էր 82 միլիարդ դոլար։ Ներկայումս զարգացող երկրներն իրենց պարտքերը մարելու վրա տարեկան ծախսում են 7 միլիարդ դոլար։

Զարգացող երկրներն արտաքին աղբյուրներից կապիտալ են վերցնում ոչ միայն փոխատվության, այլև ինվեստիցիայի (երկարատև ներդրման) եղանակով։ Եթե մի կողմ թողնենք այսպես կոչված պորտֆելային ինվեստիցիաները (որոնք ապահովում են տարբեր ատրիճանի օտարերկրյա պարտնյորների մասնակցությունը և ենթակա չեն վիճակագրական հաշվառման), ապա միայն ուղղակի ինվեստիցիաները 1975 թվականին հասան 70 միլիարդ դոլարի։ Միավորված ազգերի՝ առևտրի ու զարգացման կոնֆեդերացիայի քարտուղարության (ՅՈՒՆԿՏԱԴ) տվյալներով, ուղղակի ինվեստիցիաների համար եկամուտների արտահոսքը 1973 թվականին կազմեց 11,7 միլիարդ դոլար։ Ըստ այդ կազմակերպության կանխագուշակումների, զարգացող երկրներից կապիտալիստական երկրների ընդհանուր ինվեստիցիոն եկամուտները 1980 թվականին կհասնեն 24 միլիարդ դոլարի։

Խոշորագույն բազմազգ կորպորացիաները 1966—1970 թվականներին զարգացող երկրներից ստացել են 23 միլիարդ դոլար, այսինքն՝ 1,5 անգամ ավելի, քան նույն տարիներին կապիտալիստական երկրներն «օգնել» են նրանց։ Զարգացող երկրների էկոնոմիկան մասնավոր ինվեստիցիաների ճանապարհով ավելի քիչ միջոցներ է ստանում, քան կորցնում են այդ երկրներից եկամուտների ձևով։ Օտարերկրյա վալյուտայով խոշոր գումարի եկամուտների արտահոսքը թուլացնում է երիտասարդ ազգային պետությունների վալյուտաֆինանսական դիրքերը, նրանք զրկվում են տնտեսական հետամնացության հաղթահարման համար անհրաժեշտ ֆինանսական միջոցներից։

Սոցիալիզմին խորթ են հարկադրանքի ու ժողովուրդների սարկացման մեթոդները։ Սոցիալիզմի օրոք բացառված են ժողովուրդների մերձեցման ու միավորման պրոգրեսիվ տենդենցի և բուրժուական կարգերին հատուկ հարկադրական մեթոդների ու ձևերի միջև եղած հակասությունները։

Սոցիալիստական հասարակության մեջ լայնորեն դրսևորվում է ազգային տնտեսությունների մերձեցման ու միավորման օբյեկտիվ միտումը, որը բխում է արդի արտադրաուժերի բուն էությունից։ Սոցիալիզմն ապահովում է տվյալ միտումի լիակատար դրսևորումն այնպիսի ձևերով, որոնք համապատասխանում են ժողովուրդների բուն շահերին։ Իրականացել է Կ. Մարքսի այն կանխատեսումը, թե բանվոր դասակարգն անպայման կհասնի «արտադրության հանրային ձևերի ազգային և ինտերնացիոնալ ներդաշնակ կոորդինացման» (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 17, стр. 553):

Սովետական հանրապետությունների տնտեսությունների միավորումը ոչ թե մեխանիկական պարզ գումար է, այլ տնտեսական այնպիսի ամբողջություն, որտեղ միահյուսված են բոլոր հանրապետություններում կատարվող տնտեսական պրոցեսները։ Խոսքը սոցիալիստական ընդլայնված վերարտադրության միասնական պրոցեսի մասին է, որ կատարվում է ամբողջ երկրի մասշտաբով և պլանային կառավարման սիստեմով։ Ազգային տնտեսությունները միահյուսվել են Սովետական Միության ժողովրդատնտեսական համապարփակ կոմպլեքսում, որտեղ ավելի է կատարելագործվում ազգային մասնագիտացված տնտեսությունների կոոպերացումը։ Միութենական հանրապետությունների միջև հաստատված խոր ու ամուր տնտեսական կապերը մշտապես ընդլայնվում ու կատարելագործվում են։

ՍՍՀՄ-ում զարգացած սոցիալիզմի կառուցման կարևոր առանձնահատկություններից է այն, որ երկրի էկոնոմիկան վերածվել է միասնական ժողովրդատնտեսական կոմպլեքսի, որը կայուն հիմք է սովետական բոլոր ժողովուրդների բարեկամական հարաբերությունների զարգացման ու ամրապնդ-



ման համար։ «Ամբողջ երկրի սահմաններում ստեղծված միասնական տնտեսական օրգանիզմը,— ասված է ՍՄԿԿ XXV համագումարին Կենտկոմի տված հաշվետու զեկուցման մեջ,— ժողովուրդների բարեկամության ու համագործակցության ամուր նյութական հիմքն է»։ Այդ օբյեկտիվ հիմքի վրա ազգերի մերձեցման պրոցեսը դառնում է սովետական հասարակության զարգացման բնորոշ գիծը։

ՍՍՀՄ ժողովուրդների ապրելակերպի ինտերնացիոնալացման օբյեկտիվ պրոցեսը բուրժուական գաղափարախոսները ճգնում են ներկայացնել որպես ազգային յուրահատկության վերացում։ Իրականում ինտերնացիոնալացումը նշանակում է ոչ թե «համահարթում», այլ ժողովուրդների փոխադարձ հարստացում, նյութական ու կուլտուրական նվաճումների փոխանակում, բոլոր ազգությունների պրոգրեսիվ տենդենցների զարգացում և նեղ ազգային նախապաշարմունքների ու սահմանափակության հաղթահարում։ Սովետական բոլոր մարդկանց համար թանկ են սոցիալիստական ամեն մի ազգի և ազգության նվաճումները, ժողովուրդների բարեկամությունն ու ինտերնացիոնալիզմը դարձել են սովետական մարդկանց վարքի նորմ, սովետական ապրելակերպի բնորոշ հատկանիշ։ Մարդկանց գործի մղող հիմնական շարժառիթը ոչ թե նեղ էգոիզմն է, նեղ ազգային շահը, այլ համապետական, ազգամիջյան միջհանրապետական շահերը, փոխօգնության, իսկական ինտերնացիոնալիզմի վեհ գաղափարները։

Կապիտալիզմի պայմաններում հասարակական աշխատանքի տերիտորիալ բաժանումը կատարվում է տարերայնորեն և կարգավորվում է շուկայական մեթոդներով։ Մինչդեռ ՍՍՀՄ-ում սահմանված է հանրապետությունների ու շրջանների աշխատանքի բաժանման միանգամայն նոր տիպ։ Մասնագիտացումն ու կոոպերացումը կատարվում են պլանային հիմունքներով։

Բնական ու աշխատանքային ռեսուրսների ռացիոնալ օգտագործման նպատակով յուրաքանչյուր հանրապետություն սեփական արտադրությունը մասնագիտացրել է՝ հաշվի առնելով տնտեսական ու բնական պայմանները, պատմական տենդենցներն ու արտադրական ռեզերվները, ապրանքների արտահանման պահանջները և այլն։ Բոլոր հանրապետությունները մասնագիտացման հիման վրա հասել են իրենց ռեսուրսների լավագույն օգտագործման, կապիտալ ներդրումների և ընթացիկ ծախսերի տնտեսման։ Լայնորեն օգտագործվել են մասնագիտացման վիթխարի առավելություններն ու շահերը։ Լինելով ՍՍՀՄ-ի կազմում, յուրաքանչյուր հանրապետություն ձգտել է միասնական պլանով զարգացնել արտադրության առավել արդյունավետ ճյուղերը և բազմակողմանի կապեր հաստատել սովետական մյուս հանրապետությունների հետ։

Բոլոր հանրապետություններն ինդուստրիալ տեսակետից զարգացել են շնորհիվ արդյունաբերական այն ճյուղերի պլանաչափ ստեղծման, որոնց զարգացումը պայմանավորված է տնտեսական ու բնական նպաստավոր պայմաններով և յուրաքանչյուր հանրապետության, երկրի ժողովրդական տնտեսության ու կուլտուրայի առավել արագ վերելքի ապահովման անհրաժեշտությամբ։

Հանրահայտ է, որ կապիտալիզմին բնորոշ է տարբեր ժողովուրդների տնտեսական անհամաչափ զարգացումը։ Կապիտալի ջատագովները ճգնում են ժխտել այս փաստը։ Նրանք հաճախ վկայակոչում են գիտատեխնիկական հեղափոխությունը, որը, իբր, վերացնում է այդ անհամաչափությունը։ Սակայն «տեխնոլոգիական գաղութատիրություն» նշանակում է ո՛չ միայն տեխնիկապես ու տնտեսապես թույլ զարգացած ժողովուրդների կախվածություն իմպերիալիստական տերություններից, այլև տարբեր երկրների ու առանձին երկրի մեջ մտնող տնտեսական շրջանների անհամաչափ զարգացման խորացում։

Ի հակադրություն կապիտալիզմի, սոցիալիզմի պայմաններում տեղի է ունենում ժողովուրդների տնտեսական զարգացման մակարդակների համահարթում։ Վերջինս կատարվում է ոչ թե ցածր կամ միջին, այլ բարձր մակարդակի կողմնորոշմամբ։ Այս բնավ չի նշանակում, թե որոշ ժողովուրդների տնտեսական զարգացումը կարող է կասեցվել՝ մինչև մյուս ժողովուրդները բարձրացվեն նրանց մակարդակին։

Այս առումով ուսանելի է ՍՍՀՄ-ի փորձը: Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակը վերացրեց ազգային կեղեքումը և հաստատեց ՍՍՀՄ բոլոր ժողովուրդների քաղաքական ու իրավական հավասարությունը: Բայց այն ժամանակ (հեղափոխության հաղթանակից անմիջապես հետո) տնտեսական հավասարություն դեռ չկար: Սոցիալ-տնտեսական հետագա արմատական վերափոխումները, այն է՝ երկրի սոցիալիստական ինդուստրացումը, գյուղատնտեսության կոլեկտիվացումը, կուլտուրական հեղափոխությունը և ամբողջ ժողովրդական տնտեսության տեխնիկական վերակառուցումը հանգեցրին այն բանին, որ վերացան կենտրոնի և նախկինում հետամնաց ծայրամասերի միջև եղած հակասությունները, հավասարվեց սովետական բոլոր ժողովուրդների տնտեսական դրությունը: Այժմ բոլոր ազգային հանրապետություններում ստեղծվել են բարձր զարգացած բազմաճյուղ արդյունաբերություն և մեքենայացված հանրային խոշոր գյուղատնտեսություն, իսկ այդ բազայի վրա հիմնականում վերացվել է ազգերի միջև եղած նախկին տնտեսական անհավասարությունը: Քաղաքական և իրավական հավասարությունն ամրապնդվել է տնտեսական հավասարությամբ:

Բավական է նշել, որ 1926 թվականին, երբ մեր երկրի արդյունաբերությունն ընդհուպ մոտեցավ նախահեղափոխական (1913 թ.) մակարդակին, կենտրոնի և ծայրամասերի տնտեսությունները բնութագրվում էին 36-ը 1-ի հարաբերությամբ: Այժմ այդ խզումը հիմնականում վերացել է: Հավասարեցման պրոցեսը բնորոշվում է նաև նրանով, որ վերացել է ինդուստրիալ և ագրարային սկզբունքով հանրապետությունների բաժանումը: Բոլոր հանրապետությունները դարձել են ինդուստրիալ: Արտադրության ընդհանուր ծավալում արդյունաբերության բաժինն առաջ մեծ չէր, այժմ այն բոլոր հանրապետություններում գերակշռող է: Զգալիորեն աճել է «Ա» խումբը, այն բոլոր հանրապետություններում կազմում է արդյունաբերական արտադրանքի կեսից ավելին: Այժմ սովետական բոլոր հանրապետությունները գտնվում են մեքենայացված խոշոր արտադրության նույն փուլում:

Յուրաքանչյուր միութենական հանրապետություն ունի կոմպլեքսային զարգացած էկոնոմիկա՝ էլեկտրաէներգետիկ հզոր բազա, առաջավոր մեքենաշինություն, քիմիական, ժամանակակից տեխնիկայով հագեցած թեթև ու սննդի արդյունաբերություն:

Հանրապետության կոմպլեքսային զարգացումը ենթադրում է տնտեսության այնպիսի պլանաչափ առաջընթաց, որն ապահովում է արտադրական մասնագիտացված ճյուղերի ռացիոնալ զուգորդումը հարակից ճյուղերի ձեռնարկությունների և բոլոր տեսակների ենթակառուցվածքի հետ՝ տեղական պայմաններին համապատասխան և աշխատանքային ու բնական ռեսուրսների ըստ հնարավորին լիակատար օգտագործման նպատակով:

Տնտեսության կոմպլեքսային զարգացումը չի կարելի հասկանալ որպես արտադրության բոլոր տեսակների համատարած զարգացում յուրաքանչյուր հանրապետությունում: Կոմպլեքսայնությունն ինքնապարփակ (ավտարկիա) տնտեսություն չէ: Այն ենթադրում է հասարակական աշխատանքի տերիտորիալ բաժանում, հանրապետությունների արտադրական մասնագիտացում, նրանց բնական ու տնտեսական նպաստավոր պայմանների օգտագործում, դրա հիման վրա որոշակի արտադրատեսակների արտադրության առավելագույն զարգացում, որն ապահովի հասարակական աշխատանքի ըստ ամենայնի տնտեսում:

ՍՍՀՄ ժողովուրդների տնտեսական համագործակցության էությունը, նպատակն ու մեթոդները օբյեկտիվորեն պայմանավորված են սոցիալիզմի բնույթով: Սակայն այս չի նշանակում, թե դրանք կարող էին երևան գալ ինքնաբերաբար, ավտոմատիկորեն: Դրանց իսկական և լիակատար երևան գալու համար հարկավոր է նպատակասլաց, եռանդուն աշխատանք: Այստեղ հսկայական է ՍՄԿԿ-ի, սովետական պետության դերը: Հենվելով օբյեկտիվ օրինաչափությունների վրա, կոմունիստական կուսակցությունը և սովետական պետությունը մեր բազմազգ երկրի ժողովրդական տնտեսության զարգացումը տարան սոցիալիստական ուղիով:

ՍՍՀՄ ժողովուրդների տնտեսական համագործակցության բնագավառում



մեր կուսակցության կուտակած փորձը լայնորեն օգտագործվում է նաև սոցիալիստական երկրների միջև տնտեսական հարաբերությունների հաստատման ու զարգացման ասպարեզում: Մեր երկրի ազգային հանրապետությունների հարաբերությունները միջազգային սոցիալիստական արտադրահարաբերությունների նախատիպն են: Դրանք վառ օրինակ են պատմական հեռանկարում համաշխարհային միասնական սոցիալիստական տնտեսության ստեղծման համար:

Սովետական Միությունում ազգային հարաբերությունների հաջող զարգացումն ու կարգավորումը բացահայտում են իմպերիալիզմի գաղափարախոսների մարդատյաց ռասայական տեսությունների սնանկությունը և կապիտալիստական հարստահարման դեմ պայքարող բոլոր ժողովուրդներին ցույց են տալիս սոցիալիստական պայծառ ապագայի ուղին:

***

Ակնբախ են սովետական հանրապետությունների տնտեսական զարգացման հավասարեցման նպատակով կատարված վիթխարի աշխատանքի արդյունքները: Հանրագումարի բերելով այդ բնագավառում ձեռք բերված հասումները, ՍՄԿԿ XXV համագումարն առաջադրեց նոր, ավելի բարդ խնդիրներ, որոնք բխում են մեր հասարակության կենսական պահանջներից: Հանրապետությունների զարգացման մակարդակը և նրանց արտադրության ժամանակակից մասշտաբները հնարավորություն են ընձեռում առաջադրելու ու լուծելու նորանոր խնդիրներ: Դրանք իրենց մարմնավորումը գտան տասներորդ հնգամյակի հիմնական ուղղություններում:

Առաջնահերթ հարցերից է մեր բազմազգ հասարակության մեջ սոցիալական միատարրության ստեղծումը: Զարգացած սոցիալիստական հասարակության մեջ, երբ հիմնականում արդեն լուծվել է ազգային հանրապետությունների տնտեսական զարգացման մակարդակների հավասարեցման խնդիրը, մեր առջև ծառանում է արտադրաուժերի զարգացման մակարդակում և բնակչության կենսամակարդակում եղած տարբերությունների հետագա համահարթման խնդիրը:

Այս խնդրի լուծման գործում վճռորոշ նշանակություն ունի աշխատանքի արտադրողականության մակարդակի հավասարեցումը, մի բան, որն իր հերթին ենթադրում է տեխնիկական զինվածության, կրթության ու պրոֆեսիոնալ պատրաստության հավասարեցում: Այս պրոցեսներում ելակետային է համարվում բոլոր հանրապետությունների նյութատեխնիկական զինվածության հավասարեցումը (հաշվի առնելով արտադրության ճյուղային առանձնահատկությունն ու կառուցվածքը):

Տասներորդ հնգամյակը պրոգրեսիվ խոշոր քայլ է հանրապետությունների տնտեսական զարգացման հետագա հավասարեցման ճանապարհին: Մի ամբողջ շարք միջոցառումների և, առաջին հերթին, հանրապետությունների տեխնիկական զինվածության հավասարեցման միջոցառումների շնորհիվ, կիրականացվի աշխատանքի արտադրողականության մակարդակների հետագա մերձեցումը: Աշխատանքի արտադրողականության քիչ թե շատ միատեսակ մակարդակի հաստատումը հավասարեցնում է արտադրության աշխատողին ընկնող արտադրանքի թողարկումը և նրա եկամուտը: Այս կապակցությամբ մոտեցվում են բնակչության մեկ շնչին ընկնող եկամուտների չափերը: Սակայն այդ չի կարող ամբողջովին լուծել ողջ պրոբլեմը, որովհետև հանրապետությունների բնակչության դեմոգրաֆիական կառուցվածքը տարբեր է: 1970 թ. տվյալներով, Լատվիական ՍՍՀ-ում մեկ աշխատողի խնամքին, միջին հաշվով, ընկնում է համարյա մեկ մարդ, Տաջիկական ՍՍՀ-ում՝ գրեթե երկու մարդ: Դեմոգրաֆիական առանձնահատկությունները պայմանավորում են հանրապետության բնակչության մեկ շնչին ընկնող հասարակական արդյունքի, ազգային եկամտի և անձնական եկամուտների բաշխման էական տարբերության անխուսափելիությունը: Հետևաբար, մեկ շնչին ընկնող եկամուտների և սպառման հավասարեցումը բարդ պրոբլեմ է:

Այս պրոբլեմը քննարկելիս հարկ է հաշվի առնել այն գործոնները, որոնք

որոշ չափով մեղմացնում են դրությունը: Խոսքը մի շարք այնպիսի ապրանքների մասին է, որոնք բավարարում են ոչ թե անհատական, այլ ամբողջ ընտանիքի պահանջմունքները (հեռուստացույց, սառնարան, լվացքի մեքենա և այլն): Բացի դրանից, երեխաներով ծանրաբեռնված բազմանդամ ընտանիքներում շատ ապրանքներ ավելի ռացիոնալ ու լրիվ են օգտագործվում:

Տարբեր հանրապետությունների բնակչության ռեալ եկամուտների հավասարեցման վրա էական ազդեցություն է թողնում սպառման հասարակական ֆոնդերի աճը, որոնք 1975 թվականին բավարարում էին անձնական պահանջմունքների մոտ 30 տոկոսը: Այդ ֆոնդերն աճում են առաջանցիկ տեմպերով: Այդ տենդենցն իր վառ արտահայտությունը գտավ ընթացիկ հնգամյակում: Եթե բանվորների ու ծառայողների միջին աշխատավարձը 1976—1980 թվականներին ավելանալու է գրեթե 17 տոկոսով, ապա 30 տոկոսով կավելանան սպառման հասարակական ֆոնդերի հաշվին կատարվող բնակչության վճարումներն ու արտոնությունները: Այս հնարավորություն կընձեռի նկատելիորեն մոտեցնելու սպառման մեկ շնչին ընկնող մակարդակները:

Սակայն յուրաքանչյուր հանրապետությունում և ՍՍՀՄ-ում՝ ամբողջությամբ վերցրած, անձնական եկամուտների հիմնական աղբյուրը եղել և դեռ երկար ժամանակ կմնա ըստ աշխատանքի վճարումը: Այդ պատճառով բնակչության մեկ շնչին ընկնող եկամուտների միատեսակ մակարդակ կարող է սահմանվել կամ բնակչության դեմոգրաֆիական կառուցվածքում եղած էական տարբերությունները հաղթահարելու, կամ կոմունիզմի երկրորդ փուլին անցնելու դեպքում, երբ իշխող կդառնա «յուրաքանչյուրից՝ ըստ ունակության, յուրաքանչյուրին՝ ըստ պահանջի» սկզբունքը:

Տարբեր հանրապետություններում կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման համեմատ կփոքրանա անձնական եկամուտների մակարդակի վրա դեմոգրաֆիական գործոնի ազդեցությունը:

Անհրաժեշտ է նշել, որ «հավասարեցում» հասկացությունը չի կարելի ինքնաբավ դարձնել, քանի որ ռեգիոնալ տարբերություններ գոյություն ունեն բնական պայմանների (այսինքն՝ վառելիքահումքային, հողային, ջրային և այլ ռեսուրսների, ինչպես նաև կլիմայի) և տնտեսական պայմանների միջև (այսինքն՝ արտադրության կառուցվածքում ձեռք բերված արտադրաուժերի զարգացման մակարդակի հարցում): Մեծ նշանակություն ունեն հանրապետությունների ազգային ու պատմական առանձնահատկությունները: Պահանջմունքների տարբերությունները, որպես շրջանի (որտեղ կատարվում է աշխատանքային պրոցեսը), ինչպես նաև աշխատանքի ինտենսիվության ու բարդության աստիճանի յուրահատկության արդյունք, կարող են հասցվել միայն նվազագույնի, դրանք լիովին վերացնել անհնար է: Այդ առթիվ ուշադրության արժանի է Ֆ. Էնգելսի այն ցուցումը, որ «առանձին երկրների, մարզերի և նույնիսկ վայրերի միջև միշտ էլ գոյություն կունենա կենսապայմանների որոշ անհավասարություն, որը կարելի է հասցնել նվազագույնի, բայց երբեք չի հաջողվի լիովին վերացնել: Ալպերի բնակիչները միշտ այլ կենսապայմաններ կունենան, քան հարթավայրերի բնակիչները» (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 19, стр. 5—6):

Միութենական հանրապետությունների և շրջանների տնտեսական զարգացման մակարդակի հավասարեցումը չի նշանակում, թե դրանք անպայման պետք է բնակչության մեկ շնչի հաշվով արտադրեն նույն քանակությամբ նավթ, ածուխ, պողպատ, պղինձ, բամբակ և այլն: Սա կնշանակեր հրաժարվել աշխատանքի սոցիալիստական բաժանման առավելություններից:

Հանրապետությունների տնտեսական զարգացման մակարդակի հետագա հավասարեցման խնդրի հաջող լուծման համար առանձնապես առաջնակարգ նշանակություն ունի հասարակական արտադրության արդյունավետության բարձրացումը:

Բոլոր հանրապետությունների և տնտեսական շրջանների զարգացման արդի մակարդակը հնարավորություն է ընձեռում մեծ ավանդ ներդնելու տնտեսական զարգացման ընդհանուր միութենական ֆոնդում: Եթե առաջ հնարավորությունները սահմանափակ էին, ապա այժմ մեծ են և աճում են արագ



տեմպերով: Ինչպես հայտնի է, Սովետական Հայաստանն անցյալից ժառանգել է հետամնաց ու խիստ քայքայված տնտեսություն: Իսկ այժմ նա դարձել է բարձր զարգացած ինդուստրիալ հանրապետություն, որտեղ արտադրվում են էլեկտրոնային հաշվիչ մեքենաներ, գեներատորներ, նուրբ սարքեր և այլ բարդ մեքենաներ: Մետաղահատ հաստոցների արտադրությունը Հայկական ՍՍՀ-ում 1975 թվականին 7,8 անգամ ավելի մեծ էր, քան 1913 թ. ամբողջ ցարական Ռուսաստանում: Ընդ որում, ժամանակակից հաստոցների որակը, դրանց տեխնիկական պարամետրերը և հզորությունն անհամեմատ ավելի բարձր են, քան առաջ: Արդյունաբերական արտադրանքի ընդհանուր միութենական արտահանության մեջ կա նաև Հայաստանի բաժինը: Հանրապետությունն անմիջականորեն մասնակցում է 200 անուն իրերի արտադրությանը, որոնք Սովետական Միությունն արտահանում է արտասահմանյան 80 երկիր:

Հայկական ՍՍՀ-ն այժմ արտադրում է զգալիորեն ավելի շատ էլեկտրաէներգիա, քան ժամանակին ԳՈԷԼՌՈ-ի նշանավոր պլանով նախատեսված էր ամբողջ երկրի համար: Էլեկտրաէներգիայի ավելցուկը միասնական էներգասիստեմի միջոցով փոխանցվում է Անդրկովկասի եղբայրական հանրապետություններին:

Այս բոլոր նվաճումները հանրապետության աշխատավորների ստեղծագործական ջանքերի և եղբայրական ժողովուրդների, հատկապես ռուս մեծ ժողովրդի, փոխօգնության արդյունքն են: Տնտեսական խոշոր օբյեկտների, այդ թվում Արփա—Սևան թունելի (48,3 կիլոմետր երկարությամբ), ջերմային և ատոմային էլեկտրակայանների շինարարությունը սովետական ժողովուրդների անկեղծ բարեկամության ու եղբայրական փոխօգնության փայլուն դրսևորումն է: Կասկածից վեր է, որ Հայաստանն իր ուժերով ու ռեսուրսներով չէր կարողանա այդպիսի վիթխարի ու թանկարժեք կառույցներ ունենալ, իսկ ՍՍՀՄ-ի կազմում, հենվելով նրա օգնության վրա, հաջողությամբ կառուցում է թունել և էլեկտրակայաններ: Ընդ որում, հարկավոր է շեշտել, որ թունելի կառուցմանը հայերի հետ կողք-կողքի մասնակցում են երկրի 30 ազգերի ու ազգությունների ներկայացուցիչներ՝ ռուսներ, ուկրաինացիներ, բելոռուսներ, ադրբեջանցիներ, վրացիներ և այլն:

Ստանալով եղբայրական ժողովուրդների օգնությունը և ծավալելով ստեղծագործական գործունեություն, հայ ժողովուրդը դուրս է եկել տնտեսական զարգացման առաջավոր բնագիծ: Ակներև է Հայաստանի դերն ընդհանուր միութենական տնտեսական պոտենցիալի մեծացման ասպարեզում: Հանրապետության աշխատավորությունը ծանրակշիռ ավանդ է ներդնում մեր երկրում կոմունիզմի կառուցման գործում: Դրա վառ արտահայտություններից է Հայաստանի տեղը ընդհանուր միութենական արտադրության մեջ:

Հայկական ՍՍՀ-ն զբաղեցնում է Սովետական Միության տերիտորիայի 0,13 տոկոսը, իսկ բնակչությունը կազմում է ՍՍՀՄ բնակչության 1,1 տոկոսը: Բայց նրա տեսակարար կշիռն արդյունաբերական արտադրանքի 15 տեսակների գծով կազմում է ընդհանուր միութենական արտադրության 5-ից մինչև 35 տոկոսը: Դրանք են՝ պղնձարջասպը, մոլիբդենը, կալցիումի կարբիդը, քացախաթթուն, սինթետիկ կաուչուկը, շարժական էլեկտրակայանները, ուժային տրանսֆորմատորները, կենտրոնախույս պոմպերը, մետաղահատ հաստոցները և այլն: Հայաստանն զգալի տեսակարար կշիռ ունի նաև այնպիսի իրերի արտադրության բնագավառում, ինչպիսիք են ավտոմատացման տարբեր սարքերն ու միջոցները, էլեկտրոնային հաշվիչ մեքենաները, արհեստական ալմաստը և այլն: Բացի դրանից, հանրապետության աշխատավորությունն իր ուժերը ներդնում է նաև միութենական մի շարք կառույցների աշխատանքային ռեսուրսները համալրելու, խոպան հողերը յուրացնելու նպատակով և այլն:

Սովետական յուրաքանչյուր հանրապետություն եղբայրական ժողովուրդներից ստացած օգնությունը փոխհատուցում է այն ամենով, ինչ կարող է: Յուրաքանչյուր հանրապետություն, բարձրացնելով գիտության, տեխնիկայի և արտադրության արդյունավետությունը, կատարում է իր ինտերնացիոնալ պարտքը, հարաճուն տեմպերով հարստացնում ընդհանուր միութենական ֆոնդը:

# ՍՄԿԿ ԱՐՏԱՔԻՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅԱՆ ԻՆՏԵՐՆԱՑԻՈՆԱԼ ԲՆՈՒՅԹԸ

**Լ. Ա. ԲԱՅՐԱՄՅԱՆ**
Պատմական գիտությունների թեկնածու, դոցենտ

**ՍՄԿԿ** ԱՐՏԱՔԻՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ պայմանավորված է ներքին քաղաքականությամբ՝ ՍՍՀՄ-ում կոմունիզմի նյութատեխնիկական բազայի կառուցմամբ: Այն միաժամանակ օրգանապես կապված է միջազգային կոմունիստական և բանվորական շարժման հետ, որը հենվում է հասարակության զարգացման պատմական օրինաչափությունների և կոնկրետ պայմանների վրա:

ՍՄԿԿ արտաքին քաղաքականությունն իր էությամբ դասակարգային է ու կուսակցական: Այն ելնում է պրոլետարական ինտերնացիոնալիզմի և սոցիալական տարբեր կարգ ունեցող երկրների խաղաղ գոյակցության լենինյան սկզբունքներից, հաշվի է առնում օբյեկտիվ պայմանները՝ սոցիալական տարբեր ուժերի փոխհարաբերությունը և խարսխվում է կոմունիստական կուսակցությունների, միջազգային հեղափոխական շարժումների տեսության ու պրակտիկայի վրա:

ՍՄԿԿ-ն ինտերնացիոնալիզմը դիտում է որպես իր քաղաքականության ու գործունեության բաղկացուցիչ մասը, կոմունիստական կուսակցությունների գաղափարաքաղաքական հարստացման գործոն: Ինտերնացիոնալիզմի սկզբունքը ենթադրում է նաև իմպերիալիզմի դեմ պայքարում տարբեր երկրների աշխատավորների փոխադարձ պաշտպանություն ու համագործակցություն, միմյանց փորձից օգտվելու, միջազգային կոմունիստական շարժման միասնությունն ամրապնդելու ձգտում: ՍՄԿԿ-ն պրոլետարական ինտերնացիոնալիզմի պաշտպանությունը համարում է յուրաքանչյուր մարքսիստ-լենինյանի սրբազան պարտքը:

Հավատարիմ պրոլետարական ինտերնացիոնալիզմի դասակարգային սկզբունքին և ելնելով միջազգային պրոլետարիատի ազգային ջոկատների ընդհանուր վիճակից, նրանց շահերի ու նպատակների ընդհանրությունից, ՍՄԿԿ-ն գտնում է, որ բանվոր դասակարգի բոլոր ջոկատների, նրա կուսակցությունների միջազգային համերաշխությունն ու փոխադարձ ակտիվ օգնությունն օբյեկտիվ անհրաժեշտություն են, քանի որ «Կապիտալը միջազգային ուժ է: Նրան հաղթելու համար հարկավոր է բանվորների միջազգային միություն, նրանց միջազգային եղբայրություն» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 30, էջ 367):

ՍՄԿԿ-ն, հավատարիմ լինելով պրոլետարական ինտերնացիոնալիզմի մեծ գաղափարներին, եղբայրական կոմկուսակցությունների հետ պայքարում է իմպերիալիզմի դեմ, որը եղել ու մնում է խաղաղության, ազատության, ժողովուրդների անկախության ու սոցիալական առաջադիմության գլխավոր թշնամին: Այդ են վկայում 1957, 1960, 1969 թթ. կոմունիստական ու բանվորական կուսակցությունների միջազգային խորհրդակցությունների և Եվրոպայի կոմունիստական ու բանվորական կուսակցությունների բեռլինյան կոնֆերանսի



(1976 թ.) փաստաթղթերը: Պրոլետարական ինտերնացիոնալիզմը զարգանում է գիտական կոմունիզմի ուսմունքի և համաշխարհային բանվորական շարժման զարգացմանը զուգընթաց: Այն հարստանում է համաշխարհային կոմունիստական շարժման, սոցիալիստական հասարակարգի կառուցման ու զարգացման օբյեկտիվ օրինաչափությունների, սուբյեկտիվ գործոնի՝ կոմունիստական կուսակցությունների սերտ համագործակցության ու դերի մեծացման, ինչպես և պրոլետարական ինտերնացիոնալիզմի թշնամիների դեմ պայքարի գործնական փորձի հիման վրա:

Բուրժուազիայի գաղափարախոսներն ամեն կերպ ձգտում են ժխտել ՍՄԿԿ և Սովետական Միության արտաքին քաղաքականության ինտերնացիոնալ բնույթը և սոցիալական տարբեր կարգ ունեցող երկրների խաղաղ գոյակցության հնարավորությունը: Նրանք առաջադրում են արտաքին քաղաքականության «վերդասակարգային» հակագիտական կոնցեպցիան:

ՍՄԿԿ արտաքին քաղաքականությունը բանվոր դասակարգի քաղաքականությունն է, որի գլխավոր խնդիրն է՝ պաշտպանել Հոկտեմբերի նվաճումները, ապահովել հասարակության առաջընթացը, կոմունիստական հասարակարգի կառուցման անհրաժեշտ արտաքին պայմանները: Մինչդեռ բուրժուական կուսակցությունների արտաքին քաղաքականությունը բխում է իմպերիալիստական բուրժուազիայի նեղ շահերից և իր էությամբ ռեակցիոն ու ագրեսիվ է:

Դեռևս Կոմունիստական կուսակցության մանիֆեստում Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսը, առաջադրելով «Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք» լոզունգը, շեշտում էին, որ տարբեր ազգերի կոմունիստները պաշտպանում են համաշխարհային պրոլետարիատի ինտերնացիոնալ շահերը: Ավելի ուշ Վ. Ի. Լենինը սոցիալիստական ազգերի մերձեցումն ու համախմբումը համարեց կոմունիստական հասարակարգի կառուցման ընդհանուր օրինաչափությունը: Պրոլետարական ինտերնացիոնալիզմը մարքսիզմ-լենինիզմի կարևոր սկզբունքներից է, ՍՄԿԿ աշխարհայացքի ու քաղաքականության բաղկացուցիչ մասը: Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը այն իրագործում է ինչպես մեր երկրի հասարակական կյանքի բոլոր ոլորտներում, այնպես էլ իր միջազգային գործունեության ասպարեզում:

Պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքը դինամիկ ու զարգացող է, իսկ դրա կենսագործումն օբյեկտիվ անհրաժեշտություն՝ ինչպես սոցիալիստական հեղափոխության հաղթանակի, սոցիալիզմի կառուցման, այնպես էլ ազգային հարցի լուծման, տարբեր երկրների բանվոր դասակարգի ազգամիջյան հարաբերությունների կարգավորման գործում: Պրոլետարական ինտերնացիոնալիզմը նոր աստիճանի է բարձրացնում անցյալի դեմոկրատական սկզբունքները: ՍՄԿԿ արտաքին քաղաքականությունը չի ժխտում ու չի նսեմացնում ինչպես սոցիալիստական երկրների, այնպես էլ մյուս երկրների ժողովուրդների անկախության, սուվերենության և իրավահավասարության սկզբունքները, այլ, ընդհակառակը, հարգում ու պաշտպանում է դրանք՝ որպես յուրաքանչյուր ժողովրդի սրբազան իրավունքներ: ՍՄԿԿ-ն գտնում է, որ տարբեր երկրների աշխատավորների ազգային ու ինտերնացիոնալ շահերն ու խնդիրները ոչ թե հակասում, այլ համապատասխանում են իրար և սերտորեն կապված են միմյանց: Այդ իր արտահայտությունը գտավ կոմունիստական ու բանվորական կուսակցությունների 1969 թ. հունիսի 7-ի Մոսկովյան միջազգային խորհրդակցության ամփոփիչ փաստաթղթում, որտեղ ասված է, թե կոմունիստները միաժամանակ և՛ հայրենասերներ են, և՛ ինտերնացիոնալիստներ: Նրանք դեմ են ազգային սահմանափակությանը և ազգային շահերի ինչպես թերագնահատմանը, այնպես էլ գերագնահատմանը: Կոմունիստները ազգային շահերի իրական պաշտպաններն են:

ՍՄԿԿ-ն իր գործունեության մեջ հայրենասիրությունը զուգակցում է ինտերնացիոնալիստական քաղաքականության հետ և ցույց տալիս, որ ինտերնացիոնալիզմն արտահայտում է արդի դարաշրջանի ամենահեղափոխական դասակարգի շահերն ու խթանում հասարակության զարգացման ընթացքը: Այն նպաստում է սոցիալիզմի համաշխարհային սիստեմի տնտեսական ու քաղա-

քական նորանոր նվաճումների ձեռքբերմանը, կապիտալիստական աշխարհի բանվոր դասակարգի հաջողություններին և ազգային-ազատագրական շարժումների հաղթանակին, մինչդեռ բուրժուանացիոնալիստական գաղափարախոսությունը հակաժողովրդական է, հակահայրենասիրական և ժողովուրդների տառապանքների, աղետների, ճնշման ու հարստահարության աղբյուր։ Նացիոնալիզմը կարող է արտահայտվել տնտեսական ու քաղաքական գործունեության, գաղափարախոսության մեջ, կուլտուրայում ու կենցաղում և հանդես գալ ազգային սահմանափակության, անցյալի իդեալականացման, ժողովուրդների պատմության մեջ սոցիալական հակասությունների քողարկման, ազգային սնապարծության, տեղայնամոլության և էգոիզմի ձևով։ Իմպերիալիստական բուրժուազիայի նացիոնալիզմի դրսևորումներից են շովինիզմը, ռասիզմը և հրեշավոր ֆաշիզմը։

ՍՄԿԿ-ն կազմակերպվեց և զարգացավ որպես իսկական պրոլետարական ինտերնացիոնալիստական կուսակցություն։ Հիմնադրման առաջին իսկ օրերից նա միջազգային կոմունիստական շարժման մարտական ջոկատներից է։ ՍՄԿԿ-ն և ՍՍՀՄ-ը պրոլետարական ինտերնացիոնալիզմի կենդանի մարմնավորումն են։

Արդի պայմաններում ՍՄԿԿ պրոլետարական ինտերնացիոնալիզմի քաղաքականությունը նշանակում է միավորել սոցիալիստական երկրների, միջազգային կոմունիստական, բանվորական, ազգային-ազատագրական շարժումների ուժերը հանուն խաղաղության, ազգային անկախության և սոցիալական առաջադիմության, որին համապատասխանում է «Պրոլետարնե՛ր բոլոր երկրների և ճնշվա՛ծ ժողովուրդներ, միացե՛ք» լոզունգը» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 31, էջ 569)։

ՍՄԿԿ արտաքին քաղաքականությունը միշտ հետևողականորեն զուգակցել է ՍՍՀՄ-ի ազգային շահերն աշխարհի բոլոր աշխատավորների ազգային ու դասակարգային շահերի հետ, բոլոր նրանց հետ, ովքեր պայքարում են իմպերիալիզմի դեմ, հանուն ազատության, անկախության, դեմոկրատիայի և սոցիալիզմի։ Այդ բխում է ՍՄԿԿ-ի կոմունիստական սկզբունքներից և սոցիալիստական բարոյախոսությունից։

ՍՄԿԿ-ն պաշտպանել ու պաշտպանում է Եվրոպայի, Ասիայի, Աֆրիկայի և Լատինական Ամերիկայի ազատագրական շարժումները։ Այժմ էլ դատապարտում է Իսրայելի ագրեսիան արաբական ժողովուրդների դեմ և այն պաշտպանող իմպերիալիստներին ու սիոնիստներին։ ՍՄԿԿ-ի վարած արտաքին քաղաքականության շնորհիվ հաղթանակեց Վիետնամի ժողովուրդը։ Միաժամանակ հնարավոր դարձան Լեհաստանի, ՉՍՍՀ-ի և ԳԴՀ-ի սահմանների ճանաչումը և ԳԴՀ-ին ՄԱԿ-ի մեջ ընդունելը։ Դա նպաստեց Կուբայի աշխատավորության հաղթանակին, սոցիալիզմի կառուցմանն Ազատության կղզում և ձախողեց իմպերիալիստների՝ Կուբայի տնտեսական ու դիվանագիտական բլոկադայի քաղաքականությունը։ Սատար եղավ Անգոլայի ժողովրդի ազատագրական պայքարին և ապահովեց նրա սոցիալական պրոգրեսի վերընթացը։ Ահա թե ինչու Կուբայի կոմունիստական կուսակցության Կենտկոմի առաջին քարտուղար Ֆ. Կաստրոն ՍՄԿԿ XXV համագումարում երախտագիտության զգացումով ասաց, որ ամենուրեք, որտեղ կա ազնիվ սիրտ, արդարության և առողջ դատողության զգացմունք, սովետական այդ օգնությունը չի մոռացվի (տե՛ս Приветствия XXV съезда КПСС, М., 1976, стр. 40), իսկ ՀՍԲԿ Կենտկոմի առաջին քարտուղար Յանոշ Կադարը գրել է, որ զանազան երկրների աշխատավորներին «բազմազան ձևերով ցույց տրված սովետական օգնությունը պրոլետարական ինտերնացիոնալիզմի փայլուն դրսևորումն է» («Правда», 17 сентября 1976)։

Ազատության մարտիկներին ՍՄԿԿ-ի և Սովետական Միության ցույց տված օգնությունը ոչ թե բարեգործական ակտ է, այլ ինտերնացիոնալ պարտքի կատարում՝ համաշխարհային հեղափոխության հանդեպ, իսկ զանազան երկրների աշխատավորության տարած հաղթանակը պրոլետարական ինտերնացիոնալիզմի փայլուն արդյունքն է ու նրա հզորության ապացույցը։



Սոցիալիզմի համաշխարհային սիստեմի ձևավորման հետ առավել խորացել ու ընդլայնվել է ՍՄԿԿ-ի պրոլետարական-ինտերնացիոնալ քաղաքականության դասակարգային բնույթը։ Պրոլետարական ինտերնացիոնալիզմը բարձրացավ մի նոր, ավելի բարձր՝ սոցիալիստական ինտերնացիոնալիզմի աստիճանի, որը դարձել է սոցիալիստական համագործակցության երկրների միջպետական հարաբերությունների հիմքը, որակապես նոր տիպի միջազգային հարաբերությունների սկզբունքը։ Այդ սոցիալիստական ինտերնացիոնալիզմն է գործողության մեջ։

ՍՄԿԿ սոցիալիստական ինտերնացիոնալիզմի քաղաքականությունը սոցիալիզմի համաշխարհային սիստեմի ամրապնդումն է, մի երկրում սոցիալիստական շինարարությանը՝ եղբայրական մյուս երկրների բազմակողմանի օգնության կազմակերպումը։ Այդ սոցիալիզմի ճակատագրի հանդեպ բարձր պատասխանատվության զգացումն է և յուրաքանչյուր երկրի պատմական ու ազգային առանձնահատկությունների նկատմամբ խորին հարգանքը, համաշխարհային հեղափոխական պրոցեսի զարգացման գործում սոցիալիստական երկրների պատմական դերի ճանաչումը, ճնշված ժողովուրդների ազատագրական ու հակաիմպերիալիստական պայքարի պաշտպանությունը։

ՍՄԿԿ սոցիալիստական ինտերնացիոնալիզմի քաղաքականությունն արտահայտում է մարդկային հասարակության զարգացման օբյեկտիվ տենդենցը և հիմնված է ազատ ժողովուրդների իրավահավասարության ու բարեկամության, նրանց նպատակների միասնության վրա։

Սոցիալիստական ինտերնացիոնալիզմի ՍՄԿԿ-ի տնտեսական քաղաքականության սկզբունքը սոցիալիստական համագործակցության երկրների էկոնոմիկայի ինտեգրացիան է, նրանց միջև աշխատանքի միջազգային բաժանումը, քաղաքական ասպարեզում՝ սոցիալիստական պետությունների անկախության ու սոցիալիստական դեմոկրատիզմի ամրապնդումը, իսկ գաղափարախոսության բնագավառում՝ մարքսիզմ-լենինիզմի ուսմունքին հավատարմությունն ու ստեղծագործական զարգացումը։ Սոցիալիստական ինտերնացիոնալիզմն ազգային հարցում մարքսիզմ-լենինիզմի գիտական գաղափարախոսությունն է և իր էությամբ բուրժուական նացիոնալիզմի ու շովինիզմի հակոտնյան։ Այն օբյեկտիվորեն արտահայտում է սոցիալիստական համագործակցության երկրների ազգային ու ինտերնացիոնալ շահերի դիալեկտիկական միասնությունը։

ՍՄԿԿ արտաքին քաղաքականությունը բխում է սոցիալիզմի ինտերնացիոնալ բնույթից, սոցիալիստական համագործակցության երկրներում արտադրուժերն արագ զարգացնելու նպատակով աշխատանքի միջազգային սոցիալիստական բաժանման, նրանց միջև արտադրությունը կոոպերացնելու, մասնագիտացնելու, գիտատեխնիկական հեղափոխությունն իրագործելու անհրաժեշտությունից։ Սոցիալիստական երկրների ինտերնացիոնալ համագործակցությունը սոցիալիստական յուրաքանչյուր պետության և սոցիալիզմի համաշխարհային ողջ սիստեմի զարգացման ու ծաղկման հիմքն է, որը համապատասխանում է ինչպես այդ երկրների ժողովուրդների, այնպես էլ ողջ աշխարհի աշխատավորների շահերին։

Սոցիալիստական համագործակցության տնտեսական գլխավոր կազմակերպությունը Տնտեսական փոխօգնության խորհուրդն (ՏՓԽ) է, որը մշակում է երկարաժամկետ կոմպլեքսային պլաններ, կոորդինացնում ժողովրդական տնտեսության զարգացման պլանները, խթանում նրանց էկոնոմիկայի բուռն վերելքը և սոցիալիզմի ու կապիտալիզմի միջև ընթացող տնտեսական մրցակցությունում խաղում վճռական դեր։

Սոցիալիստական համագործակցության երկրները փոխադարձ օգնության և իրար զորավիգ լինելու շնորհիվ ապահովեցին էկոնոմիկայի բուռն վերելքը։ Այսօր ՏՓԽ-ն աշխարհի ամենախոշոր տնտեսական միավորումն է, որը գերազանցում է մյուս բոլոր տնտեսական միավորումներին ինչպես զարգացման իր տեմպերով, այնպես էլ ընդհանուր տնտեսական պոտենցիալով։ ՏՓԽ-ի անդամներից ՍՍՀՄ-ը, ԳԴՀ-ն, ԼԺՀ-ն և ՉՍՍՀ-ն դասվում են աշխարհի տասն ամե-

նազարգացած արդյունաբերական երկրների շարքը։ ՏՓԽ երկրների էկոնոմիկան ապրում է աննախընթաց վերելք և զարգացման ցուցանիշներով անցնում կապիտալիստական երկրներից։ 1949—1976 թթ. ՏՓԽ երկրների ազգային եկամուտն աճել է 9,5, իսկ կապիտալիստական պետություններինը՝ 3,3 անգամ («Правда», 25 июня 1977)։ Միայն 1971—1975 թթ. սոցիալիստական համագործակցության երկրների ազգային եկամուտների աճը կազմեց 36, իսկ զարգացած կապիտալիստական երկրներինը՝ 14 տոկոս, ընդ որում, «ընդհանուր շուկայի» երկրներինը հազիվ հասավ 12 տոկոսի։ 1975 թվականին սոցիալիստական երկրների արդյունաբերությունը 2 անգամ ավելի շատ արտադրանք տվեց, քան «ընդհանուր շուկայի» պետություններինը։ Եթե 1971—1975 թթ. ՏՓԽ երկրների արդյունաբերության տարեկան աճը կազմում էր 8 տոկոս, ապա «ընդհանուր շուկայինը» և ԱՄՆ-ինը չի անցել 1,2 տոկոսից։ Զարգացման բարձր տեմպերի շնորհիվ, այսօր սոցիալիստական համագործակցության երկրները տալիս են համաշխարհային արդյունաբերական արտադրանքի 40 տոկոսը, որը մի ժամանակ միայն օրինոտիր էր համարվում։ Սոցիալիստական երկրներին խորթ են կապիտալիզմի մշտական ուղեկիցները՝ ճգնաժամերը, գործազրկությունը և ձեռնարկությունների թերբեռնվածությունը։ Բացի այդ, սոցիալիզմի երկրներում հարաճուն կերպով բարձրանում է ժողովուրդների նյութական ու կուլտուրական մակարդակը։ «Ներկայումս սոցիալիստական երկրների համագործակցությունը դարձել է աշխարհի ամենադինամիկ տնտեսական ուժը, համաշխարհային քաղաքականության առաջատար գործոնը» (ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 60-րդ տարեդարձի մասին, «Հայաստան» հրատ., 1977, էջ 16)։

Սոցիալիստական երկրների բոլոր այդ նվաճումների առանցքը ՍՄԿԿ-ի և եղբայրական կոմունիստական կուսակցությունների ինտերնացիոնալ քաղաքականությունն է։ ՍՄԿԿ-ի նախաձեռնությամբ հրավիրված բարձր մակարդակով խորհրդակցությունները բարեկամական մթնոլորտում քննարկում ու լուծում են բոլոր պրոբլեմները՝ մեծ ներդրում կատարելով սոցիալիզմի կառուցման գործում։ Այդ համագործակցությունը ոչ թե հասարակ առևտրական բնույթի է, այլ ժողովրդական տնտեսությունների զարգացման կոմպլեքսային ծրագրերի մշակման և համակողմանի ինտեգրացման բարդ պլաններ են, որոնք նախատեսում են համատեղ յուրացնել բնության ռեսուրսները, կառուցել արդյունաբերական համալիրներ, կոոպերացնել ու մասնագիտացնել արտադրության ճյուղերը։ Արդեն կառուցվել են «Խաղաղություն» միասնական էներգասիստեմը, «Բարեկամություն» նավթամուղը, կառուցվում է Օրենբուրգ—ՍՍՀՄ արևմտյան սահման 2.750 կմ երկարությամբ գազամուղը, կոորդինացված են ավտոմոբիլաշինարարությունը, նավթարդյունաբերությունը, մետալուրգիայի զարգացումը, գյուղատնտեսական մեքենաների, էլեկտրոնային հաշվիչ սարքավորումների արտադրությունը և այլն։ Արտադրության մասնագիտացման ու կոոպերացման նպատակով արդեն կնքված ու կենսագործման պրոցեսում են 90 համաձայնագրեր։

ՍՍՀՄ արտաքին ինտերնացիոնալ քաղաքականությունը հաշվի է առնում ոչ միայն սոցիալիստական համագործակցության երկրների տնտեսական, այլ նաև քաղաքական շահերը՝ սոցիալիզմի համաշխարհային սիստեմի նյութական հիմքերի ամրապնդումն ու ընդլայնումը։ Սոցիալիստական համագործակցությունը վերափոխում է նաև սոցիալիստական պետությունների հասարակական-քաղաքական կյանքը, ձևավորում մարդկանց քաղաքական ու բարոյական կերպարը, արմատավորում ու համողմունք դարձնում կոմունիստական հայացքները և ամրապնդում ժողովուրդների բարեկամությունը։ Դրա լավագույն ապացույցը ՉՍՍՀ-ի «Կրասնի Չեպել» ձեռնարկության բանվորների՝ Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 60-ամյակին նվիրված սոցիալիստական մրցության ծավալումն էր։ Նման նախաձեռնությամբ հանդես եկան նաև ԳԴՀ-ի, Բուլղարիայի, Լեհաստանի, Չեխոսլովակիայի բազմաթիվ ձեռնարկությունների բանվորներ, որոնք պարտավորվեցին ժամկետից շուտ կատարել ՍՍՀՄ-ի պատվերները։ Սոցիալիզմ կառուցող միլիոնավոր աշխա-



տավորների այս շարժումը որակապես նոր երևույթ է։ Այդ հոյակապ նախաձեռնությունն ունի մեծ հնանկար և մեկ անգամ ևս ցույց տվեց սոցիալիզմի առավելությունները կապիտալիզմի նկատմամբ։

ՍՄԿԿ արտաքին ինտերնացիոնալ քաղաքականությունն ամրապնդում է սոցիալիստական երկրների միասնությունն ու համախմբվածությունը, որը խիստ անհրաժեշտ է աշխարհում խաղաղությունն ամրապնդելու, միջազգային բարենպաստ մթնոլորտ ստեղծելու համար։ ՍՄԿԿ քաղաքականության շնորհիվ վերջին տարիներին ավելի է ամրապնդվել համաշխարհային հեղափոխական ուժերի հակաիմպերիալիստական ճակատը և միջազգային ասպարեզում «սառը պատերազմի» քաղաքականությունից շրջադարձ կատարվել դեպի լարվածության թուլացումը, սոցիալական տարբեր կարգ ունեցող պետությունների միջև փոխադարձ շահավետ տնտեսական կապերի հաստատումը։ ՍՄԿԿ-ն է միջազգային լարվածության թուլացման ռիթմի գլխավոր ուժը, սկսած խաղաղության մասին լենինյան դեկրետից մինչև ՍՄԿԿ XXIV համագումարի մշակած խաղաղության ծրագիրը, ՍՍՀՄ նոր Սահմանադրությամբ խաղաղության քաղաքականության վավերացումը և Հոկտեմբերյան հեղափոխության 60-ամյակին նվիրված հանդիսավոր նիստում Լ. Ի. Բրեժնևի ծրագրային հարցադրումները։

ՍՍՀՄ նոր Սահմանադրությունը՝ կոմունիզմի կառուցման մանիֆեստը, ամրակայելով ՍՄԿԿ խաղաղության ու ինտերնացիոնալիստական արտաքին քաղաքականությունը, հաստատեց մարքսիզմ-լենինիզմի տեսության ու պրակտիկ գործունեության դանձարանը։ ՍՄԿԿ-ն մեկ անգամ ևս ցույց տվեց իր քաղաքականության ինտերնացիոնալ բնույթը և միջազգային ասպարեզում համագործակցելու պատրաստակամությունը, որ «ՍՍՀՄ քաղաքացու ինտերնացիոնալ պարտքն է աջակցել մյուս երկրների ժողովուրդների հետ բարեկամության ու համագործակցության զարգացմանը, ընդհանուր խաղաղության պահպանմանն ու ամրապնդմանը» (Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության Սահմանադրություն (Հիմնական օրենք), «Հայաստան» հրատ., 1977, էջ 14—15)։

ՍՄԿԿ ինտերնացիոնալ արտաքին քաղաքականությունը բխում է նաև մեր կուսակցության ժողովրդական էությունից և այն ծառայում է աշխատավորությանը։ Նրա ինտերնացիոնալ քաղաքականության նպատակն է մարդկությանը հուզող հրատապ հարցերը լուծել ազատության, դեմոկրատիայի, պրոգրեսի և սոցիալական արդարության ոգով, որոնք ինչպես տարբեր երկրների, այնպես և համաշխարհային մասշտաբով բանվոր դասակարգի մեծ առաքելության ճանապարհին նորանոր հաջողությունների հասնելու նախադրյալներ են։ Պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքներին հավատարմությունն անհրաժեշտ է նրա համար, ուսուցանել է Վ. Ի. Լենինը, որպեսզի «...պատմության այդ զիգզագներում, այդ ոլորքներում չկորչենք, պահպանենք ընդհանուր հեռանկարը, որպեսզի տեսնենք այն կարմիր թելը, որը կապում է կապիտալիզմի ամբողջ զարգացումը և դեպի սոցիալիզմ տանող ամբողջ ճանապարհը...» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 27, էջ 143)։

ՍՄԿԿ արտաքին քաղաքականության ինտերնացիոնալիստական ողջ էությունն այն է, որպեսզի սոցիալիստական բոլոր երկրների հետ համատեղ կառուցի սոցիալիզմը և կոմունիզմը, համակողմանիորեն ամրապնդի սոցիալիստական սիստեմի հզորությունը, միջազգային կոմունիստական շարժման միասնությունը և պաշտպանի կապիտալիստական աշխարհի աշխատավորության ազատագրական պայքարը։ Այդ քաղաքականությունը ելնում է լենինյան այն դրույթից, ըստ որի «...բանվորների ինտերնացիոնալ միասնությունն ավելի կարևոր է, քան ազգայինը...» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 35, էջ 261) և դատապարտում է շովինիզմը, որն ազգային ինքնուրույնության դրոշի քողի տակ ժխտում է աշխատավորների դասակարգային համերաշխ քաղաքականությունը։ Դրա համար ՍՄԿԿ-ն և եղբայրական կոմունիստական կուսակցությունները հետևողականորեն պայքարում են նացիոնալիզմի և մեծապետական շովինիզմի դեմ՝ որպես պրոլետարիատի համերաշխությունը կազմալուծող գաղա-

փարախոսության, իսկ իմպերիալիստները, գիտակցելով պրոլետարիատի դասակարգային համերաշխության ուժի մեծությունը և սարսափելով նրանից, սոցիալիզմի և միջազգային հեղափոխական շարժումների դեմ պայքարում հույսը դնում են նացիոնալիզմի պրոպագանդման վրա և այն դարձնում պաշտոնական քաղաքական դոկտրինա:

Բուրժուական քաղաքագետներն ու սոցիոլոգները կատաղած հարձակվում են պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքների վրա, փորձում հայրենասիրությունը հակադրել ինտերնացիոնալիզմին, «գտնել» հակասություններ և ցույց տալ դրանց անհամատեղելիությունը:

Սակայն իզուր են բուրժուական պրոպագանդայի ճիգերը: Մեր դարը, ինչպես վկայում է հասարակության զարգացման ընթացքը, ոչ թե նացիոնալիզմի, այլ՝ կապիտալիզմից սոցիալիզմին անցման դար է, որի ժամանակ հատկապես կարևորվում են պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքների՝ ժողովուրդների միջև բարեկամության ու համագործակցության ամրապնդումը, ինչպես և միջազգային կոմունիստական շարժման միասնության ցեմենտումը, աշխատավորության ազգային ու ինտերնացիոնալ խնդիրների զուգակցումը: Իմպերիալիզմի դեմ պայքարում ՍՄԿԿ-ի՝ հանուն խաղաղության, դեմոկրատիայի, սոցիալական պրոգրեսի և ազգային-ազատագրության արտաքին քաղաքականությունն ստացել է գործնական ու անգնահատելի նշանակություն:

Բուրժուական սոցիոլոգների և իմպերիալիզմի հլու ծառա օպորտունիստների մի մասն էլ ՍՄԿԿ-ի պրոլետարական ինտերնացիոնալիզմի քաղաքականության դեմ հանդես են գալիս նացիոնալիզմի դեմ պայքարի քողի տակ, կոսմոպոլիտիզմի դիրքերից: Նրանք հայտարարում են, որ գիտատեխնիկական հեղափոխության դարում ազգային սուվերենության և անկախության քաղաքականությունը հնացել է, այն խանգարում է տնտեսական ինտեգրացիային, էկոնոմիկայի ու հասարակության առաջադիմությանը և հայրենասիրությունը համարում են նացիոնալիզմ:

ՍՄԿԿ հայրենասիրական քաղաքականությունն ինտերնացիոնալիզմից անջատված չէ, այն սերտորեն կապված է բոլոր երկրների աշխատավորների սոցիալական ու ազգային-ազատագրական պայքարի, սոցիալիստական համագործակցության երկրներում սոցիալիզմի կառուցման պրոբլեմների լուծման հետ: Կոմունիստների հայրենասիրությունն ակտիվ է և նկատի ունի աշխատավորների պայծառ ապագան: Նրանց խորթ են բուրժուական կոսմոպոլիտիզմը, որն անտեսում է փոքր ժողովուրդների ազգային շահերը հօգուտ իմպերիալիստական մոնոպոլիաների տիրապետության հաստատման: Վերջին շրջանում բուրժուական պրոպագանդան արծարծում է «եվրոկոմունիզմի» կեղծ հասկացությունը, ձգտելով Արևմտյան Եվրոպայի կոմունիստական կուսակցությունները հակադրել սոցիալիստական երկրների կոմունիստական կուսակցություններին: Սակայն զուր են բուրժուական պրոպագանդիստների ջանքերը: 1976 թ. հունիսին Բեռլինում հրավիրված Եվրոպայի 29 կոմունիստական և բանվորական կուսակցությունների կոնֆերանսը մերկացրեց բուրժուական պրոպագանդիստների հորինած կոմունիստական կուսակցությունների «ճգնաժամի» մասին պրոպագանդայի կեղծ ու ռեակցիոն էությունը, ցույց տվեց կոմունիստական շարժման միասնությունն ու համախմբվածությունը և ստեղծագործորեն զարգացրեց պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքները: Կոնֆերանսում, պաշտպանելով պրոլետարական ինտերնացիոնալիզմի քաղաքականությունը, ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևն ասաց, որ կոմունիստական կուսակցությունների և ընդհանրապես բանվորական շարժումների միասնական պայքարի նպատակը ժողովուրդների ազգային անկախությունը և սոցիալական պրոգրեսն է, իսկ հիմքը՝ կամավոր համագործակցությունը՝ նրանցից յուրաքանչյուրի իրավահավասարության ու անկախության խստիվ պահպանմամբ հանդերձ:

Կոմունիստներն ավելի քան 100 տարի պրոլետարական համերաշխության դրոշակակիրներն են, իսկ այդ համերաշխությունն այսօր լիովին պահպանում է իր ողջ նշանակությունը: Համերաշխ գործունեությունը եղել ու



մնում է կոմունիստական կուսակցությունների և առհասարակ բանվորական շարժման հզոր ու փորձված զենքը:

ՍՄԿԿ արտաքին քաղաքականության գաղափարական ու բարոյական հզորության, ազդեցության և հեղինակության անսպառ աղբյուրը դասակարգային համերաշխության քաղաքականությունն է: Դրա համար էլ ՍՄԿԿ XXV համագումարը շեշտեց, որ պրոլետարական ինտերնացիոնալիզմի հետևողական պաշտպանությունը համարվում է յուրաքանչյուր կոմունիստի սրբազան պարտքը, իսկ հավատարմությունը նրա սկզբունքներին՝ Հոկտեմբերյան հեղափոխության պատգամներն իրագործելու, կապիտալի ճիրաններում տառապող աշխատավորությանն ազատագրելու և կոմունիստական հասարակարգ կառուցելու վճռական պայմանը:

Միջազգային կոմունիստական շարժումն օրգանապես կապված միասնություն է: Ամեն մի հեղափոխական ելույթ ազգային մասշտաբով կազմում է համաշխարհային հեղափոխական պրոցեսի բաղկացուցիչ մասը, նրա նվաճումը՝ բոլոր ժողովուրդների ազատագրական պայքարում: Այդ միասնության մեջ ազատագրական պայքարի հաղթանակի օբյեկտիվ հիմքը հեղափոխական ջոկատների համախմբվածությունն է և նրանց գործունեության միջազգային մասշտաբով կոորդինացիան: Դրա համար էլ ՍՄԿԿ-ն իր արտաքին քաղաքականության մեջ ձգտում է կիրառել ինտերնացիոնալ կապերի ու գործողությունների կոորդինացման ավելի արդյունավետ ձևեր:

ՍՄԿԿ-ն, անաղարտ պահպանելով պրոլետարական ինտերնացիոնալիզմը, գտնում է, որ այն բանվոր դասակարգի հաղթանակի գլխավոր երաշխիքն է, իսկ կոմունիստական կուսակցությունների փորձի ու մտքի ստեղծագործական փոխանակությունը՝ նրա տեսության զարգացման աղբյուրը: Պրոլետարական ինտերնացիոնալիզմի ուժից ու հեղափոխականացնող նշանակությունից սարսափող բուրժուազիան իր հարվածն ուղղում է նրա դեմ: Երբ ՍՄԿԿ-ն պաշտպանում է եղբայրական կոմունիստական կուսակցությունների գործունեությունը, ռեակցիոներներն ասում են՝ այդ հեգեմոնիզմն է, իսկ երբ եղբայրական կոմկուսներն են պաշտպանում ՍՄԿԿ արդարացի քաղաքականությունը, նրանք ննենգաբար հայտարարում են, որ իբր թե կոմկուսները Մոսկվայի ագենտն են, չունեն իրենց ինքնուրույնությունը և մոռանում են ազգային շահերը, ձգտելով ինտերնացիոնալիզմին հակադրել նացիոնալիզմը: Սակայն կոմունիստական կուսակցությունները լավ են հասկանում իմպերիալիզմի գաղափարական դիվերսիայի նպատակը, մերկացնում են այն, բարձր պահում պրոլետարական ինտերնացիոնալիզմի դրոշը և ընդունում, որ ՍՄԿԿ-ն համաշխարհային կոմունիստական շարժման ամենաառաջավոր, ամենահզոր, ամենափորձված ջոկատն է և ինտերնացիոնալիզմի հուսալի միջնաբերդը: Նրանք պրոլետարիատի դասակարգային համերաշխության պաշտպանությունը համարում են խաղաղության, ազատության և սոցիալիզմի մարտիկների առաջնակարգ ու կարևոր գործը:

Աշխարհի կոմունիստական կուսակցությունների պատմությունը կապված է լենինիզմի ծագման ու ՍՄԿԿ պատմության հետ, ինչպես և սոցիալիստական բոլոր երկրների գոյությունը՝ ՍՍՀՄ-ի գոյության հետ: Նրանց սոցիալիզմի ուղիով զարգացման ու անվտանգության ապահովումը օրգանապես առնչված է ՍՄԿԿ ինտերնացիոնալ քաղաքականության և ՍՍՀՄ հզորության հետ:

ՍՄԿԿ ծրագիրը հագեցված է պրոլետարական ինտերնացիոնալիզմի, ժողովուրդների ազատագրության, բարեկամության և սոցիալիզմի կառուցմանը հավատարմության ոգով: Պրոլետարական ինտերնացիոնալիզմը ՍՄԿԿ արտաքին քաղաքականության կարևորագույն, կյանքում ստուգված սկզբունքն է և փորձված գաղափարական զենքը: Այն անշեղորեն ու հետևողականորեն լենինյան ավանդների, նրա մտքերի ու խոհերի իրագործումն է:

ՍՄԿԿ արտաքին քաղաքականությունը մշտապես պաշտպանում է բոլոր ժողովուրդների ազատագրական պայքարն իմպերիալիզմի գաղութակալության լծի դեմ: Մինչև համաշխարհային երկրորդ պատերազմն աշխարհի բնակչության 60 տոկոսը գաղութացված էր, իսկ 1977 թվականին մնացել է 1 տոկոսից

էլ պակաս։ Այդ արդյունք է հակաիմպերիալիստական ճակատի վճռական գործունեության, որի շնորհիվ փլուզվեց գաղութային սիստեմը և անկախություն նվաճեցին 112 երկիր, ընդ որում, Ասիայում՝ 33, Աֆրիկայում՝ 48, Արևմտյան կիսագնդում՝ 26, Օվկիանայում՝ 5։

ՍՄԿԿ-ն և ՍՍՀՄ-ն օգնում են գաղութակալության լուծը թոթափած ժողովուրդներին, դատապարտում իմպերիալիստական ագրեսիան, դիկտատն ու բռնությունը։ ՍՍՀՄ-ը նրանց հետ հաստատել է իրավահավասար հարաբերություններ և աջակցում է նրանց տնտեսական վերելքին։ Կյանքը հերքեց գաղութարարների այն պնդումները, թե այդ ժողովուրդները զուրկ են նախաձեռնությունից և ի վիճակի չեն կառավարել իրենց երկրները։

Մինչև 1976 թ. նորաստեղծ երիտասարդ պետությունները, միայն ՍՍՀՄ-ի ցույց տված տնտեսական ու տեխնիկական օգնությամբ, կառուցել են 507 արդյունաբերական ձեռնարկություն (կառուցման պրոցեսում են ևս 447 օբյեկտ)։ ՍՍՀՄ-ի օգնության 90 տոկոսը ներդրվել է արտադրության մեջ, որի երեք քառորդից ավելին հատկացվել է արդյունաբերության և էներգետիկայի ըստեղծմանն ու զարգացմանը։ Միաժամանակ ՍՍՀՄ-ի օժանդակությամբ պատրաստվել են ազգային կադրեր՝ ավելի քան կես միլիոն մասնագետներ և որակյալ բանվորներ։

ՍՄԿԿ-ի և Սովետական Միության հարաբերությունները նոր զարգացող երկրների հետ որոշակի են ու հստակ։ Նրանք չեն միջամտում այդ երկրների ներքին կյանքին, հարգում են յուրաքանչյուր ժողովրդի իրենց զարգացման սեփական ուղին ընտրելու իրավունքը, բայց ՍՄԿԿ-ն չի թաքցնում, որ ինքը համակրում է պրոգրեսի, դեմոկրատիայի և ազգային անկախության ուժերին և երբեւիցե չի որոնում այնտեղ անձնական օգուտներ, չի պահանջում կոնցեսիաներ, ռազմական բազաներ և չի ձգտում հասնել քաղաքական տիրապետության։ ՍՄԿԿ-ն գործում է ինչպես իր հեղափոխական խիղճն ու կոմունիստական համոզմունքներն են թելադրում (տե՛ս ՍՄԿԿ XXV համագումարի նյութեր, էջ 18)։ ՍՄԿԿ այդ քաղաքականությունն իմպերիալիստական պետությունների կողմից նոր զարգացող երկրներին շահագործման ու կողոպտման քաղաքականության հակապատկերն է։ Միջազգային մոնոպոլիաներն այդ երկրներում ներդրված կապիտալից կրկնակի շահույթ են ստանում, քան այն գումարից, որ ներդնում են զարգացած կապիտալիստական երկրներում։ Միայն 1960-ական թվականների երկրորդ կեսին նոր զարգացող երկրների հաշվին նրանք ստացել են 23 մլրդ դոլար շահույթ, որը 1,5 անգամ մեծ է, քան նրանց ցույց տված օգնության գումարը։ 1961—1970 թթ. նոր զարգացող երկրները, իմպերիալիստական պետությունների քաղաքականության հետևանքով, տարեկան կորցրել են 2 մլրդ դոլար։

ՍՄԿԿ և ՍՍՀՄ քաղաքականությունը նոր զարգացող երկրներում հիմնված է ինտերնացիոնալիզմի լենինյան սկզբունքների և մշտապես գործնական օգնություն ցույց տալու պրակտիկայի վրա, որի նպատակն է օգնել այդ երկրներին՝ ազատագրվելու օտարերկրյա մոնոպոլիաների կախվածությունից և ձեռք բերելու լրիվ տնտեսական անկախություն։

ՍՄԿԿ-ն միշտ գտնվել ու գտնվում է խաղաղության, միջազգային անվտանգության ապահովման, ճնշված ժողովուրդների ազատագրական պայքարի և համայն աշխարհի աշխատավորության շահերի պաշտպանության, պրոգրեսի ու սոցիալիզմի համար մղվող պայքարի մարտական կազմակերպությունների ավանգարդում։ Այն իր սկզբունքային ու հետևողական գործունեությամբ մշտապես ոգեշնչող օրինակ է։ ՍՄԿԿ-ն ղեկավարվում է պրոլետարական ինտերնացիոնալիզմի լենինյան ավանդով։

# ԱՊՐԵԼԱԿԵՐՊԸ ՈՐՊԵՍ ՍՈՑԻԱԼ-ՓԻԼԻՍՈՓԱՅԱԿԱՆ ԸՄԲՌՆՈՒՄ

**Ա. Հ. ՍԱՐԳՍՅԱՆ**
Փիլիսոփայական գիտությունների թեկնածու

ՍՈՎԵՏԱԿԱՆ ԺՈՂՈՎՈՒՐԴԸ աշխարհի առաջադեմ մարդկության հետ միասին մեծ հանդիսավորությամբ նշեց Հոկտեմբերյան հեղափոխության 60-ամյակը։ Խորհրդանշական է, որ այդ նշանավոր տարելիցի նախօրեին ընդունվեց ՍՍՀՄ նոր Սահմանադրությունը։ Հիմնական օրենքի նախագծի համաժողովրդական քննարկումն ու հաստատումը ՍՍՀՄ Գերագույն սովետի յոթերորդ արտահերթ նստաշրջանում մեկ անգամ ևս ապացուցեց սոցիալիստական կարգերի, սովետական ապրելակերպի առավելությունները բուրժուականի նկատմամբ։

ՍՍՀՄ-ում կառուցված է զարգացած սոցիալիստական հասարակարգ։ «Այդ փուլում,— գրված է նոր Սահմանադրության մեջ,— երբ սոցիալիզմը զարգանում է արդեն իր սեփական հիմքի վրա, առավել լրիվ են դրսևորվում նոր հասարակարգի ստեղծարար ուժերը, սոցիալիստական ապրելակերպի առավելությունները, աշխատավորներն ավելի ու ավելի լայնորեն են օգտվում հեղափոխական մեծ նվաճումների բարիքներից»։

Սոցիալիստական ապրելակերպին հակադրվում է բուրժուականը, հատկապես շատ է պրոպագանդվում ամերիկյանը։ Այս առնչությամբ «ապրելակերպը» հանդես է գալիս իբև գաղափարախոսական կոնցեպցիա, ստանում սոցիալ-փիլիսոփայական իմաստավորում և, որպես հավաքական հասկացություն, իր մեջ է ընդգրկում սոցիալական իրականության բազմաթիվ կողմերը։ Բնականաբար, հարց է ծագում, թե ի՞նչ է ներկայացնում այդ հասկացությունը, ինչպիսի՞ ընդգրկման սահմաններ ունի, ի՞նչ դեր է խաղում երկու աշխարհայացքների արդի պայքարում, ուր, ինչպես նշում է ընկեր Լ. Ի. Բրեժնևը «...չի կարող տեղ լինել չեզոքության և կոմպրոմիսների համար» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութեր, էջ 111)։

Խոսելով ապրելակերպի մասին, պետք է նկատի ունել, որ դրա առաջին և անհրաժեշտ պայմանը մարդկանց կենսագործունեությունն է։ Իսկ այն տարբերվում է կենդանիների վարքագծից նրանով, որ մարդիկ վերարտադրում են ո՛չ միայն իրենց ֆիզիկական կյանքը, իրենց հասարակական էությունը, այլև իրենց ապրելակերպը։ Հետևաբար, մարդկային կյանքի վերարտադրությունը զուտ բնական-կենսաբանական երևույթ չէ, այլ ունի նաև հասարակական բնույթ, որի հետևանքով ապրելակերպը հանդես է գալիս որպես սոցիալական պայմանների արգասիք։ Պարզ է, որ մարդկային կյանքի պայմանները հենց այն ոլորտներն են, որոնք ձևավորում են հասարակության ապրելակերպը, բայց ինչպես իրավացիորեն նշում է Բուտենկոն «...մարդկանց ապրելակերպը բոլորովին էլ նույնական չէ մարդկային կյանքի պայմաններին, առավել ևս այն չի կարող նույնացվել այդ պայմանների համախմբության առանձին տարրերի հետ, քանի որ իր էությամբ ապրելակերպն այդ պայմանների հիմքի

վրա աճող մարդկանց կենսագործունեության եղանակ է» (А. П. Бутенко. Социалистический образ жизни и формирование нового человека. М., 1975, стр 6).

Յուրաքանչյուր ֆորմացիա ունի միայն իրեն հատուկ ապրելակերպ, կենսագործունեության այնպիսի ձևեր, որոնք բնորոշ են տվյալ հասարակությանը։ Բայց, դրա հետ մեկտեղ, ունի նաև առանձնահատկություններ, որոնք հատուկ են միայն տվյալ հասարակարգում ապրող տարբեր սոցիալական խմբերին։ Այսպես, օրինակ, սոցիալիստական հասարակարգը ձևավորում է միայն իրեն բնորոշ սոցիալիստական ապրելակերպ, որը հատուկ է բանվոր դասակարգին, գյուղացիությանը, ինտելիգենցիային։ Բայց միաժամանակ նրանցից յուրաքանչյուրի ապրելակերպում երևան են գալիս այդ խմբին հատուկ առանձնահատկություններ, որոնց պատճառը ո՛չ միայն տվյալ հասարակարգի սոցիալական կառուցվածքն է, այլև արտադրաուժերի զարգացածության մակարդակը, գիտության ու տեխնիկայի հասումների ներդրման աստիճանը և այլն։ Բացի այդ, կան նաև ապրելակերպի ժառանգված ձևեր, որոնք հաջորդ հասարակարգ են անցնում նախորդից և շարունակում գոյատևել վերապրուկի ձևով։ Սակայն, որպես կանոն, կենսագործունեության այն ձևերը, որոնք կտրվում են տվյալ հասարակության մեջ իշխող ապրելակերպից և հակադրվում դրան՝ իշխող ապրելակերպի ձևեր չեն։

Ապրելակերպն, ըստ սովետական փիլիսոփա Վ. Ի. Տոլստիխի, ձևավորում են.

ա) Սոցիալ-տնտեսական պայմանները և գործոնները, որպիսիք են՝ տվյալ հասարակության արտադրաեղանակը, աշխատանքի հասարակական ձևը, դասակարգային կառուցվածքն ու տվյալ հասարակության ներսում գործող արժեքային կողմնորոշման չափանիշները (վերաբերմունքը պետական գաղափարախոսության, կյանքի ու բարոյական վարքագծի նկատմամբ և այլն)։

բ) Կուլտուրական միջավայրը։ Կուլտուրան արտահայտում է մարդկանց կողմից բնության և հասարակության տարերային ուժերի յուրացման աստիճանը։ Այն ձևավորում է որոշակի արժույթներ, վարվեցողության նորմեր, որոնք համապատասխան սոցիալ-հոգեբանական երանգ են տալիս ապրելակերպին։ Այս առումով կուլտուրան մարդու հասարակական իրականությունն է, ապրելակերպի սոցիալ-հոգեբանական չափանիշը։ Կուլտուրան նաև ապրելակերպի արժեքային գնահատումն է, ինչպես նաև նրա քաղաքակրթվածության աստիճանը։

գ) Բնական գործոններ (աշխարհագրական, կենսաբանական), որոնք այս կամ այն չափով ազդում են մարդկանց կենսագործունեության ապրելակերպի վրա։

Ապրելակերպի ձևավորման համար եթե առաջին գործոնը հիմնականն է, իսկ կուլտուրական գործոնի դերը հետզհետե մեծանում է, ապա բնական գործոնի դերը նվազում է՝ հենց այդ նույն կուլտուրական գործոնի զարգացման հետևանքով։

Ապրելակերպը կարելի է քննարկել տարբեր առումներով։ Այն իր բովանդակությամբ պայմանավորված է նրանով, թե մարդն իր միջավայրի հետ ամենօրյա ինչպիսի փոխհարաբերության մեջ է, ինչով է իմաստավորում իր կյանքը և ինչով է երջանկանում՝ որպես սոցիալական էակ։

Ապրելակերպն իր կառուցվածքով ընդգրկում է կենսագործունեության բոլոր այն ձևերը, որոնք բխում են տվյալ հասարակարգից։ Ցանկացած հասարակարգում այդ կենսագործունեությունը դրսևորվում է արտադրության ոլորտում և դրանից դուրս, այսինքն՝ աշխատաժամանակի և ազատ ժամանակի։ Ինքնին հասկանալի է, որ տարբեր հասարակարգերում առանձին սոցիալական խմբերի, դասակարգերի և անհատների համար այդ ժամանակների փոխհարաբերությունը տարբեր է։

Իր բնույթով ապրելակերպը համընկնում է արտադրության եղանակի հետ։ Այդ է պատճառը, որ հակամարտ հասարակարգերում միասնական ապրելակերպ գոյություն չունի։



Իր զարգացման տենդենցով ապրելակերպը փոփոխվում է հասարակության նյութական ու հոգևոր ոլորտների փոփոխմանը համընթաց և պայմանավորված է վերջիններիս զարգացման աստիճանով ու համապատասխանաբար նրանց նկատմամբ հասարակության անդամների պահանջմունքով։ (Դասակարգման սկզբունքը Բուտենկոյինն է։ Տե՛ս նշած աշխատությունը)։

— Ինչպես արդեն նշեցինք, ապրելակերպը հատուկ է անհատներին, սոցիալական խմբերին, դասակարգերին, ողջ հասարակությանը։ Այն կարող է ունենալ ազգային (օրինակ ֆրանսիականը), տեղային, աշխարհագրական բնույթ (օրինակ, ասիականը) և հանդես գալ որպես գաղափարական կոնցեպցիա (օրինակ, խոսում են ամերիկյան ապրելակերպի մասին)։ Հետևաբար, «ապրելակերպ» հասկացությունն արտացոլում է հասարակական կյանքի տնտեսական, քաղաքական, գաղափարական, բարոյական, հոգեբանական, ընտանեկան, կենցաղային, ազատ ժամանակի էական կողմերը։ Այս ամենից հետևում է, որ ապրելակերպը կարելի է սահմանել որպես պատմական կոնկրետ սոցիալական հարաբերություններում մարդկանց (անհատների, սոցիալական խմբերի, դասակարգերի, հասարակության) կենսագործունեության այն տիպական ձևերի համակցում, որոնք բնորոշում են նրանց աշխատանքում, հասարակական-քաղաքական հարաբերություններում, ընտանիքում, կենցաղում և ազատ ժամանակում։ Այս սահմանումից բխում է, որ ապրելակերպն անհատին բնութագրում է ոչ թե որպես հոգեբանական, այլ սոցիալական միավոր, որպես տվյալ հասարակական հարաբերությունների կրող։ Բայց այդ դեռ չի նշանակում, թե անհատի հոգեկան (լայն իմաստով) առանձնահատկություններն ու կարողություններն այս հարցում պասիվ են։ Ընդհակառակը, հաճախ անհատի հոգեկան յուրահատկություններն իրենց կնիքն են դնում նրա ապրելակերպի վրա։

Հասարակության ապրելակերպն ընդհանուր առմամբ բնութագրվում է իշխող արտադրաեղանակով, իսկ առանձին դասակարգերի, սոցիալական խմբերի և անհատների ապրելակերպը որոշվում է արտադրության սիստեմում այդ դասակարգի, սոցիալական խմբի, անհատի զբաղեցրած տեղով, արտադրամիջոցների նկատմամբ ունեցած վերաբերմունքով, աշխատանքի կազմակերպման մեջ ունեցած դերով և հասարակության հարստությունից իրենց հասած բաժնով, այլ կերպ ասած՝ իրենց դասակարգային պատկանելությամբ։ Մեծ նշանակություն ունի նաև այն հանգամանքը, թե տվյալ սոցիալական միավորը (սոցիալական խումբ, դասակարգ կամ անհատ) որքանով է գիտակցում կամ արդյո՞ք գիտակցում է իր ապրելակերպը, այսինքն ինչպիսի՞ արժեքային գնահատմամբ է ընկալում իր հասարակական կեցությունը։ Այստեղից պարզ է դառնում, որ ապրելակերպը սերտորեն կապված է մարդկանց հասարակական-քաղաքական, բարոյական և գեղագիտական արժեքային կողմնորոշման հետ։

Այժմ քննարկենք ապրելակերպի կապը գաղափարախոսության, կյանքի իմաստի և հումանիզմի հետ։

Ապրելակերպը սերտորեն կապված է գաղափարախոսության հետ։ Դասակարգային հասարակության մեջ միասնական ապրելակերպ գոյություն չունի։ Կա իշխողի ու ենթարկվողի ապրելակերպ։ Որպես կանոն՝ իշխող դասակարգի ապրելակերպը համարվում է էտալոն ողջ հասարակարգի ապրելակերպի համար։ Այդ դասակարգն ունի իր ապրելակերպին համապատասխան գաղափարախոսություն, որն իշխող է դասակարգային հասարակության մեջ։ Ճնշվող դասակարգն ունի արմատապես հակադիր ապրելակերպ և, հետևաբար,

ուրույն գաղափարախոսություն։ Առհասարակ դասակարգերը, սոցիալական խմբերը, անհատներն իրենց գործունեության ընթացքում ժառանգում և յուրացնում են բարոյական նորմերի, մարդկային փոխհարաբերությունների որոշակի կայունացած ձևեր, որոշակի ապրելակերպ։ Բայց երբ նրանք հասնում են որոշ մակարդակի, երբ իրենց համար մշակում են արժութային գնահատման սեփական չափանիշներ, վերագնահատում սեփական տեղն ու դերը, վերագնահատման է ենթարկվում և ապրելակերպը, որը դրսևորվում է մի քանի ձևով։ Եթե դասակարգերը, սոցիալական խմբերը հարմարվում են իրենց ապրելակերպին, այդ դեպքում ապրելակերպի և գաղափարախոսության միջև ոչ մի հակասություն չի ծագում։ Բայց հնարավոր է նաև հակառակը։ Ապրելակերպի նկատմամբ դրսևորվող բողոքը կարող է հանգեցնել սոցիալական շարժումների և վերջիվերջո սոցիալական հեղափոխության։ Մեզ թվում է, որ անցյալում եղած և այսօր էլ առկա բոլոր սոցիալական բողոքներն ու շարժումները սկսվել են ապրելակերպի հանդեպ բողոքից և միայն դրանից հետո այն պայմաններից ու պատճառներից, որոնք այդպիսի ապրելակերպ են ծնում։ Անտիկ աշխարհում ապրելակերպի նկատմամբ արտահայտված բողոքը ծնեց Սպարտակի ապստամբությունը, էսսենական աղանդը, քրիստոնեությունը։ Միջնադարը ծնեց զանազան աղանդավորական շարժումներ, գյուղացիական պատերազմներ։ Այնուհետև սկսվում է սոցիալական հեղափոխությունների դարաշրջանը, որն ի վերջո ստեղծում է պատմության մեջ նոր՝ սոցիալիստական ապրելակերպ։ Քիչ ավելի յուրահատուկ է առանձին անհատների վերաբերմունքը սեփական ապրելակերպի նկատմամբ։ Այն կարող է համընկնել ապրելակերպին։ Անհատն այս դեպքում ապրում է առանց լուրջ սոցիալական ընդհարումների։ Հնարավոր է նաև, որ անհատը գիտակցորեն չյուրացնի սեփական ապրելակերպը, կամ սեփական արժույթների համակարգով չգնահատի այն։ Այս դեպքում էլ է անհատն ապրում առանց բախումների ու լուրջ ճգնաժամերի։ Չի բացառվում, որ անհատի հոգևոր կարողությունների հարստությունը, իդեալներն ու նպատակները չհամապատասխանեն գոյություն ունեցող ապրելակերպին։ Այդ դեպքում անհատը չի ընդունում իրեն պարտադրված ապրելակերպը և ըմբոստանում է դրա դեմ։ Ապրելակերպը սոցիալական լուրջ պրոբլեմ է դառնում հենց այն ժամանակ, երբ տեղի է ունենում օտարում անհատի և նրա ապրելակերպի միջև։

Ապրելակերպի հետ սերտորեն կապված են նաև կյանքի իմաստի ու նպատակի հարցերը։ Մարդու կյանքի իմաստը մարմնավորվում է նրա կենսագործունեության ոլորտում, որտեղ առավելապես զարգանում են անհատի գերազանցապես հասարակական նշանակություն ունեցող սոցիալական հատկանիշները։ Պարզ է, որ նման ըմբռնմամբ մարդու կյանքի իմաստը մարմնավորվում է նրա ապրելակերպում։ Բայց, քանի որ մինչև մարմնավորվելը կյանքի իմաստն ու նպատակը դրսևորվում են իդեալների ու գաղափարների ձևով և մեծապես պայմանավորված են անհատի սոցիալ-բարոյական ըմբռնումներով, ապա հենց դրանք էլ նրա մոտ ձևավորում են համապատասխան ապրելակերպ։

Ըստ մարքսիզմի, մարդկանց կենսաիմաստի հարցերը վերացական խորհրդակցություններով չեն լուծվում, այլ անհատի հասարակական կեցությամբ, կոնկրետ պատմական մոտեցմամբ, նրա պրակտիկ գործունեությամբ և այլն։ Մարքսիզմը գիտականորեն ցույց է տալիս մարդկանց շահագործման վերացման անհրաժեշտ ուղիները ու նշում նրանց միջև իսկական հումանիստական հարաբերությունների հաստատման անհրաժեշտությունը, «երբ յուրաքանչյուրի ազատ զարգացումը պայման է հանդիսանում բոլորի ազատ զարգացման համար» (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 4, стр. 145)։ Իսկ այդ տեղի է ունենում հասարակության մեջ և հասարակության միջոցով, որովհետև, ինչպես Մարքսն է նշում. «Միայն կոլեկտիվում է մարդը ձեռք բերում այնպիսի



միջոցներ, որոնք հնարավոր են դարձնում իր կարողությունների համակողմանի զարգացումը, և, հետևաբար, միայն կոլեկտիվում է հնարավոր անձնական ազատությունը» (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 3, стр. 75)։ Անհատի կյանքի իմաստն ու նպատակն իրականացվում, գնահատվում ու արժեքավորվում են հասարակության մեջ ներդրածով, հասարակական ու անձնական բարեկեցության բարձրացման ընդհանուր մակարդակով։ Իսկ ապրելակերպով որոշվում են այդ բարեկեցության բնույթն ու իրականացման եղանակը։ Եթե անհատական ու հասարակական շահերը համընկնում են, որի արդյունքը լինում է հասարակության բարեկեցության բարձրացումը, ապա այդ ապրելակերպը սոցիալիստական է։

Ապրելակերպի հետ սերտորեն կապված է հումանիզմի պրոբլեմը։ Հակամարտ հասարակարգերն իրենց էությամբ հակահումանիստական են, իսկ առանձին գաղափարախոսների հումանիզմն այդ հասարակարգերում հանդես է գալիս լավագույն իդեալի ձևով։ Սոցիալիստական ապրելակերպի պայմաններում կյանքում իրականացվում են հումանիզմի սկզբունքները։ Ավելի որոշակի ասած, սոցիալական կարգը սահմանում է մարդկանց ապրելակերպը։ Բայց այդ հասարակարգերը մարդկանց գործունեության արդյունք են և այդ գործունեությունից դուրս, որպես այդպիսին, գոյություն չունեն։ Հետևաբար, ինչպես նշում է Մարքսը, մարդն իր շրջապատող աշխարհն այնպես պետք է կառուցի, որպեսզի նրանում ճանաչի և յուրացնի ճշմարիտ մարդկայինը, որպեսզի նա իրեն մարդ զգա (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 9, стр. 145)։

Այժմ համառոտակի քննարկենք բուրժուական և սոցիալիստական ապրելակերպերին բնորոշ մի քանի առանձնահատկություններ։

Կապիտալի աշխարհում իսկական մարդկային գոյությունն աղավաղված է, քանի որ մարդու վրա իշխում են տնտեսական, քաղաքական, ուրբանիստական, բյուրոկրատական կարգի օտարումներ, որոնք ճնշում են մարդուն, զրկում ազատությունից, գոյության իսկական ձևից։ Իրավացի է ամերիկյան հայտնի հոգեբան և փիլիսոփա Է. Ֆրոմը, երբ ասում է, թե «սպառողական հասարակության» ապրելակերպի հիմնական հատկանիշը հոգեկան դատարկությունն է ու անձնազրկումը։

Իր բովանդակությամբ բուրժուական ապրելակերպը հակասական է, որովհետև կապիտալիստական հասարակությունում տիրում է համընդհանուր օտարում, որի պատճառով էլ ապրելակերպի բնորոշ գծերից մեկն էլ դառնում է ինդիվիդուալիզմը։ Իր կառուցվածքով բուրժուական ապրելակերպը նույնպես մարդկանց հարաբերությունները բաժանում է արտադրության ոլորտի և նրանից դուրս, այսինքն՝ աշխատաժամանակի և ազատ ժամանակի։ Այդ ոլորտները բոլորովին տարբեր են արտադրության սիստեմի տարբեր կողմերում կանգնած դասակարգերի համար։ Կապիտալիստական հասարակության մեջ կա երկու հակադիր ապրելակերպ, որոնցից մեկը իշխող ապրելակերպն է, իսկ մյուսը պրոլետարիատինն է, որը չհամակերպվելով իրեն պարտադրված ապրելակերպին, ակտիվորեն պայքարում է դրա դեմ։ Կա նաև միջանկյալ ապրելակերպ։ Դա վերաբերում է սոցիալական այն խավերին, որոնք, ինչպես նշում է Տ. Յարոշևսկին, ըմբոստանում են ընդդեմ «կայունացված անկարգության» և բոլոր այն փորձերի դեմ, որոնք այդ հասարակարգին տալիս են «աստծուց սահմանված կարգի» թվացողություն։ Նրանք, այդ հասարակության մեջ ունենալով հատուկ դիրք, ի վիճակի չեն հասկանալու և խրախուսելու բանվորական հեղափոխության շնորհիվ ստեղծված միջմարդկային հարաբերությունները։ Այդ բուրժուական կուլտուրայի ու սոցիալիզմի, հեղափոխության ու լիբերալիզմի, բուրժուազիայի և պրոլետարիատի միջև երկատված և XX դարի դրամատիկական պայքարի ու վերագնահատումների խառնարանը նետված մանրբուրժուական ինտելիգենտի ապրելակերպն է (տե՛ս Т. Ярошевский, Личность и общество. М., 1973, стр. 157), որի տեսական արտահայտությունը ժամանակակից էկզիստենցիալիզմն է։

Ըստ մանրբուրժուական մտածողության, ինֆորմացիայի մասսայական միջոցները համահարթում են մարդուն, միակերպ դարձնում նրանց ճաշակնե-

րը, հայացքները։ Առաջանում է մտքերի բթացում, որոշակի ապրելակերպ, որը երևան է գալիս դիմազրկությամբ։ Այդ ապրելակերպի ճգնաժամն էլ բուրժուական շատ մտածողներ թյուրիմացաբար նույնացնում են մարդկության կուլտուրայի ճգնաժամի հետ և հայտարարում մարդկության մայրամուտ։ Պարզ է, որ նման պայմաններում շատ ավելի ցավագին է ընկալվում սեփական ապրելակերպի անհեթեթ բնույթը, որը մանրբուրժուական ինտելիգենտի կողմից գնահատվում է որպես երջանկության կորուստ, իմաստազուրկ կյանք, որի հոգևոր արգասիքը ժամանակակից էկզիստենցիալիզմն է, արդի բուրժուական արվեստը, հիպիզմը և այլն։ Այս սոցիալական խավի իշխող մտայնությունը դառնում է հոռետեսությունը, իսկ բուրժուական աշխարհում վերջերս նկատվող պանսեքսուալիզմը՝ այդ հարցերին պատասխան տալուց խուսափելու միջոց։

Այդպիսի ապրելակերպը ծնում է հումանիզմի ցանկություն, ձգտում, բայց հումանիզմ՝ երբեք։ Կապիտալիստական և ընդհանրապես շահագործողական հասարակարգերը հակահումանիստական են։

ՍՄԿԿ XXV համագումարում խոսելով սովետական իրականության, սոցիալիստական կարգի ունեցած ուղու մասին, Լ. Ի. Բրեժնևը նշեց, որ դրա գլխավոր արդյունքներից մեկն էլ մեր սովետական ապրելակերպն է։ «Իսկական կոլեկտիվիզմի ու ընկերականության մթնոլորտ, երկրի բոլոր ազգերի ու ժողովուրդների համախմբվածություն, բարեկամություն, որոնք օրեցօր ամրապնդվում են, բարոյական առողջություն, որը մեզ դարձնում է զորեղ, տոկուն՝ այսպիսիք են մեր ապրելակերպի վառ կողմերը, այսպիսիք են սոցիալիզմի մեծ նվաճումները, որոնք դարձել են մեր իրականության ուղնուծուծը» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 131)։

Սոցիալիստական ապրելակերպն ամենից առաջ բնութագրվում է սոցիալիստական հասարակության տնտեսակարգով։ Փոխելով սեփականության ձևը, հասարակության սոցիալական կառուցվածքը, ստեղծելով բոլորովին նոր գաղափարախոսություն, սոցիալիզմը ձևավորում է ապրելակերպի և մարդկային փոխհարաբերությունների նոր տիպ։

Իր բովանդակությամբ սոցիալիստական ապրելակերպը միասնական է և ունի կոլեկտիվիստական բնույթ, որովհետև կա անհատական և հասարակական շահերի ու նպատակների միասնություն, որովհետև այն հումանիստական իդեալը, որին նվիրվել են մարդիկ և որով իմաստավորել իրենց կյանքը, ցանկալի է բոլորի համար։ Սոցիալիստական ապրելակերպը բնութագրվում է նաև բարձր գիտակցականությամբ։ Մարդկանց ողջ գործունեությունը ձեռք է բերում գիտակցական բնույթ, դուրս են մղվում տարերայնությունն ու շրջապատող երևույթների նկատմամբ ունեցած անտեղյակությունը։ Սոցիալիստական ապրելակերպը նաև ինտերնացիոնալ բնույթ ունի։ Այն մարդկանց, տարբեր ազգերի այնպիսի հաղորդակցություն է, որի հիմնական տարրերը փոխադարձ համագործակցումն է, փոխըմբռնումը և փոխադարձ հարգանքը։

Իր կառուցվածքով սոցիալիստական ապրելակերպն ընդգրկում է կենսագործունեության բոլոր այն ձևերը, որոնք համապատասխանում են սոցիալիզմի էությանը։ Այդ ապրելակերպը, ինչպես մյուս ֆորմացիաներում, դրսևորվում է արտադրության ոլորտում և ազատ ժամանակում։ Ինչպես արդեն նշել ենք, ապրելակերպը շատ դեպքերում որոշվում է նրանով, թե մարդն ինչ վերաբերմունք ունի աշխատանքի նկատմամբ։ Եթե կապիտալիստական ֆորմացիայում այդ վերաբերմունքը բացասական է, ապա սոցիալիզմի պայմաններում ձևավորվում է աշխատանքի նկատմամբ բոլորովին այլ վերաբերմունք։ Սոցիալիստական ապրելակերպի առաջին պայմանը աշխատանքի ազատագրումն է, իսկ կոմունիստական ապրելակերպի պայմաններում աշխատանքը հանդես է գալու որպես մարդու իսկական ստեղծագործական ազատություն։ Աշխատաժամանակի կրճատումը և ազատ ժամանակի ավելացումը սոցիալիզմի հումանիստական իդեալներից են, որովհետև ինչպես Մարքսն է նշում, ազատ ժամանակը հասարակության հարստության չափանիշն է։ Նրա կարծի-



քով, նյութական արտադրության մյուս կողմում «սկսվում է մարդկային անհատի զարգացումը, որն ինքնանպատակ է, ազատության իսկական թագավորություն, որը, սակայն, կարող է փթթել միայն անհրաժեշտության թագավորությունում, որպես իր բազիսի։ Աշխատանքային օրվա կրճատումը հիմնական պայմանն է» (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 25, ч. 2, стр. 386—387)։

Սոցիալիստական հասարակարգում ապրելակերպի կատարելագործումը հնարավոր չէ պատկերացնել առանց հասարակական կյանքի բոլոր կողմերի ներդաշնակ զարգացման։ Այս իմաստով «Տասներորդ հնգամյակի գլխավոր խնդիրն է՝ հետևողականորեն իրականացնել ժողովրդի կյանքի նյութական և կուլտուրական մակարդակը բարձրացնելու կոմունիստական կուսակցության կուրսը՝ հանրային արտադրության դինամիկ ու համամասնական զարգացման և նրա արդյունավետության բարձրացման, գիտատեխնիկական առաջընթացի արագացման, աշխատանքի արտադրողականության բարձրացման, ժողովրդական տնտեսության բոլոր օղակներում աշխատանքի որակի բստ ամենայնի բարելավման հիման վրա» (ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1976—1980 թվականների հիմնական ուղղությունները, էջ 14)։ Անցած հնգամյակի ընթացքում զգալի քայլեր արվեցին սովետական մարդկանց նյութական և հոգևոր պահանջմունքների բավարարման ասպարեզում։ Բնակչության մեկ շնչին ընկնող ռեալ եկամուտներն ավելացան 24 տոկոսով։ Բանվորների ու ծառայողների աշխատավարձը աճեց միջին հաշվով 20, իսկ կոլտնտեսականների աշխատանքի վարձատրությունը՝ 25 տոկոսով։ Իններորդ հնգամյակում կառուցվել են մոտ 11 մլն բնակարան և անհատական տներ՝ 544 մլն քմ տարածությամբ։ 1970 թ. տվյալներով, ՍՍՀՄ-ում քաղաքային բնակչության ընդհանուր տոկոսը հասել է 67,9-ի, ընդ որում, Հայաստանում՝ 65, Էստոնիայում և Լատվիայում՝ 50—59, Ուկրաինական, Բելոռուսական, Վրացական, Ադրբեջանական հանրապետություններում՝ 40—49 տոկոսի։ Այս ամենի շնորհիվ քաղաքայնացվում է (ուրբանիզացիա) մեր կյանքի ողջ դրվածքը, վերանում են գյուղական և քաղաքային բնակչության շրջանում եղած կենցաղային ձևերի ավանդական տարբերությունները։

Տասներորդ հնգամյակում նախատեսվում է բանվորների և ծառայողների միջին աշխատավարձը ավելացնել 16—18 տոկոսով և հնգամյակի վերջին հասցնել 170 ռուբլու։ Կոլտնտեսականների եկամուտները բարձրացնել 24—27 տոկոսով։ Պետք է կառուցվեն բնակելի տներ՝ 550 մլն քմ ընդհանուր մակերեսով։ Է՛լ ավելի պետք է զարգանա և կատարելագործվի առողջապահության նյութական բազան։ 1980 թ. հիվանդանոցային մահճակալների ընդհանուր թիվը կհասնի 3,3 մլն-ի։

Այս հնգամյակում նախատեսվում է աշխատավորության կրթության ու կուլտուր-տեխնիկական մակարդակի աճ, բուժսպասարկման բարելավում, շրջակա միջավայրի պահպանության ուժեղացում, երեխաների դաստիարակության և մարդու կյանքի ու գործունեության տևողության մեծացման առավել բարենպաստ պայմանների ստեղծում։ Պետք է շարունակվեն սովետական հասարակության տարբեր սոցիալական խմբերի, գյուղի ու քաղաքի բնակիչների բարեկեցության ու կուլտուրայի միջև եղած տարբերությունների վերացման նպատակով տարվող աշխատանքները։ Նախատեսվում է առավել լայնորեն օգտագործել սոցիալիստական դեմոկրատիայի ընձեռած հնարավորությունները, աշխատավորների հասարակական ակտիվությունն ու նախաձեռնությունը։

Ապրելակերպի ձևավորման գործում մեծ դեր են խաղում ընտանիքն ու կենցաղը։ Իսկ սովետական ընտանիքում և կենցաղում հսկայական դեր ունեն կանայք, որոնց մասնակցության տոկոսը հասարակական գործունեության ասպարեզում հետզհետե մեծանում է։ 1974 թ. տվյալներով ՍՍՀՄ-ում արտադրության մեջ աշխատողների 49 տոկոսը կանայք են, գյուղատնտեսության մեջ նրանց բաժինը հասնում է 44, առևտրի, հասարակական սննդի, նյութատեխնիկական մատակարարման բնագավառներում՝ 76, առողջապահության, սոցիալական ապահովագրության՝ 84, լուսավորության բնագավառում՝ 73 տո-

կոսի և այլն (տե՛ս Женщина в СССР, М., 1975, стр. 33, 61)։ Ընդլայնվում է հասարակական սննդի, մսուր-մանկապարտեզների, առողջապահական հիմնարկությունների ցանցը, որի շնորհիվ հեշտ նվազում է տնային տնտեսության մեջ մարդկանց զբաղվածության աստիճանը։ Ընտանիքներն ավելի շատ ժամանակ են ունենում իրենց հանգստի կազմակերպման, գեղագիտական ճաշակի ու բարոյական պատկերացումների զարգացման համար։ Իսկ այդ մեծ դեր է խաղում ընտանիքի անդամների արժութային կողմնորոշման գործում և, վերջին հաշվով, հանգեցնում սոցիալիստական ապրելակերպի կայունացած ձևերի վերարտադրությանը։ Այս բոլորի վրա հսկայական ազդեցություն է ունենում նոր սոցիալիստական մշակույթը, որի շնորհիվ սոցիալիստական ապրելակերպի առանձնահատկություններից մեկն էլ դառնում է հասարակության անդամների մեծ կուլտուրան։

Իր բնույթով սոցիալիստական ապրելակերպը համընկնում է սոցիալիստական արտադրաեղանակի հետ և ընդհանուր է հասարակության բոլոր անդամների համար։ Իհարկե, կան նաև քաղքենիական ապրելակերպի տեր մարդիկ, որոնց համար մարդը գնահատվում է ոչ թե իր սոցիալական ու բարոյական արժույթներով, այլ նրանից սպասվելիք օգուտով։ Նրանց համար իրը ոչ թե որոշակի պահանջմունքների բավարարման միջոց է, այլ մյուսներից տարբերվելու, նրանց նկատմամբ իրենց թվացող առավելությունը ցուցադրելու խորհրդանշան։ Բայց այդ ապրելակերպը մեր երկրում իշխող չէ և սոցիալիստական ապրելակերպում որակ չի կազմում։ Սոցիալիստական ապրելակերպը, որ զարգանում է կոմունիստական ապրելակերպի ուղղությամբ, ստեղծում է կյանքի իմաստավորման պայմաններ, իրականացնում է հումանիզմի սկզբունքները, հնարավորություն ընձեռում, որպեսզի անհատն ապրի լիարժեք կյանքով, զարգանա համակողմանիորեն։

Խոսելով սոցիալիստական ապրելակերպի և հումանիզմի փոխհարաբերության մասին, պետք է նշել, որ գաղափարական պայքարում այժմ առավել սրությամբ են դրվում ապրելակերպի ըմբռնման ու մեկնաբանման, հումանիզմի, մարդու իրավունքների պրոբլեմները։ Ներքին և արտաքին քաղաքականության շատ բնագավառներում կանգնելով փակուղու առջև, իմպերիալիստական մի շարք տերություններ կեղծ հեղինակություն ձեռք բերելու նպատակով պետական քաղաքականության աստիճանի են բարձրացնում և քննարկում մարդու իրավունքների ու հումանիզմի հարցերը։ Վերլուծության ենթարկելով և քննադատելով դրանց դրվածքը Սովետական Միությունում, նրանք թմբկահարում են բուրժուական աշխարհի սոցիալական չափանիշները, ներկայացնելով դրանք որպես հումանիզմի դրսևորումներ։ Բուրժուական հասարակության առանձին քննադատներ, ռեֆորմիստներ, ռևիզիոնիստներ, կրոնական մտածողության ներկայացուցիչներ նույնպես իրենց տեսությունները փորձում են ներկայացնել որպես «իսկական» և ընդհակառակը՝ սոցիալիստականը որպես «ոչ իսկական» հումանիզմի արտահայտություն։

Մինչդեռ իրականում միայն սոցիալիստական հումանիզմն է, որ առաջին անգամ բարձրացնում է իրականության վերակառուցման հարցը՝ հասարակության զարգացման օբյեկտիվ ընթացքը գնահատելու տեսանկյունից։ Հումանիզմ պարունակող մյուս ուղղություններն իրականության վերափոխման գիտական, շատ դեպքերում նույնիսկ դրական ծրագիր չունեն։ Նրանք կամ չհիմնավորված ծրագրեր են առաջադրում (ռևիզիոնիստներ), կամ մխիթարում են՝ հարցի լուծումը տեղափոխելով մյուս աշխարհ (կրոնականներ), կամ էլ անիծում այս աշխարհը (էկզիստենցիալիստներ)։

Հոկտեմբերյան հեղափոխությունից հետո ձևավորվեց ապրելակերպի բոլորովին նոր տիպ, որը պայմաններ ստեղծեց իսկական հումանիզմի իրականացման համար։ Այս առումով սոցիալիստական հումանիզմը միակն է, որ նյութական մարմնավորում է ստանում, միակը, որ մարդուն դիտում է որպես կոնկրետ, որոշակի սոցիալական միջավայրի, որոշակի դասակարգային պատկանելության կրող, որպես կոնկրետ սոցիալ-պատմական պայմանների ծնունդ, որոշակի ապրելակերպի ներկայացուցիչ։ Մնացած ուղղություններում



մարդը դիտվում է, ընդհանրապես, որպես վերդասակարգային, միատարր սոցիալական կազմի որոշակի մասնիկ։

Սոցիալիստական հումանիզմը կոլեկտիվիստական է, որովհետև հենվում է անհատի ու կոլեկտիվի, անհատի ու հասարակության ամուր դաշինքի վրա։ Մնացած ուղղություններում հումանիզմը խիստ ինդիվիդուալիստական է։ Այս ամենից բխում է, որ եթե սոցիալիզմը կյանքում վստահորեն իրականացնում է հումանիզմի սկզբունքները, ապա բուրժուական հասարակարգն իր էությամբ հակահումանիստական է։ Դրանում էլ կրկին դրսևորվում են սոցիալիստական ապրելակերպի առավելությունները բուրժուականի նկատմամբ։

Ընկեր Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXV համագումարում նշեց, որ սովետական ժողովուրդն ամեն ինչ անում է, որպեսզի լուծվեն կուսակցության առջև դրված խնդիրները։ Դա վերաբերում է ամենից առաջ «...սովետական մարդկանց բարեկեցության հետագա բարձրացմանը, նրանց աշխատանքի ու կենցաղի պայմանների բարելավմանը, առողջապահության, կրթության, կուլտուրայի զգալի առաջադիմությանը՝ այն ամենին, ինչը նպաստում է նոր մարդու ձևավորմանը, անհատի համակողմանի զարգացմանը, սոցիալիստական ապրելակերպի կատարելագործմանը» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 60)։

Այս մտքերն իրենց արտացոլումն են գտել նաև ՍՍՀՄ նոր Սահմանադրությունում։ Այնտեղ նշված է, որ սոցիալիզմը ստեղծում է հզոր արտադրաուժեր, առաջավոր գիտություն ու կուլտուրա, որտեղ մշտապես աճում է ժողովրդի բարեկեցությունը, ավելի բարենպաստ պայմաններ են ստեղծվում անհատի համակողմանի զարգացման, սոցիալիստական ապրելակերպի կատարելագործման համար։ Սոցիալիզմն իսկական դեմոկրատիայի հասարակություն է, որի քաղաքական սիստեմն ապահովում է բոլոր հասարակական գործերի արդյունավետ կառավարումը, աշխատավորների առավել ակտիվ մասնակցությունը պետական կյանքին, քաղաքացիների ռեալ իրավունքների և ազատությունների զուգակցումը նրանց պարտականությունների և հասարակության հանդեպ նրանց պատասխանատվության հետ։

# ԿՈՄՈՒՆԻՍՏՆԵՐԻ ԱՌԱՋԻՆ ԾՐԱԳՐԱՅԻՆ ՓԱՍՏԱԹՈՒՂԹԸ

## (ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ՄԱՆԻՖԵՍՏԻ ԼՈՒՅՍԸՆԾԱՅՄԱՆ 130-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ)

**Ռ. Լ. ՄՈՎՍԻՍՅԱՆ**
Պատմական գիտությունների թեկնածու, դոցենտ

ՄԱՐԴԿԱՅԻՆ հասարակության պատմությունը չգիտե հասարակական-քաղաքական մի այլ ուսմունք, որը համաշխարհային զարգացման ընթացքի, աշխատավոր մարդու, ժողովուրդների ու ազգերի ճակատագրի, նրանց ներկայի ու ապագայի վրա ունենար այնպիսի ներգործություն, ինչպիսին գիտական կոմունիզմի ուսմունքն է: Կոմունիզմի գաղափարները, որոնք ներգործել են աշխարհի բոլոր ժողովուրդների վրա, դարձել են կեղեքչական կարգերը վերափոխող անպարտելի ուժ, սոցիալական պրոգրեսի մեծ առաջընթացի լոկոմոտիվը: Ահա թե ինչու այդ ուսմունքի հիմնադիրները՝ Կ. Մարքսն ու Ֆ. Էնգելսը, իրավամբ կոչվում են պրոլետարիատի ազատագրական կռվի անմահ ռահվիրաներ:

1847 թ. եվրոպական բանվորների ստեղծած կոմունիստների միության լոնդոնյան կոնգրեսը հանձնարարեց նրանց մշակելու միության համար տեսական ու գործնական նշանակություն ունեցող ծրագիր: Կատարելով միության հանձնարարությունը, 1848 թվականի փետրվարին նրանք ներկայացրին այդ ծրագիրը, կոչելով այն **Կոմունիստական կուսակցության մանիֆեստ**: Դա մարքսիզմի, բանվորական առաջին միջազգային կազմակերպության ծավալուն ծրագրային փաստաթուղթն էր, որը կոչված էր բախտորոշ դեր խաղալու պրոլետարիատի ազատագրական պայքարում:

**Մանիֆեստն** առաջին անգամ լույս տեսավ գերմաներեն, 1848 թ. փետրվարին, իսկ ապա՝ եվրոպական այլ լեզուներով: Այն ռուսերեն առաջին անգամ լույս տեսավ 1860-ական թվականների սկզբին (Բակունինի թարգմանությամբ), իսկ հայերեն՝ 1904 թ. (Ստ. Շահումյանի, Մ. Մանուչարյանի թարգմանությամբ):

**Կոմունիստական կուսակցության մանիֆեստի** բազում լեզուներով հրատարակվելը և տարածումն ամբողջ աշխարհում վկայում էր այն մասին, որ բոլոր երկրների պրոլետարներն այն համարում էին իրենց սոցիալական և ազգային-ազատագրական պայքարի ուղեցույց:

Ֆ. Էնգելսի գնահատմամբ **Մանիֆեստի** գաղափարների կորիզը կազ-



մող հիմնական դրույթը մարդկային հասարակության ողջ զարգացման վերընթաց բնույթի, դասակարգային պայքարի միջոցով հասարակական-տնտեսական ֆորմացիաների անխուսափելի փոփոխման գիտական հիմնավորումն է: «Այդ դրույթի էությունն այն է,— գրել է Ֆ. Էնգելսը **Մանիֆեստի** 1888 թ. անգլերեն հրատարակության առաջաբանում,— որ յուրաքանչյուր պատմական դարաշրջանում տնտեսական արտադրության ու փոխանակության գերակշռող եղանակը և հասարակության՝ նրանով անհրաժեշտորեն պայմանավորված կառուցվածքն այն հիմքն են կազմում, որի վրա խարըսխվում է այդ դարաշրջանի քաղաքական պատմությունը և նրա մտավոր զարգացման պատմությունը...»: Մեկնելով այդ իրողությունից, նշված ծրագրային երկի հեղինակներն առանձնապես շեշտեցին, որ մարդկային ողջ պատմությունը եղել է շահագործող և շահագործվող, տիրող և կեղեքվող դասակարգերի կռվի պատմություն, որ այդ կռիվն այժմ հասել է զարգացման այն աստիճանին, երբ կեղեքվող դասակարգը՝ պրոլետարիատը, այլևս չի կարող իրեն ազատագրել բուրժուազիայի լծից, առանց դրա հետ միասին շահագործումից ընդմիշտ ազատագրելու ողջ մարդկությանը:

Մարդկային հասարակության դիալեկտիկ զարգացման վերաբերյալ **Մանիֆեստի** այդ եզրահանգումը, Ֆ. Էնգելսի արտահայտությամբ, պատմության համար այնպիսի նշանակություն ունի, ինչպիսին ունեցավ Դարվինի տեսությունը կենսաբանության համար:

Գիտականորեն հիմնավորելով կապիտալիստական հասարակության կործանման օբյեկտիվ անխուսափելիությունը և այն կոմունիստական հասարակությամբ փոխարինելու անհրաժեշտությունը, Մարքսն ու Էնգելսը ցույց տվեցին, որ դրա պատճառը ո՛չ միայն այն էր, որ կոմունիզմը՝ որպես հասարակական ուժ, արդեն ճանաչվում էր Եվրոպայում, այլև գլխավորապես այն, որ կոմունիստական հասարակությունը համապատասխանում էր մարդկության մեծամասնության շահերին և կոչված էր փոխարինելու կապիտալիզմին, ապահովելու հասարակության հետագա զարգացումը:

Կ .Մարքսի և Ֆ. Էնգելսի պատմական մեծագույն ծառայություններից մեկն այն է, որ նրանք, ինչպես **Կոմունիստական կուսակցության մանիֆեստում**, նմանապես և իրենց այլ աշխատություններում, հետևողականորեն քննադատելով մարդկանց գիտակցությունը մթագնող կեղծ սոցիալիստական ուսմունքները, **սոցիալիզմը դարձրին իրոք գիտական ուսմունք:** Նրանք մեծագույն ճշգրտությամբ կանխագծեցին ապագա սոցիալիստական հասարակության դասակարգային, քաղաքական, տնտեսական, սոցիալական, կուլտուրական և բարոյական այն կերպարը, որը հարյուր տարի հետո դարձավ ռեալ իրականություն:

Բայց Մարքսն ու Էնգելսը չսահմանափակվեցին ապագա սոցիալիստական հասարակության նկարագրով և նրա ստեղծման օբյեկտիվ անխուսափելիության հիմնավորումով: Նրանք հանճարեղորեն բացահայտեցին հասարակական-քաղաքական այն ուժերը, որոնք կոչված էին կործանելու կապիտալիզմը և նրա փլատակների վրա կառուցելու սոցիալիզմը: Այդ իմաստով **Կոմունիստական կուսակցության մանիֆեստի** տեսական ու գործնական նշանակություն ունեցող հիմնարար դրույթներից մեկը կապիտալիստական հասարակության կործանման և կոմունիստական հասարակության ստեղծման գործում **բանվոր դասակարգի համաշխարհային պատմական հեղափոխական դերի հիմնավորումն է:** «Այժմ բուրժուազիայի դեմ կանգնած բոլոր դասակարգերից միայն պրոլետարիատն է իսկապես հեղափոխական դասակարգ...», ասված է **Մանիֆեստում** («Հայաստան» հրատ., 1973 թ., էջ 67):

Բուրժուական հասարակությունում բանվոր դասակարգի միակ և մինչև վերջ հեղափոխական դասակարգ լինելը Մարքսի և Էնգելսի սուբյեկտիվ մըտահղացման արդյունքը չէր, այլ օբյեկտիվ օրինաչափություն, որն ունի իր խոր սոցիալ-տնտեսական և քաղաքական-գաղափարական արմատները: Լինելով բուրժուական հասարակությունում միակ սեփականազուրկ դասակարգը, ամենից շատ նա է շահագրգռված արտադրության միջոցների մասնավոր սեփականության վրա խարսխված կապիտալիստական հասարակության կործանմամբ և հանրա-

յին ընդհանուր սեփականության վրա խարսխված սոցիալիստական հասարակության ստեղծմամբ: Կապիտալիզմի զարգացման հետևանքով աշխատավորական մյուս դասակարգերի պես նա ոչ թե քայքայվում ու կործանվում է, այլ ավելի է աճում ու հզորանում, դառնում բուրժուազիայի իրական գերեզմանափորը: Իր սոցիալական, տնտեսական, քաղաքական և աշխատանքային պայմաններով նա ամենից շատ է հակված կազմակերպման, համախմբման ու միավորման: Վերջապես, նրա հեղափոխական պայքարը բուրժուական հասարակության տապալման համար չի սահմանափակվում միայն իր շահերով: Պրոլետարիատը պայքարում է նաև հասարակության հսկայական մեծամասնությունը կազմող աշխատավորական, կեղեքվող ու ճնշվող մյուս շերտերի սոցիալական ազատագրության համար: Իսկ այդ նշանակում է, որ նա միակ հասարակական ուժն է, որ արտահայտելով մեծամասնության շահերը, կարող է իր ետևից տանել աշխատավորական մյուս դասակարգերին:

**Մանիֆեստում** իր հստակ ձևակերպումն է ստացել նաև **սոցիալիստական հեղափոխության իրականացման միջոցով պրոլետարիատի դիկտատուրայի հաստատման մասին մարքսիզմի հիմնարար գաղափարը: Մանիֆեստում** կարդում ենք.

«...Բանվորական հեղափոխության մեջ առաջին քայլը պրոլետարիատի՝ տիրող դասակարգ դառնալն է, դեմոկրատիայի նվաճումը: Պրոլետարիատն իր քաղաքական տիրապետությունը կօգտագործի նրա համար, որպեսզի բուրժուազիայից քայլ առ քայլ խլի ամբողջ կապիտալը, արտադրության բոլոր գործիքները կենտրոնացնի պետության, այսինքն՝ որպես տիրող դասակարգ կազմակերպված պրոլետարիատի ձեռքում, և ըստ հնարավորին արագ մեծացնի արտադրաուժերի գումարը» (նույն տեղը, էջ 81):

**Մանիֆեստի** պատմական նշանակություն ունեցող դրույթներից մեկը **պրոլետարիատի հեղափոխական կուսակցության ստեղծման անհրաժեշտության հիմնավորումն է:** Որպեսզի պրոլետարիատը կարողանա սոցիալական հեղափոխության միջոցով կատարել կապիտալիզմի տապալման իր համաշխարհային պատմական դերը, նշել են Մարքսն ու Էնգելսը, անհրաժեշտ է, որպեսզի նա ամենից առաջ կազմակերպվի «որպես դասակարգ և դրանով իսկ որպես քաղաքական կուսակցություն...» (նույն տեղը, էջ 66): Այլ կերպ չէր կարող լինել, որովհետև պրոլետարիատը բուրժուազիային տապալելու, նրան տնտեսական ու քաղաքական տիրապետությունից զրկելու, նրա ռազմաքյուրոկրատական շահագործողական պետական ապարատը ջարդ ու փշուր անելու այլ ուժ և միջոց չունի, բացի կազմակերպվածությունից՝ որպես քաղաքական կուսակցություն կազմակերպվելուց:

Սակայն Մարքսն ու Էնգելսը չսահմանափակվեցին պրոլետարիատի քաղաքական կուսակցության ստեղծման անհրաժեշտության հիմնավորումով: Նրանք շարադրեցին նաև կոմունիստների կուսակցության ծրագրային հիմնական պահանջները, նրա տակտիկայի ու ստրատեգիայի, ինչպես նաև կազմակերպման գլխավոր սկզբունքները: Կոմունիստների կուսակցությունը, նշված է **Մանիֆեստում,** բացի պրոլետարիատի շահերից, այլ շահեր չունի և չի ստեղծվել որպես բանվորական մյուս կուսակցություններին լոկ հակադրվող հատուկ կուսակցություն: Այն պրոլետարական մյուս կուսակցություններից տարբերվում է միայն նրանով, որ անկախ ազգությունից պաշտպանում է ամբողջ պրոլետարիատի ընդհանուր շահերը, բուրժուազիայի դեմ պրոլետարիատի կողմից մղվող պայքարի բոլոր աստիճաններում էլ հանդիսանում է ամբողջ շարժման շահերի ջատագովը, նրա մերձավորագույն նպատակը բուրժուազիայի տիրապետության տապալումը և պրոլետարիատի կողմից քաղաքական իշխանության նվաճումն է: «Կոմունիստները, հետևաբար, գործնականում հանդիսանում են բոլոր երկրների բանվորական կուսակցությունների ամենավճռական, միշտ դեպի առաջ շարժվելու դրդող մասը, իսկ թեորեական տեսակետից՝ պրոլետարիատի մնացած մասի հանդեպ նրանց առավելությունը պրոլետարական շարժման պայմանները, ընթացքը և ընդհանուր հետևանքները հասկանալու մեջ է» (նույն տեղը, էջ 72):

**Կոմունիստական կուսակցության մանիֆեստն** ամբողջապես տոգորված է պրոլետարական ինտերնացիոնալիզմի գաղափարով: Կապիտալն ինքը ինտերնացիոնալ ուժ է, և այդ ուժին պրոլետարիատը կարող էր հակադրել միայն ու միայն իր ինտերնացիոնալ ուժը: Մարքսն ու Էնգելսն ամեն մի երկրի պրոլետարիատի պայքարն իր ազգային բուրժուազիայի դեմ և բոլոր երկրների պրոլետարների պայքարը միջազգային բուրժուազիայի դեմ տեսնում էին դիալեկտիկական միասնության մեջ: Յուրաքանչյուր երկրի պրոլետարիատի պայքարը սեփական բուրժուազիայի դեմ լինելով ձևով ազգային, բովանդակությամբ ինտերնացիոնալ է: «Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք» լոզունգը, որով նրանք ավարտում են **Մանիֆեստը,** ֆրազ չէ, այլ՝ ստրատեգիական ու տակտիկական դրույթ, առանց որի կենսագործման պրոլետարները չեն կարող հաղթանակ տանել բուրժուազիայի նկատմամբ:

***

**Կոմունիստական կուսակցության մանիֆեստի** անմահ գաղափարներն ավելի քան հարյուրամյա գաղափարական-քաղաքական դաժան պայքարում պաշտպանեցին, ստեղծագործորեն զարգացրին և ռեալ իրականություն դարձրին միջազգային պրոլետարիատի բազում ջոկատներ: Այդ պայքարի ավանգարդում էր ռուսաստանյան բազմազգ պրոլետարիատը՝ բոլշևիկների կուսակցության ղեկավարությամբ, իսկ նրա առաջնորդ Լենինը դարձավ Մարքսի և Էնգելսի գործի հանճարեղ շարունակողը, իմպերիալիզմի և պրոլետարական հեղափոխությունների դարաշրջանում մարքսիզմի գիտական զարգացնողը:

**Մանիֆեստի** հրապարակ գալու օրից ի վեր մարդկության հեղափոխական պրոգրեսիվ բոլոր շարժումները գըտնըվում են մարքսիզմ-լենինիզմի անմար ջահի վառ լուսավորության ներքո: Հետմանիֆեստյան համաշխարհային զարգացման բոլոր կարևոր իրադարձությունները, այդ թվում և մեծ՝ Հոկտեմբերի հաղթանակը, մեկընդմիշտ ապացուցեցին գիտական կոմունիզմի գաղափարների ճշմարտացիությունն ու անպարտելիությունը, **Մանիֆեստի** բոլոր հիմնարար դրույթների կենսունակությունն ու հրատապությունը:

**Կոմունիստական կուսակցության մանիֆեստում** հեղափոխական ջերմ պաթոսով շարադրված գիտական կոմունիզմի անմահ գաղափարների վառ կոթողը սոցիալիստական համագործակցության սիստեմի անսասանությունն է, նրա հարատև զարգացումն ու բարգավաճումը:

Հայտնի է, որ Մարքսն ու Էնգելսը, հետագայում և Լենինը, կապիտալիզմից կոմունիզմին անցումը համարում էին որպես աստիճանական զարգացման պրոցես: Նրանք գտնում էին, որ անցումը կոմունիզմին պետք է սկսվի նրա առաջին փուլով՝ սոցիալիզմով, որը հաստատվելուց հետո աստիճանաբար պետք է ամրանա, զարգանա, կատարելագործվի, հասունանա և վերաճի կոմունիզմի:

Սովետական ժողովուրդը լենինյան կուսակցության գլխավորությամբ պատմական կարճ ժամանակաշրջանում, ընդամենը 20 տարում, լուծեց կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու խնդիրը, թեև նա հարկադրված եղավ սոցիալիզմը կառուցել իմպերիալիստական թշնամական շրջապատման պայմաններում, հաղթահարելով ներքին և արտաքին, ռազմական ու տնտեսական և բազմաթիվ այլ դժվարություններ:

Սակայն 1930-ական թվականներին մեր երկրում կառուցված սոցիալիզմը տեխնիկատնտեսական և հասարակական հարաբերությունների զարգացման մակարդակով դեռևս հասուն չէր: Պետք եղավ ևս 30—40 տարի, որպեսզի սովետական ժողովրդի ստեղծագործական ջանքերի շնորհիվ սոցիալիզմը մեր երկրում համակողմանի ամրապնդվեր, կատարելագործվեր և վերածվեր զարգացած, հասուն սոցիալիզմի, որի հիմնական ու գլխավոր գծերն են.

— բարձր զարգացած արտադրաուժերի, հզոր, առաջավոր ինդուստրիայի և կոլեկտիվիստական սկզբունքի վրա խարսխված մեքենայացված գյուղատնտեսության առկայությունը.

— բարձր զարգացած գիտության, կուլտուրայի, արվեստի առկայությունը.

— սովետական մարդկանց նյութա-

կան և հոգևոր անհամեմատ բարձր մակարդակը.

— սոցիալիզմի տնտեսական հիմքը կազմող սոցիալիստական սեփականության երկու ձևերի անշեղ մերձեցումը և սոցիալիստական էկոնոմիկայի հանրայնացման անհամեմատ բարձր մակարդակը.

— բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության, ժողովրդական մտավորականության տնտեսական, կուլտուր-կրթական և գաղափարական մակարդակների համահարթումը և մերձեցումը.

— սովետական ազգերի համակողմանի մերձեցման բազայի վրա սոցիալական և ինտերնացիոնալ պատմականորեն նոր հանրության՝ սովետական ժողովրդի կազմավորումը.

— պրոլետարիատի դիկտատուրայի պետության վերաճումը համաժողովրդական սոցիալիստական պետության.

— համակողմանի զարգացած սոցիալիստական դեմոկրատիայի առկայությունը, հասարակական և պետական կյանքի բոլոր ոլորտների կառավարման գործում ժողովրդական լայն զանգվածների ակտիվության և ընդգրկման աստիճանի բարձրացումը.

— սովետական հասարակության քաղաքական կառուցվածքի բոլոր լծակների՝ կուսակցության, սովետների, արհմիության, կոմերիտմիության, կոոպերատիվ և հասարակական կազմակերպությունների դերի բարձրացումը հասարակական կյանքի բոլոր ոլորտներում և այլն:

Կառուցելով զարգացած, հասուն սոցիալիզմ, սովետական ժողովուրդը, լենինյան կուսակցության ղեկավարությամբ, հաջողությամբ լուծում է սոցիալիզմից աստիճանաբար կոմունիզմին անցնելու պրոբլեմները: Դրա վառ երաշխիքներից մեկը զարգացած սոցիալիզմի նոր Սահմանադրության ընդունումն էր, որը, ինչպես նշում է Լ. Ի. Բրեժնևը «...ավանդ է ներդնում սոցիալիզմի կառուցման տեսության մեջ և ինտերնացիոնալ պրակտիկայում, դրանք հարստացնելով պատմության մեջ առաջին համաժողովրդական սոցիալիստական պետության կազմակերպման փորձով» (**Լենինյան ուղիով**, № 11, 1977 թ., էջ 35):

Կապիտալիզմի տապալման և սոցիալիստական հասարակության ըստեղծման մարքսիստական գաղափարն իր նյութական մարմնավորումն է գտել նաև սոցիալիզմի համաշխարհային սիստեմի բոլոր երկրներում: Հոկտեմբերյան հեղափոխությունից հետո միջազգային բուրժուազիան մեր երկրում ստեղծված պրոլետարական առաջին իշխանության պահպանման և ամրապնդման մեջ տեսավ իր ապագա կործանումը: Ուստի, նախաձեռնելով ինտերվենցիա, քաղաքացիական պատերազմ սանձազերծեց երիտասարդ սովետական իշխանության դեմ՝ ձգտելով ամեն կերպ տապալել այն և Ռուսաստանում վերականգնել բուրժուական կարգերը: Պարտություն կրելով, սակայն, նա չհրաժարվեց իր ծրագրից: 1941 թ. նոր պատերազմ սանձազերծեց ՍՍՀՄ-ի դեմ, կրկին իր գլխավոր նպատակը դարձնելով սովետական կարգերի խորտակումը: Այդ իմաստով համաշխարհային երկրորդ պատերազմը ո՛չ միայն պատերազմ էր պետությունների միջև, այլև սոցիալական պատերազմ՝ երկու սիստեմների միջև:

Բայց, եթե առաջին համաշխարհային պատերազմն արագացրեց սոցիալիստական հեղափոխության հաղթանակը Ռուսաստանում, ապա երկրորդը արագացրեց կապիտալիզմի կործանումը Եվրոպայի և Ասիայի մի շարք երկրներում: Իշխանությունն իրենց ձեռքը վերցնելով, ժողովրդադեմոկրատական երկրների աշխատավորները ևս կարճ ժամանակամիջոցում ավարտեցին կապիտալիզմից սոցիալիզմին անցման պրոցեսը և այժմ նույնպես կառուցում են զարգացած, հասուն սոցիալիզմ:

Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո սոցիալիզմի համաշխարհային սիստեմի ստեղծումը, իմպերիալիզմի գաղութային սիստեմի խորտակումը, որի հետևանքով գաղութատիրության լուծը թոթափեցին ավելի քան մեկ և կես միլիարդ բնակչություն ունեցող երկրներ, հուժկու հարված հասցրեց կապիտալիզմի համաշխարհային սիստեմին: Արդի դարաշրջանում ծավալվող սոցիալական և ազգային-ազատագրական կռիվը գնալով ավելի է խարխլում կապիտալիստական հասարակության հիմքերը ողջ աշխարհում:



Իսկ այդ բոլորը նոր ուժով հաստատում են կապիտալիզմի կործանման անխուսափելիության մասին **Մանիֆեստի** գաղափարների կենսունակությունն ու ուժը:

Կապիտալիզմի կործանման համար մղված և մղվող ողջ պայքարի ընթացքըն ամբողջությամբ հաստատում է նաև մարքսիստական դրույթի ճշմարտացիությունը բանվոր դասակարգի համաշխարհային պատմական հեղափոխական դերի մասին:

Զարգացնելով մարքսիստական դրույթը կապիտալիզմի դարաշրջանում տեղի ունեցող սոցիալական հեղափոխությունների շարժիչ ուժերի մասին, Վ. Ի. Լենինը, հակառակ II ինտերնացիոնալի տեսաբանների պընդումների, ցույց տվեց, որ իմպերիալիզմի դարաշրջանում բուրժուադեմոկրատական և սոցիալիստական հեղափոխությունների կատարման համար պարտադիր չէ, որ բանվոր դասակարգը կազմի բնակչության մեծամասնությունը: Նա առաջ քաշեց բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքի գաղափարը, հիմնավորեց, որ բնակչության փոքրամասնությունը կազմելով հանդերձ, բանվոր դասակարգը կարող է իր ետևից տանել աշխատավորական մյուս շերտերին և ապահովել հեղափոխության հաղթանակը: Ռուսաստանում տեղի ունեցած բուրժուադեմոկրատական երկու հեղափոխությունները, ինչպես նաև Հոկտեմբերյան սոցիալիստական հեղափոխությունն այդ դրույթի վառ ապացույցը եղան:

Բանվոր դասակարգը գլխավոր շարժիչ ուժն էր նաև համաշխարհային II պատերազմից հետո տեղի ունեցած ժողովրդադեմոկրատական հեղափոխություններում: Նա գլխավոր շարժիչ ուժն է հանդիսանում նաև արդի դարաշրջանում ծավալվող համաշխարհային հեղափոխական բոլոր, այդ թվում և գաղութային ժողովուրդների ազգային-ազատագրական շարժումներում:

Բայց բանվոր դասակարգի ղեկավար դերը չի սահմանափակվում միայն սոցիալիստական հեղափոխություններում: ՍՍՀՄ-ի և սոցիալիստական համագործակցության մյուս երկրների փորձը ցույց է տալիս, որ բանվոր դասակարգը հասարակության առաջատար ուժն է մնում նաև սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման շրջանում: ՍՄԿԿ XXIV և XXV համագումարները նոր ուժով շեշտեցին զարգացած սոցիալիզմի պայմաններում բանվոր դասակարգի առաջատար, ղեկավար դերը: Սովետական բանվոր դասակարգը, որ այժմ արդեն իր քանակով բնակչության մեծամասնությունն է կազմում, մեր երկրում կոմունիստական հասարակության կառուցման որոշիչ ուժն է մնում: Այդ նույն դերը նա կատարում է նաև սոցիալիստական մյուս երկրներում:

Կյանքը լիովին ապացուցել է նաև սոցիալական հեղափոխության միջոցով պրոլետարիատի դիկտատուրայի այս կամ այն ձևի հաստատման մասին **Մանիֆեստի** հիմնարար դրույթի ճըշմարտացիությունը: Սոցիալիզմի կառուցման ողջ փորձը ՍՍՀՄ-ում և սոցիալիստական մյուս երկրներում ցույց է տալիս, որ բանվոր դասակարգն առանց իր դիկտատուրայի հաստատման չէր կարող դիմակայել սոցիալիզմի ներքին և արտաքին թշնամիներին, վերացնել արտադրության միջոցների մասնավոր սեփականությունը և շահագործող դասակարգերին, ստեղծել սոցիալիստական արտադրություն և հասարակական ողջ կյանքը վերափոխել սոցիալիստական հիմունքներով: Վ. Ի. Լենինը պրոլետարիատի դիկտատուրայի պետությունը համարում էր սոցիալիզմի կառուցման անփոխարինելի համապարփակ գործիքը: Պրոլետարիատի դիկտատուրայի պետությունը, որը զարգացած սոցիալիզմի պայմաններում վերաճել է համաժողովրդական պետության, մնում է որպես կոմունիզմի կառուցման գործիք:

Համաշխարհային հեղափոխական շարժման արդի էտապում առանձնահատուկ նշանակություն ունի բանվոր դասակարգի ավանգարդի ու առաջնորդի՝ կուսակցության մասին մարքսիստական ուսմունքը, որի հետևողական ժառանգորդն անցյալ դարի վերջից դարձավ ռուսաստանյան պրոլետարիատը: Վ. Ի. Լենինը, պաշտպանելով և համակողմանի զարգացնելով պրոլետարական կուսակցության տեսական, գաղափարական, կազմակերպական և տակտիկական ու ստրատեգիական սկզբունքները, ստեղծեց նոր տիպի մարքսիստական հեղափոխա-

կան կուսակցություն՝ բոլշևիկների կուսակցությունը, որը հետագայում օրինակ հանդիսացավ բանվորական հեղափոխական բոլոր կուսակցությունների համար:

Բոլշևիկների կուսակցությունը կարճ ժամանակամիջոցում դարձավ Ռուսաստանի բազմազգ պրոլետարիատի ճանաչված ավանգարդը, նրա դասակարգային շահերի մինչև վերջ հավատարիմ պաշտպան քաղաքական ուժը: Կոփվելով և հզորանալով դասակարգային մարտերում, բոլշևիկների կուսակցությունը Ռուսաստանի պրոլետարիատին առաջնորդեց ռուսական երեք հեղափոխություններում: Նրա ղեկավարությամբ տապալվեց ցարիզմի և բուրժուազիայի տիրապետությունը և հաստատվեց առաջին պրոլետարական դիկտատուրան: Նրա իմաստուն առաջնորդությամբ սովետական ժողովուրդը հաղթահարեց ներքին ու արտաքին բազմապիսի դժվարություններ, ետ մղեց իմպերիալիստական դաժան գրոհները, պատմական կարճ ժամանակամիջոցում կառուցեց մեր երկրում սոցիալիզմ, սովետական երկիրը դարձրեց առաջադիմության ուղիով ընթացող մարդկության ավանգարդը: Սովետական ժողովուրդը, ինչպես երբեք, վստահությամբ է տոգորված իր ապագայի հանդեպ, որովհետև նրան կոմունիզմի հունով է առաջնորդում հեղափոխական մարտերում և սոցիալիստական շինարարության դժվարին պրոցեսներում փորձված լենինյան կուսակցությունը՝ ՍՄԿԿ-ն:

Երբ Մարքսն ու Էնգելսը մշակում էին կոմունիստների առաջին ծրագիրը, վերջիններս միավորված էին միայն մեկ միության մեջ, իսկ նրա անդամները միայն հազարներով էին հաշվվում: 130 տարիների ընթացքում կոմունիստներն աճեցին և հզոր, անպարտելի ուժ դարձան ամբողջ աշխարհում: Բանվորական հեղափոխական մարքս-լենինյան կուսակցություններ այժմ կան աշխարհի երկրների զգալի մասում, իսկ կոմունիստների թիվն արդեն տասնյակ միլիոնների է հասնում: Բանվոր դասակարգը և բոլոր աշխատավորներն ամբողջ աշխարհում այժմ իրենց բախտն ու ճակատագիրն ամենից առաջ կապում են կոմունիստական կուսակցությունների հետ, որոնք համաշխարհային ողջ հեղափոխական շարժման առաջատար ուժն են ու ղեկավարը:

Համաշխարհային հեղափոխական շարժման և սոցիալիզմի ու կապիտալիզմի միջև ծավալված դաժան պայքարի արդի փուլում առանձնահատուկ նշանակություն ունի պրոլետարական ինտերնացիոնալիզմի գաղափարի ու քաղաքականության, ստրատեգիայի ու տակտիկայի մասին մարքսիստական դրույթի հետևողական կենսագործումը:

Հարյուր երեսուն տարի առաջ, երբ դեռ կոմունիզմը նոր էր ձևավորվում որպես տեսություն ու շարժում, եվրոպական բուրժուազիան չհանդուրժեց այն և նրա դեմ (որի դրոշի ներքո սկսվել էր ծավալվել պրոլետարիատի ազատագրական շարժումը) կատաղի պայքարի ելավ: Այդ պայքարը չդադարեց նաև հետագայում, իսկ այժմ, երբ կոմունիզմն իր առաջին փուլով ռեալ իրականություն է դարձել շատ երկրներում, իսկ նրա ձգողական ուժ ունեցող գաղափարները խարխլում են իմպերիալիզմի հիմքերը մեր մոլորակի շատ երկրներում, այն ավելի է սրվել: Ընդ որում, բնորոշ է, որ, ինչպես 130 տարի առաջ, այնպես էլ այսօր, պրոլետարիատի ազատագրության դեմ մղվող պայքարում բուրժուազիան իր գլխավոր դրոշն է դարձրել հակակոմունիզմը:

Իմպերիալիզմի ռեակցիոն շրջանները վիթխարի ճիգեր են գործադրում զրպարտելու սոցիալիստական կարգերը, կոմունիստական կուսակցությունների քաղաքականությունն ու նպատակները, նենգափոխելու մարքսիզմ-լենինիզմի գաղափարները, պառակտելու բանվորական շարքերը, հալածելու այն ամենը, ինչ առաջադիմական է: Հակակոմունիզմի և հակասովետիզմի սև դրոշի ներքո են միավորվել, ինչպես նշված է ՍՄԿԿ ծրագրում, սոցիալական պրոգրեսի բոլոր թշնամիները՝ ֆինանսական օլիգարխիան և զինվորականությունը, ֆաշիստներն ու ռեակցիոն կղերականները, գաղութարարներն ու կալվածատերերը, իմպերիալիստական ռեակցիայի քաղաքական ու գաղափարական բոլոր սպասարկուները:

Հակակոմունիզմի դեմ մղվող պայքարի հաջողության գլխավոր գրավականը սոցիալիզմի համաշխարհային



սիստեմի, բանվորական և ազգային-ազատագրական շարժումների, միջազգային կոմունիստական շարժման միասնության պահպանումն ու ամրապնդումն է՝ պրոլետարական ինտերնացիոնալիզմի դրոշի ներքո: Կոմունիստներն ամբողջ աշխարհում իմպերիալիստական ռեակցիային դիմակայում են հենց այդ դրոշի ներքո համախմբված իրենց պայքարով: Դրա հաջող իրականացման գործում մեծ նշանակություն ունեցան բանվորական և կոմունիստական կուսակցությունների 1957, 1960 և 1969 թվականների միջազգային համաժողովները, որոնցում մշակվեցին կոմունիստական կուսակցությունների ստրատեգիայի և տակտիկայի, իմպերիալիզմի դեմ մղվող պայքարում միասնական քաղաքականություն վարելու բազմաթիվ սկզբունքային հարցեր:

Այսպես, 1957 թ. խորհրդակցությունը, բազմակողմանիորեն վերլուծելով և ընդհանրացնելով համաշխարհային հեղափոխական շարժման և սոցիալիզմի կառուցման բոլոր երկրների հարուստ փորձը, վերստին հաստատեց մարքս-լենինյան տեսության այն դրույթը, որ սոցիալիստական հեղափոխությունը և նոր հասարակության կառուցումն ունեն որոշակի ընդհանուր օրինաչափություններ, որոնցով ղեկավարվելն անխուսափելի է բոլոր երկրների կուսակցությունների համար, թեև դրանցից յուրաքանչյուրը տարբեր երկրներում կարող է դրսևորվել և իրականացվել որոշակի ազգային առանձնահատկություններով: Սոցիալիստական հեղափոխության և սոցիալիստական շինարարության ընդհանուր օրինաչափությունների հաստատումն ու ընդունումը կարևոր դեր խաղացին կոմունիստական շարժման ու սոցիալիստական համագործակցության համախմբվածության ամրապնդման և միասնական քաղաքականության մշակման գործում:

Կոմունիստական և բանվորական 81 կուսակցությունների ներկայացուցիչների Մոսկվայում կայացած խորհրդակցությունը համակողմանիորեն քննարկեց հասարակության զարգացման օբյեկտիվ պրոցեսները և դասակարգային ուժերի հարաբերակցությունը: Այն արդի դարաշրջանի գլխավոր բովանդակությունը համարեց կապիտալիզմից սոցիալիզմին անցնելը, նշելով, որ այդ անցումն ապահովող համաշխարհային հեղափոխական շարժման գլխավոր ուժերն են սոցիալիզմի համաշխարհային սիստեմը, բանվորական և ազգային-ազատագրական շարժումները:

Կոմունիստական և բանվորական բոլոր կուսակցություններին, ինչպես նաև ողջ առաջավոր մարդկությանը հուզող պրոբլեմներից մեկր իմպերիալիզմի դեմ մղվող պայքարի հարցն է: Այն հատկապես քննարկվեց կոմունիստական ու բանվորական կուսակցությունների 1969 թ. մոսկովյան միջազգային խորհրդակցությունում-, որը բոլոր կոմկուսակցությունների, դեմոկրատական բոլոր ուժերի ինտերնացիոնալ գլխավոր խնդիրը համարեց միջազգային իմպերիալիզմի դեմ մղվող պայքարի ուժեղացումը:

Նշված բոլոր երեք խորհրդակցություններում, իսկ այնուհետև 1976 թ. հունիսին Բեռլինում տեղի ունեցած Եվրոպայի կոմունիստական ու բանվորական կուսակցությունների կոնֆերանսում առանձնահատուկ սրությամբ դրվեց միջազգային խաղաղության պահպանման հարցը: Եվ դա բնական է: Մարդկային հասարակության ողջ պատմության մեջ ոչ մի հարց, ոչ մի պրոբլեմ այնքան չի հուզել, զբաղեցրել մարդկանց միտքն ու պրակտիկ գործունեությունը, ինչպիսին խաղաղության հարցն է արդի դարաշրջանում: Այն հասարակական բոլոր շերտերի մշտական հոգսն է դարձել մեր մոլորակի բոլոր անկյուններում: Խաղաղության պահպանումը կենսական խնդիր է ոչ միայն այն պատճառով, որ ջերմամիջուկային պատերազմը սպառնում է քաղաքակրթության բուն գոյությանը, այլև այն պատճառով, որ, ինչպես նշեց բեռլինյան կոնֆերանսը, խաղաղության ամրապնդման համար մղվող պայքարը դիալեկտիկական փոխադարձ սերտ կապի մեջ է սոցիալական առաջընթացի համար մղվող պայքարի հետ: Ընդ որում, այդ երկմիասնական պայքարի հաջողության գլխավոր պայմանը բոլոր երկրների կոմունիստների ինտերնացիոնալիստական համագործակցությունն է, բոլոր ժողովուրդների միջև փոխադարձ վստահության մթնոլորտի ստեղծումը, նր-

րանց պատերազմի ուժերի դեմ ակտիվ պայքարի հանելը:

Տարբեր երկրների կոմունիստական կուսակցությունների ազգային ինտերնացիոնալ խնդիրների հաջող լուծման, միջազգային կոմունիստական շարժման միասնության պահպանման ու ամրապնդման և ինտերնացիոնալիստական քաղաքականության վարման գլխավոր գրավականը ո՛չ միայն կոմունիստների հայացքների միասնությունն է, այլև կոմունիստական կուսակցությունների միջև փոխհարաբերությունների կարգավորումը՝ հավասարության, միմյանց ներքին գործերին չմիջամտելու, սուվերենության, փոխադարձ օգնության ու աջակցության հիման վրա:

Այսօր էլ անմահ և կենսահաստատ են պրոլետարական ինտերնացիոնալիզմի վսեմ գաղափարները: Դրանցով զինված պրոլետարիատի շատ ջոկատներ սոցիալիզմը երազանքից իրականություն են դարձրել: Առաջնորդվելով հեղափոխական մարքսիզմի այդ անմահ երկի սկզբունքներով, աշխարհի կոմունիստները շարունակում են պայքարը սոցիալիզմի հաղթանակի համար ողջ հողագնդում:

Ավելի քան 60 տարի առաջ խոսելով **Կոմունիստական կուսակցության մանիֆեստի** մասին, Վ. Ի. Լենինը գրել է. «Այս աշխատության մեջ հանճարեղ պարզությամբ ու ցայտունությամբ ուրվագծված է նոր աշխարհայեցողությունը, նաև սոցիալական կյանքի բնագավառն ընդգրկող հետևողական մատերիալիզմը, դիալեկտիկան, որպես ամենաբազմակողմանի ու խոր ուսմունք զարգացման մասին, դասակարգային պայքարի և նոր, կոմունիստական հասարակություն ստեղծող պրոլետարիատի համաշխարհայինպատմական հեղափոխական դերի թեորիան» (**Երկեր**, հ. 21, էջ 45—46):

**Մանիֆեստի** վերաբերյալ լենինյան այդ գնահատականն այսօր էլ լիովին պահպանում է իր ուժն ու հմայքը:

---

# ԵՐԻՏԱՍԱՐԴ ԳԻՏԱԿԱՆ ԱՇԽԱՏՈՂԻ ԱՄԲԻՈՆ

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ՖԵՈԴԱԼԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿԱՐԳԻ ԲՆՈՒԹԱԳՐՄԱՆ ՇՈՒՐՋ

**Է. Լ. ԴԱՆԻԵԼՅԱՆ**

*ՆՎԱՃՈՂ ԵՎ ՆՎԱՃՎՈՂ ԵՐԿՐՆԵՐԻ զարգացման տարբեր մակարդակներից բխող փոխազդեցությունների խնդիրը մշտապես եղել է մարքս-լենինյան պատմագիտության ուշադրության առարկան:*

*Ֆեոդալիզմի դարաշրջանի Հայաստանի պատմության պարբերացման խնդրին նվիրված իր ուսումնասիրություններից մեկում*[1] *Ս. Տ. Երեմյանը ցույց է տվել, որ խալիֆայության տիրապետության հաստատումը խիստ բացասաբար է ազդել ինչպես ժողովրդի վիճակի, նույնպես և երկրի սոցիալ-տնտեսական հարաբերությունների վրա:*

*VII դարի կեսերին, երբ խալիֆայությունն սկսեց իր նվաճումները հյուսիսում, առաջին հերթին, նոր նվաճողներից կախման մեջ ընկավ Հայաստանը: Ինչպես Հայաստանը, նույնպես և խալիֆայությունը, թևակոխել էին հասարակական զարգացման ֆեոդալական ֆորմացիան: Ե՛վ նվաճող, և՛ նվաճվող պետությունները պետք է հաստատեին իրենց փոխհարաբերությունները՝ պայմանավորված նվաճող պետության՝ Արաբական խալիֆայության ու նվաճված Հայաստանի զարգացման տարբեր աստիճաններով*: Ավելի ցածր աստիճանի վրա գտնվող՝ դեռևս հիմնականում վաչկատուն, խաշնարած ցեղերի պետական միավորման՝ խալիֆայության, այս նվաճման հետևանքով որոշ ժամանակով կասեցվեց Հայաստանի ներքին զարգացումը, իսկ իրենք՝ նվաճողները, ընդգրկվեցին հասարակական զարգացման ավելի հասուն փուլի մեջ:*

*Պատմական պրոցեսում նման երևույթի առկայությունն են նկատի ունեցել Կ. Մարքսն ու Ֆ. Էնգելսը՝ գրելով. «Հասարակարգի այն ձևը, որն ընդունվել էր նստակյաց դարձած նվաճողների կողմից, պետք է համապատասխանի արտադրաուժերի զարգացման առկա աստիճանին, իսկ եթե այդ համապատասխանությունն սկզբնապես չկա, ապա հասարակարգի այդ ձևը պետք է փոփոխվի՝ եղած արտադրաուժերի համեմատ»*[2]*:*

*Նվաճողների զարգացման ցածր մակարդակից բխող և որակ կազմող հետագիմական երևույթները բացասաբար էին ազդում նվաճվող երկրի սոցիալ-տնտեսական հարաբերությունների զարգացման վրա: «Պատմական նյութը,— նկատել է ակադեմիկոս Ե. Մ. Ժուկովը,— ցույց է տալիս, որ խոշոր մասշտաբի նվաճումները եղել են տիրող սոցիալ-տնտեսական հարաբերությունների դեֆորմացիայի մշտական աղբյուր»*[3]*:*

---

* *Խ. Սամվելյանն այս առիթով իրավամբ գրում է. «Թե՛ նվաճող արաբները և թե՛ նվաճված Հայաստանը գտնվում էին միևնույն սոցիալ-տնտեսական ֆորմացիայի շրջանակներում, բայց զարգացման տարբեր աստիճաններում» (Խ. Սամվելյան,* Հին հայ իրավունքի պատմություն, *Երևան, 1939, էջ 127): Իսկ Խ. Սամվելյանի առաջարկած ֆեոդալիզմի դարաշրջանի Հայաստանի պատմության ժամանակագրական սահմանների քննադատությունը տե՛ս* С. Т. Еремян. Опыт периодизации, *էջ 52:*

Հայկական լեռնաշխարհում օտար ցեղերը (օրինակ՝ կիմերական, սկյութական, ապա նաև ավելի ուշ շրջանում իրանական այլ ցեղեր*) ասպատակումներ են կատարել դեռևս հնագույն ժամանակներում։ Ռազմական դեմոկրատիայի շրջանն ապրող վաչկատուն ցեղերի ներխուժումները և ասպատակումները կրում էին ժամանակավոր բնույթ, իսկ նրանց մի մասը նստակյաց էր դառնում[4]։ Ժամանակի ընթացքում, հասնելով տեղում գոյություն ունեցող արտադրաուժերի զարգացման մակարդակին, նրանք դարձան կազմավորվող հայ ժողովրդի բաղադրատարրերից մեկը, օրգանապես մերվելով տեղական հայկական ցեղերին։ Նրանց ցեղանունները պահպանվեցին որոշ պատմական տեղանուններում։

Այլ էր վիճակը ֆեոդալական դարաշրջանում արաբական ցեղերի վերաբնակեցման շրջանում։ Իհարկե, այստեղ որոշիչ էր նաև տնտեսական հանգամանքը. խաշնարած ցեղերին անհրաժեշտ էին արոտավայրեր։ Արաբական խաշնարած ցեղերին հրապուրում էին Հայկական լեռնաշխարհի կենտրոնական հրաբխային սարահարթի մարգագետինները, որոնք հիանալի արոտավայրեր էին։ Եթե նվաճումներին հաջորդած սկզբնական շրջանում նրանք միայն ամառն էին իրենց հոտերով քշում Միջագետքի ձմեռային արոտավայրերից, ապա, ժամանակի ընթացքում, աստիճանաբար սկսում են հաստատվել այդ տեղերում, մանավանդ, երբ այդ, քաղաքական նկատառումներով, խրախուսվում էր խալիֆայության կողմից։ Հիմնականում երկիրը հնազանդեցնելու և այդտեղ ավելի ապահով զգալու, ինչպես և արտաքին թշնամիների դեմ մղվող կռվում պահանջվող ռեսուրսները հայթայթելու և, առհասարակ, պաշտպանողական գոտիներ ստեղծելու համար էին կատարվում արաբական ցեղերի զանգվածային վերաբնակեցումները, որոնք այնքան աղետաբեր եղան հայ ժողովրդի համար։

Խալիֆայության նման քաղաքականությունը նույնիսկ ազդում էր Հայաստանի որոշ գավառների էթնիկական կազմի վրա։ Իսկ այդ նշանակում էր, որ հայ գյուղացուն կտրելով հողից ու գաղթական դարձնելով, խալիֆայությունն այդ շրջաններում քայքայում էր գյուղական համայնքները, որոնք զգալիորեն զարգանալով դեռևս նախորդ՝ ստրկատիրական ֆորմացիայում, ֆեոդալիզմի դարաշրջանում ստացել էին ֆեոդալական կախյալ գյուղերի բնույթ[5]։

Անհրաժեշտ է նշել, որ այդ վերաբնակեցումների հետևանքով կտրվում էին ինչպես տնտեսական, նույնպես և քաղաքական կապերը երկրի տարբեր շրջանների միջև, որով ավելի էր խորանում երկրի մասնատվածությունը։ Այդ ամենը խիստ բացասաբար էր անդրադառնում երկրի սոցիալ-տնտեսական հարաբերությունների զարգացման վրա։ Արտադրաուժերը զրկվում էին արտադրության հիմնական միջոցից՝ հողից։ Ինտենսիվ հողագործական արտադրությանը որոշ շրջաններում փոխարինում էր էքստենսիվ անասնապահությունը։ Տվյալ ժամանակաշրջանում նաև այդ էր Հայաստանի վաղ ֆեոդալական հասարակարգի սոցիալ-տնտեսական հարաբերությունների վերընթաց պրոցեսի կասեցման էական պատճառը։ «Արաբական նվաճումը,— իրավամբ գրում է Ս. Տ. Երեմյանը,— մեկ հարյուրամյակով դանդաղեցրեց ֆեոդալական հարաբերությունների զարգացման ընթացքը։ Միաժամանակ արագացվեց Հայաստանում հաստատված արաբական ցեղերի ֆեոդալականացումը»[6]**։

Արաբական ֆեոդալականացող տոհմացեղային վերնախավը՝ ռազմական ազնվականությունը, Օմայաններից, ապա նաև Աբասյաններից, իբրև պարգև ստանալով հողից ստացվող եկամուտները, պետական գանձարանից ռոճիկ չէր ստանում. պահվում էր տեղական բնակչության՝ շինականների հաշվին,

* Աքեմենյանների տիրապետության ժամանակ էպիզոդիկ բնույթ էր կրում ռազմական նպատակներով որոշ ցեղերի վերաբնակեցումն Իրանից Հայաստան։

** Այդ երևույթի արգասիք էր նաև այն, որ պատերազմական նվաճումներին հաջորդած ժամանակաշրջանում առանձին արաբ իշխանավորներ ուժեղանալով, կենտրոնախույս վերաբերմունք էին ցուցաբերում, սակայն, մասնավորապես Հայաստանում, այդ բախվում էր տեղական խոշոր ֆեոդալների շահերին, որոնց խալիֆայությունը չէր հապաղում օգտագործել կենտրոնախույս ուժերի դեմ ծավալած իր պայքարում։



որոնք, պետական պարտավորությունների ձևով, նրանց մատակարարում էին անհրաժեշտ ամեն բան[7]։ Նվաճված երկրներում խալիֆայությունը հանդես էր գալիս հողը վերաբաշխողի և հարկային սիստեմը վերահսկողի դերում։

Նվաճումների ժամանակ որոշ դեպքերում խալիֆայությունը պայմանագրեր էր կնքում տեղական իշխանների հետ. սակայն չպետք է հիմնականում պայմանագրերի առկայությամբ կամ բացակայությամբ բացատրել այս կամ այն երկրի հետագա ճակատագիրը. դրանք ժամանակի քաղաքական իրավիճակից բխող տակտիկական քայլեր էին։ Ի դեպ, այդպիսի պայմանագրեր, հատկապես Հայաստանում, հիմնականում հայտնի են խալիֆայության տիրապետության նախնական և մայրամուտի շրջաններում։

Խալիֆայության տիրապետության տակ ընկած երկրների հողային ֆոնդը (տարբեր չափերով) հայտարարվեց պետական սեփականություն։ Զգալի չափով այդ տեղի ունեցավ Իրաքում, Ասորիքում ու Եգիպտոսում[8] և ավելի քիչ՝ Անդրկովկասում ու Միջին Ասիայում[9]։ Այդ վերաբերում է նաև խալիֆայության այն ծայրամասային շրջաններին, ուր պահպանվում էին հողատիրության հին ձևերը, բայց և որտեղ ժամանակավորապես ուժեղացել էր պետության դերը[10]։ Այդ դերը տնտեսական առումով, թե՛ պետական և թե՛ մասնավոր հողատիրության ոլորտում, արտահայտվում էր հարկային սիստեմով[11]։ Ինչպես ցույց են տվել որոշ հետազոտողներ, գյուղացիները համարվում էին պետական հողերի ժառանգական վարձակալներ և շահագործվում էին պետական ապարատի կողմից. այս դեպքում «դիվանի հողերի» հարկը և ֆեոդալական ռենտան համընկնում էին։ Ասիական ֆեոդալիզմի այս յուրահատկությունը դեռևս ժամանակին նշել է Կ. Մարքսը[12]։

Խալիֆայությունը հսկայական հասույթ էր ստանում հարկահանության միջոցով, ուստի, պատահական չէին հողատիրության և հարկահանության բազում ձևերը, որոնք կիրառվում էին նվաճված երկրներում։

Պետական հողային ֆոնդից տրվում էր հողաբաժին՝ «իկթա» ի ծառայություն։ Պայմանական հողատիրության այդ ձևի գոյության մասին Անդրկովկասում նշում է Ա. Նովոսելցևը՝ հիմնվելով Բելազուրիի այն հաղորդման վրա, որ խալիֆ Մուավիա I-ը (661—680) երկու հազար արաբ էր բնակեցրել Արմինիա ռազմավարչական մարզում և «իկթա» հողաբաժիններ տվել[13]։ Պետական ֆոնդից՝ գյուղացիներով հանդերձ, հողաբաժիններ («կատիա») էին տրվում նաև զինվորական ծառայության պայմանով[14]։

Պետական հողատիրությունից բացի կար նաև ժառանգական մասնավոր հողատիրությունը («մուլք» կամ «միլք»), որը խալիֆայության տարբեր մասերում տարբեր չափերի էր հասնում։ Հակառակ նախարարական ժառանգական հողատիրության թուլացման, Հայաստանում խալիֆայության տիրապետության օրոք վանքերը ենթարկվել էին մահմեդական իրավունքի՝ «շարիաթի» նորմաներին[15]։ Սակայն պատմական նյութերի ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ խալիֆայությունն իր թաթը դրել էր նաև եկեղեցու վրա, որի ունեցվածքը ժամանակ առ ժամանակ զոհ էր գնում զավթիչների ընչաքաղցությանը։ Նյութական հարստությունը հարկահանությունների և բացահայտ կողոպուտի միջոցով անընդհատ արտահոսում էր, թուլացնելով երկրի տնտեսական հիմքերը։ Արաբական նվաճումների ժամանակ՝ հատկապես Աբասյանների օրոք, դրամական ռենտայի* առկայությունը, «բնականաբար փողի** ահագին

* Այն որոշ չափով գոյություն ուներ նաև Սասանյան Իրանի տիրապետության ժամանակաշրջանում։ Խալիֆայության տիրապետության ժամանակաշրջանում անմիջական արտադրողների՝ շինականների, վիճակը հատկապես վատթարացավ Օմայանների օրոք՝ 725 թ. աշխարհագրով հարկային սիստեմի ծանրացմամբ (С. Т. Еремян. Опыт периодизации, էջ 58), ինչպես նաև Աբասյանների ժամանակ։

** Ելնելով Կ. Մարքսի դրույթներից՝ Բ. Պորշնևը նշում է, որ ֆեոդալական հասարակարգում բնահարկի ձևափոխումը դրամական ռենտայի և վաշխառուական կապիտալի գործադրությունը դեռևս արտադրական նոր հարաբերությունների դրսևորում չեն (Б. В. Поршнев, նշվ. աշխ., էջ 74, 136)։

— Ջահուկյան. Կիմերներ և կիմերերենի պրոբլեմը արդի գիտության մեջ, ՊԲՀ, 1977, № 4, էջ 73—82: Տե՛ս նաև մեր՝ Հայաստանի մ. թ. ա. VII—VI դդ. պատմությունից, «Լրաբեր», 1974, № 11, էջ 72—76, Մարդերի ցեղը հին Հայաստանում (մ. թ. ա. V—մ. թ. I դդ.), ՊԲՀ, 1976, № 1, էջ 203—208 և այլն:

5 С. Т. Еремян, О рабстве и рабовладении в древней Армении, «Вестник древней истории», 1950, № 1, стр. 26: Տե՛ս նաև մեր՝ Արտաշես Ա-ի ագրարային քաղաքականության հարցի շուրջը, ՊԲՀ, 1974, № 4, էջ 132:

6 С. Т. Еремян, Опыт периодизации, стр. 57: Արաբական ցեղերի ֆեոդալականացման մասին Իրանում և բյուզանդական նախկին շրջաններում, տե՛ս «История стран зарубежной Азии в средние века», М., 1970, стр. 137:

7 С. Т. Еремян, Опыт периодизации, стр. 57:

8 «История стран зарубежной Азии в средние века», стр. 137:

9 А. П. Новосельцев, в кн. Пути развития феодализма, М., 1972, стр. 106:

10 Տե՛ս նույն տեղը: Ինչպես նշում է Ա. Նովոսելցևը, խալիֆայության միասնությունն ու ուժը գոյություն ունեին, քանի դեռ շարունակվում էին արտաքին հաջող նվաճումները, որոնք արաբական հասարակության վերնախավին, ինչպես և նվաճված տերիտորիաների ազնվականության մի մասին բերում էին նոր ավար և շահագործման նոր օբյեկտներ: Նվաճումների դադարեցմամբ վերացավ նաև միասնությունը:

11 Նույն տեղը և «История стран зарубежного Востока в средние века», М., 1957, стр. 100.

12 К. Маркс и Ф. Энгельс, Соч., изд. 2, том 25, ч. II, стр. 354 см. «История стран зарубежной Азии в средние века», стр. 138. Այս երևույթի մանրամասն բացատրությունը տե՛ս Б. В. Поршнев, Феодализм и народные массы, М., 1964, стр. 39—41.

13 ал-Белазури, Книга завоевания стран, Лейден, 1866, стр. 197—199, տե՛ս А. П. Новосельцев, նշվ. աշխ., էջ 105, ծան. 12:

14 «История стран зарубежной Азии в средние века», стр. 141—142.

15 С. Т. Еремян, Опыт периодизации, стр. 58: Խալիֆայությունում մահմեդական կրոնական հաստատությունների հողերն անօտարելի էին համարվում («վակֆ», տե՛ս «История стран зарубежной Азии в средние века», стр. 142): Քանի որ Հայաստանում վանքերի վրա էին տարածվել «շարիաթի» նորմաները, ուրեմն վանական հողատիրությունն էլ ինչ-որ չափով նշված կարգին էր դասվել: Հայերենում այս բառը գործ է ածվում «վախմ» ձևով:

16 Խ. Սամվելյան, նշվ. աշխ., էջ 128:

17 С. Т. Еремян, Опыт периодизации, стр. 57:

18 Е. А. Беляев, Арабы, ислам и арабский халифат в раннее средневековье, М., 1966, стр. 149:

19 Տե՛ս նույն տեղը, էջ 150:

20 Տե՛ս նույն տեղը:

21 Տե՛ս նույն տեղը, էջ 193:

22 С. Т. Еремян, Опыт периодизации, стр. 57.

23 Տե՛ս մեր՝ Մանազկերտը բյուզանդա-արաբական հակամարտության ոլորտում, ՊԲՀ, 1977, № 1, էջ 155:

24 Հմմտ. Խ. Սամվելյան, նշվ. աշխ., էջ 131:

25 С. Т. Еремян, Опыт периодизации, стр. 57.

26 Կ. Մարքս և Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր, Ե., 1972, հ. I, էջ 16:

27 Е. М. Жуков, նշվ. աշխ., էջ 17:

28 Տե՛ս նույն տեղը:

29 Տե՛ս նույն տեղը:

30 Տե՛ս նույն տեղը, էջ 11:

# ՄԱՄՈՒԼԻ ՏԵՍՈՒԹՅՈՒՆ

## *Որակի և արդյունավետության հարցերը «Կոմունիզմի դրոշով» լրագրում*

Թալինի շրջանի աշխատավորները սոցիալիստական լայն մրցություն են ծավալել ՍՄԿԿ XXV համագումարի որոշումները հաջողությամբ կատարելու, տասներորդ՝ արդյունավետության ու որակի հնգամյակի առաջադրանքները կենսագործելու նպատակով:

Համաժողովրդական այդ պայքարը համակողմանի լուսաբանվում է շրջանի «Կոմունիզմի դրոշով» լրագրի էջերում: 1976 թ. հուլիս—1977 թ. նոյեմբեր համարների ուսումնասիրությունը ցույց տվեց, որ ներկայացնելով առաջավորների լավագույն փորձը, այն ջանում է սոցմրցության արտացոլմամբ խթանել արտադրողականության բարձրացումը, նպաստել որակյալ ու արդյունավետ աշխատանքի արմատավորմանը:

Տասներորդ հնգամյակի մեր օրագիրը, Այսօր աշխատել ավելի լավ, քան երեկ, վաղն ավելի լավ, քան այսօր, Ճանաչեցեք մրցության առաջավորներին, աշխատեցեք նրանց օրինակով և այլ վերտառություններ թերթի այդ նպատակի արտահայտությունն են: Լրագրի էջերում զետեղվող բազմաթիվ ակնարկներ, հոդվածներ, ցույց են տալիս, որ թերթի ուշադրությունը հիմնականում սևեռված է որակի ու արդյունավետության բարձրացման հարցերին:

1976 թ. առաջին կիսամյակում բարձր ցուցանիշների հասնելու համար ՀԿԿ Կենտկոմի, ՀՍՍՀ Մինիստրների խորհրդի և ՀԱՄԽ-ի փոխանցիկ կարմիր դրոշն ու 2.000 ռուբլի դրամական առաջին մրցանակը շնորհվել է շրջանի անասնապահներին. այդ առթիվ թերթը շնորհավորում է նրանց (1976 թ., № 93): Թալինցիների լավագույն աշխատանքի գնահատականն է նաև ՀՍՍՀ գյուղմինիստրության և գյուղմթերումների բանվոր-ծառայողների հանրապետական կոմիտեի՝ ներքին թալինցիներին շնորհած երկրորդ կարգի մրցանակը և դրամական պարգևը:

Դրոշը Սուսերի անասնապահներին (1977 թ., №8) հոդվածից տեղեկանում ենք, որ շրջանի անասնապահները հաջողությամբ եզրափակեցին տասներորդ հնգամյակի անդրանիկ տարին. մսի վաճառքի և հանձնման տարեկան պլանը կատարեցին 116, կաթինը՝ 116, ձվինը՝ 100 տոկոսով: Այս ամենում իրենց ավանդն ունեն Սուսերի, Ցամաքասարի, Զարինջայի, Վերին Բազմաբերդի, Նոր Արթիկի կոլտնտեսությունների, Դավթաշենի, Ներքին Թալինի, Արտենիի սովխոզների անասնապահները: Սուսերի կոլտնտեսությունն արժանացել է ՀԿԿ շրջկոմի բյուրոյի և շրջսովետի գործկոմի փոխանցիկ կարմիր դրոշին:

Բոլոր գործերում ապահովենք մեծ արդյունավետություն և բարձր որակ (1977 թ., №№ 3, 22), Գործարար սոցիալիստական մրցության ծավալմամբ բարձրացնենք արդյունավետությունն ու արտադրանքի որակը (1977 թ., № 7), Միայն բարձրորակ արտադրանք (1977 թ., № 10) խորագրերը ցույց են տալիս, որ տասներորդ հնգամյակի երկրորդ տարում ևս աշխատավորներն ամեն ինչ անում են առատ մթերքներ ստանալու համար: Առաջին արտադրանքը (1977 թ., № 92) հոդվածում դրվատանքով է խոսվում № 2 խոզաբուծական համալիրի կոլեկտիվի գործունեության մասին. մթերակայան են հանձնվել մսի առաջին տոննաները: Բուժպրոֆիլակտիկ միջոցառումների կիրառմամբ հասել են ցանկալի արդյունքի: Ֆաբրիկայի դիրեկտոր Ս. Սարգսյանը հավաստիացնում է, որ աշխատանքը նման տեմպերով շարունակելու դեպքում կիրականացնեն իրենց առջև դրված խնդիրները:

Լրագրի ուշադրությունից չեն վրիպում անասնապահության բնագավառի թերացող աշխատողները: Պետությանը վաճառել և հանձնել միայն բարձրորակ կաթ (1977 թ., № 11), Վաճառել և հանձնել միայն բարձրորակ մթերքներ

(1977 թ., № 60) հոդվածների հեղինակները վրդովմունք են հայտնում, որ որոշ տնտեսությունների ղեկավարներ դեռևս չեն գիտակցում իրենց առջև ծառացած խնդիրների լրջությունը: Մթերումների և որակի շրջպետական տեսուչ Դ. Խաչատրյանը գրում է, որ Ահագչիի, Գառնիհովտի, Ոսկեթասի տնտեսությունները պետությանն են հանձնել ոչ տեսակային կաթ: Այստեղ անուշադրության են մատնված անասնաբուժական և սանիտարական պայմանները: Լրագիրն ահազանգում է, որ տնտեսությունները մթերակայան են հանձնում նաև միջակից ցածր, նույնիսկ հյուծված անասուններ: Իրինդի, Սաբունչիի, Վերին Բազմաբերդի, Աշնակի կոլտնտեսությունները, Ալագյազի, Արագածի, Մաստարայի, Գետափի, Կաթնաղբյուրի սովխոզները մթերակայան չեն հանձնել եղած մորթիները. այդ, անշուշտ, տնտեսությունների ղեկավարների և մասնագետների անբավարար պահանջկոտության, ոչ պետական վերաբերմունքի հետևանք է:

«Արդյունավետության և որակի հնգամյակը նշանակում է, որ ամեն մի սովետական մարդ, ամեն մի աշխատանքային կոլեկտիվ պետք է իսկական հոգատարություն հանդես բերի իր ձեռնարկության, կառույցի, սովխոզի, կոլտնտեսության գործունեության որակական ցուցանիշների բարելավման նկատմամբ, մշտապես հասնի աշխատանքի որակի բարձրացման մեր տնտեսության բոլոր օղակներում, յուրաքանչյուր աշխատատեղում»: ՍՄԿԿ XXV համագումարի այս պատգամն են բնաբան ընտրել շրջանի դաշտավարները: Հարվածային ճակատը խոստումն է խորագրի տակ լույս տեսած Հողի կանաչ բուրմունքը, Առաջավորների օրինակով, Նվիրված աշխատանքով, Կուտակում ենք կերերի բավարար պաշար, Ապահովել կերերի բարձր որակը (1976 թ., №№ 68, 69, 70, 71, 72) հոդվածները վկայում են, որ հողագործները ջանք չեն խնայել անասնապահներին օգնելու, բավարար ու որակյալ կեր կուտակելու համար: Բերքահավաքն ամբողջ գյուղով (1977 թ., № 92) հոդվածում Սուսերի կոլտնտվարչության նախագահ Գ. Մարգարյանը գրում է, որ կուբանցիների հայրենասիրական նախաձեռնությունը նոր ոգևորությամբ է համակել սուսերցիներին:

Առաջավորներին խրախուսելու համար լրագիրն ստեղծել է հատուկ պատվո տախտակ, որին արժանանում են աշխատանքի վետերանները, առաջավորները, հաղթող տնտեսությունները, որոնցից են և Կաքավաձորի սովխոզը (դիրեկտոր՝ Ռ. Մինասյան, կուսկազմակերպության քարտուղար՝ Գ. Հայրապետյան), Զարինջայի կոլտնտեսությունը (նախագահ՝ Ս. Մանուկյան, կուսկազմակերպության քարտուղար՝ Մ. Պարոնյան):

ՀԿԿ Կենտկոմի, ՀՍՍՀ Մինիստրների խորհրդի և ՀԱՄԽ-ի մրցանակաբաշխության հանձնաժողովը խաղողագործության և հացահատիկային կուլտուրաների մթերատվության բնագավառում 1976 թ. սոցմրցության հաղթող ճանաչեց ու դրամական մրցանակ շնորհեց Թալինի շրջանին (1977 թ., № 32): Լրագրում վերհանվում են նաև այս բնագավառի թերությունները: Այսպես՝ Խո՞տ, թե՝ ծղոտ, Ի՞նչ են մտածում (1976 թ., № 72), Իրինդում հապաղում են (1977 թ., № 78) և այլ հոդվածներում «Կոմունիզմի դրոշով»-ի թղթակիցը պոստը վրդովմունք է հայտնում քաղած խոտը ժամանակին չհավաքելու համար: Թերթը բազմիցս անդրադարձել է «Հայգյուղտեխնիկայի» շրջանային միավորման կոլեկտիվի անբավարար աշխատանքին. այն տնտեսությունները ժամանակին չի ապահովել անհրաժեշտ տեխնիկայով, պահեստամասերով:

Սոցիալիստական մրցության մեջ հաղթելու ձգտումով՝ բարձրացնենք արդյունավետությունն ու արտադրանքի որակը— այս է Թալինի շրջանի ծխախոտագործների նշանաբանը: Արագ և որակով կատարել տերևաքաղը, Շրջանում առաջինը, Վճռական թափ հաղորդել ծխախոտի տերևաքաղին, շարին և հակավորմանը, Արագ և անկորուստ անցկացնել տերևաքաղը (1976 թ., №№98, 117, 140, 1977 թ., № 105) և այլ հոդվածներում դրվատվում է ծխախոտագործների աշխատանքը: Շքանշանակիր Ֆարման Գալոյանի օղակի ծխախոտագործների մասին է Կաքավաձորի ծխախոտագործների նվաճումը հոդվածը (1976 թ., № 141). 35 տոննայի փոխարեն նրանք մթերակայան են հանձնել 38 տոննա բարձրորակ հումք:

Շրջանում իրենց լավ աշխատանքով աչքի են ընկնում այգեգործները: Այդ առթիվ թերթը հրապարակել է բազում հոդվածներ, ակնարկներ (1976 թ., №№ 111, 140): Դալարիկցիներն առատ բերք են աճեցրել և ջանում են ամեն ինչ անել այն անկորուստ հավաքելու համար (1977 թ., № 79):

Արդյունավետությունն ու որակը ուշադրության կենտրոնում (1977 թ., № 65) հոդվածում Հ. Խաչատրյանը գրում է, որ Դալարիկի երկաթ-բետոնե շինվածքների գործարանում ընտեղծվել է արտադրանքի որակն ստուգող հանձնաժողով: Գործարանի դիրեկցիան, կուսակցական և արհմիութենական կազմակերպությունները մրցանակներ են սահմանել բարձրորակ արտադրանք թողարկող բրիգադի, հերթափոխի համար: Թերթը հաճախակի է մասսայականացնում առաջավորների փորձը:



Քանակով շատ, որակով բարձր (1977 թ., № 17) հոդվածի հեղինակ Ռ. Արոյանը հայտնում է, որ գերակատարել են ապրանքային արտադրության պլանը՝ 15-ի փոխարեն ստանալով 17 տոննա բարձրորակ պանիր և ձգտում են այդ արտադրանքը հասցնել որականիշի:

Հոբելյանական տարվա երկրորդ եռամսյակում շրջանի արդյունաբերական ձեռնարկությունների միջև ծավալված սոցմրցությունում հաղթող դուրս գալու, աշխատանքի արտադրողականության բարձրացման, որակի բարելավման համար շրջանային փոխանցիկ կարմիր դրոշին է արժանացել Թալինի պանրագործարանը: Առաջավորների թվում են նաև Դալարիկի երկաթ-բետոնե շինվածքների, պեռլիտի գործարանների և կենցաղսպասարկման կոմբինատի կոլեկտիվները (1977 թ., № 85):

Համամիութենական սոցիալիստական մրցության մեջ ձեռք բերած զգալի հաջողությունների, 1976 թվականին գյուղատնտեսական մթերքների արտադրությունն ավելացնելու, պլանների և սոցպարտավորությունների կատարման գործում ցուցաբերած աշխատանքային արիության համար ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը Թալինի շրջանի մի խումբ առաջավորների պարգևատրել է Լենինի, Հոկտեմբերյան հեղափոխության, Աշխատանքային կարմիր դրոշի շքանշաններով (1977 թ., № 13):

Թալինի կուսակցական շրջանային կազմակերպությունը պարբերաբար անդրադառնում է շինարարական աշխատանքների բարելավման, գյուղատնտեսական և անասնապահական մթերքների արտադրության ավելացման հետ կապված, ինչպես և շրջանի տնտեսական, կուլտուրական կյանքի կենսական, հրատապ հարցերին: Այդ ամենը ևս արտացոլվում է լրագրի էջերում:

Շրջանի մասնագետներին օգնելու նպատակով լրագիրը տպագրել է մասնագիտական մի շարք հոդվածներ, ինչպես՝ Գնահատենք և պահպանենք մեր հողերը (1977 թ., № 44), Լիարժեք հնկտարը բարձր բերքի հիմնական գրավականն է (1977 թ., №№ 34, 37), Արդյունավետ պայքարել խաղողի այգիների հիվանդությունների և վնասատուների դեմ (1977 թ., № 58) և այլն:

Լրագրում ձաղկվում են և հանրային տնտեսության տարբեր բնագավառներում նկատվող թերությունները: Այսպես՝ Անհանդուրժելի է... (1977 թ., № 47) հոդվածում դատապարտվում են Գառնիհովտի և Ահագչիի կոլտնտեսությունների ղեկավարները, որոնք ձևական մոտեցում են ցուցաբերել սոցմրցությանը, ոչինչ չեն արել ստանձնած սոցիալիստական պարտավորությունները կատարելու համար. մրցակիցները մրցության պայմանագրերն իսկ չեն հաստատել: Երկու տնտեսությունների և՛ գրասենյակում, և՛ ակումբում չկա ոչ մի պատի թերթ, ոչ մի պատվո տախտակ. բայց, անշուշտ, այդ տնտեսություններում առաջավորներ կան և նրանց փորձի մասին կարելի է գրել, մասսայականացնել, ահազանգում է թերթը:

Ինչպես տեսնում ենք, լրագիրն ակտիվ արձագանքում է շրջանի աշխատանքային առօրյային, բնակչությանը հուզող կենսական հարցերին, օգնում կուսակցական կազմակերպություններին՝ վերացնելու տնտեսության տարբեր բնագավառներում տեղ գտած թերությունները: Այդ ամենի գնահատականն է ՍՍՀՄ ժուռնալիստների միության վարչության՝ «Կոմունիզմի դրոշով» լրագրին շնորհած Մ. Ի. Ուլյանովայի անվան երկրորդ կարգի մրցանակը և ՍՍՀՄ ժուռնալիստների միության դիպլոմը:

Արժանի պարգևը պարտավորեցնում է՝ այսուհետ ևս շարունակել լավագույն ավանդույթները, ավելի համակողմանի լուսաբանել որակի և արդյունավետության հնգամյակի կարևորագույն խնդիրները, մոբիլիզացնելով շրջանի աշխատավորությանը՝ ավելի բարեխղճորեն ու ջանադրաբար կատարելու տասներորդ հնգամյակում ստանձնած պարտավորությունները:

## *Գաղափարադաստիարակչական աշխատանքի լուսաբանումը «Լուսարձակ» լրագրում*

Սպիտակի շրջանի կուսկազմակերպությունները գաղափարաքաղաքական լուրջ աշխատանք են ծավալել ՍՄԿԿ XXV համագումարի նյութերի խոր ու բազմակողմանի պրոպագանդման, աշխատավորների կոմունիստական դաստիարակության, տասներորդ հնգամյակի առաջադրանքների կատարման համար նրանց ջանքերի մոբիլիզացման գործում: Հոբելյանական տարվա առաջին և երկրորդ եռամսյակներին շրջանը նվաճել է ՀԿԿ Կենտկոմի, ՀՍՍՀ Մինիստրների խորհրդի և ՀԱՄԽ-ի փոխանցիկ կարմիր դրոշը և առաջին կարգի դրամական մրցանակը:

Շրջանի առօրյան է լուսաբանում «Լուսար-

տում քննարկեց ՍՍՀՄ նոր Սահմանադրության նախագիծը:

Լրագիրը սիստեմատիկաբար անդրադառնում է ժողովուրդների բարեկամության շնորհակալ թեմային— Երեկ և այսօր (№ 115), Հոկտեմբերի լույսով ողողված (№ 112), Քրդերի նոր ուղին (№ 113) և այլն: Սովետական բանակ զորակոչված երիտասարդների բարեխիղճ ծառայությանն են նվիրված Նամակներ խմբագրությանը, Գրում են զինվորականների մասին, Ծառայում է հայրենիքին խորագրերի ներքո տպագրված թղթակցությունները և զորամասերի հրամանատարության կողմից ստացված շնորհակալական նամակները (1976 թ., №№ 95, 116, 1977 թ., №№ 11, 107, 127): Այդ ամենը նպաստում է աշխատավորության հայրենասիրական և ինտերնացիոնալ դաստիարակությանը:

Ուշագրավ է «Լուսարձակ»-ի գրական ստուդիայի և ՀԼԿԵՄ Սպիտակի շրջանային կոմիտեի նախաձեռնությունը. շրջանի աշխատավորների ստեղծագործական ունակությունների խրախուսման նպատակով կազմակերպվում է լավագույն բանաստեղծության, պատմվածքի ու ակնարկի մրցանակաբաշխություն:

Լրագիրը ո՛չ միայն լուսաբանում է դրականը գաղափարադաստիարակչական աշխատանքում, այլև վերհանում այդ ասպարեզում տեղ գտած թերությունները, դրանց պատճառները— Ստորին մամուլի աշխատանքները բարձրացնել արդի պահանջների մակարդակին (1976 թ., № 81), Լուրջ ուշադրություն անասնապահների շրջանում տարվող գաղափարական աշխատանքին (1977 թ., № 4), Բարձրացնել պահանջկոտությունը (1976 թ., № 124): Ցավոք, քննադատական նման նյութերը սակավաթիվ են:

Լրագիրը սակավ է լուսաբանում կոլեկտիվների առջև դրված խնդիրները՝ համագումարի որոշումների կատարման ասպարեզում: Լրագիրը դեռևս համարձակ չի քննադատում մեր կյանքին, սովետական ապրելակերպին անհարիր երևույթներն ու աշխատանքի տարբեր բնագավառներում տեղ գտած թերությունները:

Ցանկանք, որ «Լուսարձակ» լրագրի խմբագրությունն այսուհետև առավել հետևողականությամբ վեր հանի թերությունները և վերակառուցի իր աշխատանքներն արդի պահանջներին համապատասխան:



Адрес редакции: 375033, Ереван 33, Барекамутян 59 г.

**Խմբագրության հասցեն՝ 375033, Երևան—33, Բարեկամության 59 գ.:** Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ՝ 27—25—29, պատ. քարտուղար՝ 27—12—92, պրոպագանդայի և էկոնոմիկայի բաժիններ՝ 27—37—80, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 27—19—80, գրական աշխատողներ՝ 27—60—64:

*ՎՖ 01309 Պատվեր 299 Թղթի չափսը 70×108 1/16: Տիրաժ 15.900 Գինը՝ 20 կոպ.: Տպ. 6 մամուլ, մամուլում 68840 նիշ: Ստորագրված է տպագրության 28/II-1978 թ. ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Ալ. Խանջյան փող. № 28:*

# *Ձեզ համար, ընթերցողնե՛ր*

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Երկերի լիակատար ժողովածու: *Հ. 11: «Հայաստան» հրատ., 1977:*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Երկերի լիակատար ժողովածու: *Հ. 12: «Հայաստան» հրատ., 1977:*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Երկերի լիակատար ժողովածու: *Հ. 13: «Հայաստան» հրատ., 1977:*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Երկերի լիակատար ժողովածու: *Հ. 14: «Հայաստան» հրատ., 1977:*

Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎ— Լենինյան կուրսով *(ճառեր և հոդվածներ): Հ. 5: «Հայաստան» հրատ., 1977:*

Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎ— Մեծ Հոկտեմբերը և մարդկության առաջադիմությունը: *«Հայաստան» հրատ., 1977:*

Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎ— Պատմական բնագիծ կոմունիզմի ճանապարհին: *«Հայաստան» հրատ., 1977:*

ՍՄԿԿ քաղաքականությունը մարքսիզմ-լենինիզմն է գործողության մեջ: *«Հայաստան» հրատ., 1977:*

Ա. ԹԱՄԱԶՅԱՆ— Միջազգային լարվածության թուլացումը և համաշխարհային հեղափոխական պրոցեսի զարգացումը: *ԵՊՀ հրատ., 1977:*

Գ. ՄԽԻԹԱՐՅԱՆ— Սոցիոլոգիական ուսմունքների պատմություն: *Պրակ 3: ԵՊՀ հրատ., 1977:*

Ս. ԵՂԻԱԶԱՐՅԱՆ— Գեղարվեստական թարգմանությունը և ժողովուրդների մերձեցումը: *Ե., ԳԱ հրատ., 1977:*

Ս. ԱՂԱԲԱԲՅԱՆ— Եղիշե Չարենց: *Գիրք 2: Ե., ԳԱ հրատ., 1977:*

**В. И. ЛЕНИН,—КПСС о партийной и государственной дисциплине.** М., Политиздат, 1977.

**Л. И. БРЕЖНЕВ—Вопросы развития политической системы советского общества.** М., Политиздат, 1977.

**А. СОБОКИН—На путях к Октябрю.** Проблемы мирной и вооруженной борьбы за власть Советов. М., «Мысль», 1977.

**Ленинские традиции внешней политики Советского Союза.** М., «Межд. отношения», 1977.

**Из истории народно-демократических и социалистических революций в странах Центральной и Юго-Восточной Европы.** М., «Наука», 1977.

**Научно-техническая революция и идеологическая борьба.** М., Политиздат, 1977.

**Актуальные проблемы современной идеологической борьбы.** М., Политиздат, 1977.

**В. ГРАНОВ—Новые реальности и борьба идей.** М., Политиздат, 1977.

**Экономика развитого социалистического общества** (Основные черты, закономерности развития). М., «Экономика», 1977.

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ԱԽՏՈՐՈՇՈՒՄ ԵՆ ԳԵՆԵՏԻԿՆԵՐԸ

*Լիտվայի փորձարարական և կլինիկական բժշկության գիտահետազոտական ինստիտուտին կից ստեղծվել է բժշկական գենետիկայի լաբորատորիա։*

*Եթե հաստատվի, որ նորածինը ժառանգել է նախահակվածություն այս կամ այն հիվանդության, օրինակ, ռևմատիզմի կամ բրոնխների ասթմայի նկատմամբ, ապա հիվանդության կլինիկական նշանների բացակայության դեպքում իսկ կնշանակվի պրոֆիլակտիկ ռեժիմ, իսկ եթե անհրաժեշտ է՝ բուժման կուրս։*

*Լիտվայի բժիշկներն արդեն ունեն գենետիկական կոնսուլտացիայի զգալի փորձ։ Վիլնյուսի «Կարմիր խաչ» հիվանդանոցին կից ստեղծվել է կոնսուլտացիոն կետ, որտեղ ամուսնացողներին տալիս են բանիմաց խորհուրդներ, կանխորոշում ապագա սերնդի առողջությունը։*

*Այժմ բժշկական գենետիկական լաբորատորիայի աշխատակիցները կազմում են հանրապետության գենետիկական քարտեզը։*

## ՆՈՐ ՄԵԿՈՒՍԻՉ

*Կարելյան արդյունաբերության համամիութենական գիտահետազոտական ինստիտուտի երևանյան բաժանմունքում ստեղծվել է հնգաշերտ, կրակը չտարածող մեկուսիչ նոր նյութ։ Մեկուսիչով է դրանով պատենավորված կաբելները կարող են գործել ակտիվ միջավայրում, դիմանալ մեխանիկական բարձր ուժի, հուսալի լինել արտակարգ պայմաններում։ Օրինակ, հնգաշերտի ցրտակայունությունն անշարժ վիճակում —50° C է, իսկ շարժունը՝ —30° C։ Դրա շնորհիվ այն օգտագործելի է նույնիսկ Ծայրագույն Հյուսիսում։*

*Շոգ տեղանքում ևս նոր մեկուսիչի էլեկտրական և մեխանիկական հատկությունները պահպանվում են։ Հնգաշերտը լավ է մշակվում ստանդարտ սարքի վրա, էկստրուզիայի սովորական մեթոդով։*

## ԱՐՀԵՍՏԱԿԱՆ ԹՈՒՂԹ

*ԳԴՀ-ում թողարկվում է թուղթ ցելյուլոզի և արհեստական մանրաթելի խառնուրդից։ Համապատասխանաբար փոխելով մանրաթելի և ցելյուլոզայի հարաբերակցությունը, կարելի է փոփոխել ստացված թղթի հատկությունները։ Այն ամուր, խոնավության և արտաքին միջավայրի այլ ազդեցությունների նկատմամբ կայուն, բարձրորակ տպագրական թուղթ է, որն առաջին անգամ օգտագործվել է աշխարհագրական քարտեզների տպագրության համար, այժմ լայնորեն կիրառվում է և այլ նպատակներով։*

## ՍԱՂԱՎԱՐՏ ԱՂՄՈՒԿԻ ԴԵՄ

*Անգլիացի մասնագետները մշակել են հակաաղմուկային սաղավարտ, որը չի խանգարում մարդկանց՝ աշխատանքի ժամանակ հաղորդակցվելու։ Սաղավարտի վրա մոնտաժված հատուկ սարքը գրանցում է աղմուկը և ստեղծում ուժով դրան հավասար, փազով՝ հակառակ «հակաաղմուկ»։ Այդպիսով, ձայնային ալիքները չեզոքացնում են իրար, և տիրում է լռություն։ Հարկ եղած դեպքում սարքը մարդկային ձայնն այնքան է բարձրացնում, որ լսվում է բավական պարզ։ Նոր սաղավարտը լայնորեն կօգտագործվի արտադրության մեջ, ստորգետնյա տարբեր աշխատանքներում, տրանսպորտում հատկապես՝ ավիացիայում։*

## ԳՈՐԳ՝ ՄԱԿՈՒԼԱՏՈՒՐԱՅԻՑ

*Կանադայում մշակվել է ինքնատիպ գորգերի ստեղծման եղանակ. հին թուղթը շերտատում են, հագեցնում արհեստական սոսնձով, հրակայուն քիմիկատներով և այլ հատուկ նյութերով։ Այնուհետև ողջ զանգվածը լցնում են մետաղյա հարթ կաղապարների մեջ և ենթարկում ջերմամշակման։ Տաքացնելիս կարծրացող այդ զանգվածի մեջ առաջանում են օդի բազում պղպջակներ։ Ստացվում են ճկուն և ամուր գորգեր պատերի ու խողովակաշարերի ջերմամեկուսացման համար։ Դրանք թանկ չեն և իրենց ֆիզիկական հատկություններով կարող են մրցել ծակոտկեն նյութերի հետ։*